## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:



**ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎ**
**ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար,**
**ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ**

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ, 1982

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

Выходит один раз в месяц на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




**ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ**

## СОДЕРЖАНИЕ







# ԸՆԿԵՐ ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ

Թանկագին Լեոնիդ Իլյի՛չ:

Ձեր յոթանասունհինգամյակի օրը մենք Ձեզ՝ մեր ընկերոջն ու բարեկամին ենք դիմում ամենասրտաբուխ ողջույններով և ջերմորեն շնորհավորում ենք հայրենիքի բարձր պարգևի առթիվ:

Մեր երկրի սովետական պատմության կարևորագույն ուղենիշները նաև Ձեր կենսագրության ուղենիշներն են: Կոլեկտիվացում, ինդուստրացում, սոցիալիզմի հիմքերի ստեղծում՝ այս բոլոր մեծ, իրենց նորությամբ չլսված գործերում կա լենինյան դպրոցի կոմունիստ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի աշխատանքի բաժինը: Դեռ այն ժամանակ դրսևորվեց քաղաքական ականավոր ղեկավարի Ձեր ձիրքը: Դուք ամբողջովին ճանաչեցիք նաև մարտական աշխատանքը: Պատերազմի ողբերգական առաջին օրվանից մինչև հաղթանակի պանծալի օրը Դուք գտնվում էիք գործող բանակի շարքերում, հետևաբար կռվում հիտլերյան զավթիչների դեմ: Ձեր կյանքի ուղու փառավոր փուլերը դարձան մասնակցությունը ժողովրդական տնտեսության վերածնմանը, խոպանի լեգենդար էպոպեան, աշխարհում առաջին տիեզերական հետազոտությունների կազմակերպումը, այլ մեծագործություններ:

Վաթսուն տարի առաջ սկսվեց Ձեր աշխատանքային գործունեությունը: Ահա արդեն հիսուն տարի Դուք կոմունիստական կուսակցության շարքերում եք: Եվ հիրավի արդարացի են Ձեր խոսքերը՝ «...Իմ կյանքի յուրաքանչյուր օրը անբաժանելի է այն գործերից, որոնցով ապրել և ապրում են մեր կոմունիստական կուսակցությունը, մեր սովետական երկիրը»:

Ձեզ՝ սովետական ժողովրդի պանծալի զավակին, միշտ բնորոշ է եղել հոգատարությունը նրա բարօրության նկատմամբ: Յուրաքանչյուր հարցի ետևում Դուք տեսնում եք մարդկանց շահերը և այդ եք ուսուցանում մյուսներին:

Դո՛ւք, Լեոնիդ Իլյի՛չ, տիրապետում եք մարդկանց միավորելու, նրանց համերաշխ կոլեկտիվ աշխատանքի տրամադրելու արվեստին: Ձեզ ներհատուկ է յուրաքանչյուր ընկերոջ ընդունակությունները նկատելու, դրանց լավագույն գործադրումը գտնելու հազվադեպ տաղանդը: Զբաղվելով այս կամ այն պրոբլեմով, Դուք խույս եք տալիս ավելորդ շտապողականությունից, ձգտում եք խորամուխ լինել գործի բուն էության մեջ: Խոր գաղափարայնությունը, մարքս-լենինյան իդեալներին հավատարմությունը Դուք միացնում եք ամեն տեսակ անշարժության, լճացածության նկատմամբ անհաշտության հետ: Դա ստեղծագործական մշտական ազդակներ է հաղորդում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի աշխատանքին, մեր ամբողջ կուսակցության գործունեությանը:

Ահա արդեն տասնյոթ տարի Դուք որոշակի ավանդ եք մուծում ՍՄԿԿ-ի և սովետական պետության քաղաքականության մեջ: Ձեզ, Լեոնիդ Իլյի՛չ, պատմական ծառայություն է պատկանում սուբյեկտիվիզմի և վոլյունտարիզմի հաղթահարման, կուսակցության մեջ և երկրում բարոյաքաղաքական առողջ

մթնոլորտի ստեղծման գործում: Հոգատար վերաբերմունք մարդկանց նկատմամբ, անհանդուրժողություն ամեն տեսակ անարդարությունների նկատմամբ, վստահություն և պահանջկոտություն, գործարարություն և համարձակ որոնումներ՝ ահա այն ոճը, որը տիրապետում է մեր հասարակության մեջ: Այդ ոճը կոմունիստները լիակատար հիմունքով կապում են Ձեր գործունեության հետ, Լեոնիդ Իլյի՛չ:

Ձեր նախաձեռնությամբ իրականացվել են սովետական պետական սիստեմի հետագա զարգացման, սոցիալիստական դեմոկրատիայի խորացման նպատակին ուղղված լայն միջոցառումներ: Այս ամենը արտացոլվել է ՍՍՀՄ 1977 թվականի սահմանադրության մեջ, որը լիակատար հիմունքով կարելի է անվանել արդիականության ակնառու դեմոկրատական փաստաթուղթը:

Արդյունաբերության և գյուղատնտեսության ինտենսիվացման, արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի կուլտուրան որակապես նոր մակարդակի բարձրացնելու՝ Ձեր առաջադրած դրույթները դարձել են բոլոր աշխատավորների գործողությունների պլատֆորմը: Քաջ հայտնի է, թե ինչպիսի մեծ նշանակություն եք տալիս Դուք հասարակության հոգևոր հարստությունների բազմապատկմանը, գիտության, կուլտուրայի, արվեստի զարգացման ամենաբարենպաստ պայմանների ստեղծմանը:

Տասնամյակներ շարունակ Դուք հսկայական ուշադրություն եք նվիրում մեր պետության պաշտպանունակությանը և, լինելով Պաշտպանության խորհրդի նախագահը, հասել եք այն բանին, որ սովետական ժողովրդի, նրա բարեկամների ու դաշնակիցների խաղաղ աշխատանքը հուսալիորեն ապահովվում է:

Բոլոր մայրցամաքների հարյուր միլիոնավոր մարդիկ Ձեզ լավ են ճանաչում որպես խաղաղության և ժողովուրդների բարեկամության գործի ջատագովի: Դուք ՍՄԿԿ XXIV, XXV և XXVI համագումարների խաղաղության ծրագրերի կերտողն եք, որոնք նոր հորիզոններ են բացում համաշխարհային քաղաքականության մեջ: Մեր ժամանակներում չկա մի այլ պետական ու քաղաքական գործիչ, որն այնքան շատ բան արած լինի խաղաղության ամրապնդման համար, որքան Դուք: Միջազգային լարվածության թուլացման՝ Ձեր անվան հետ կապված քաղաքականությունը, համաշխարհային հրթիռամիջուկային պատերազմի սպառնալիքի դեմ Ձեր անդուլ, անձնվեր պայքարը արժանանում են սովետական մարդկանց լիակատար պաշտպանությանը, երկրագնդի բոլոր ժողովուրդների լայն ըմբռնմանը:

Անգնահատելի է այն, ինչ Դուք արել և շարունակում եք ամեն օր անել մեր մեծ հայրենիքի ծաղկման համար, կոմունիզմի գաղափարների հաղթանակի համար: ՍՄԿԿ XXVI համագումարում Դուք նոր մեծ խնդիրներ դրեցիք կոմունիստների առջև, սովետական բոլոր աշխատավորների առջև: Մշակվում են պարենային, էներգետիկ և այլ ծրագրեր, որոնք կոչված են հաղթահարելու եղած դժվարությունները և արդյունավետ ծառայելու ժողովրդի բարօրությանը, նրա երջանկությանը:

Արտահայտելով մեր երկրի կոմունիստների, սովետական բոլոր մարդկանց խոհերն ու զգացմունքները, մենք Ձեզ, թանկագին Լեոնիդ Իլյիչ, ի սրտե մաղթում ենք քաջառողջություն, անսպառ եռանդ և ոգու առույգություն: Վստահ ենք, որ Ձեր քաղաքական իմաստությունը, ղեկավարի Ձեր հարուստ փորձը այսուհետև ևս կծառայեն մեր կուսակցության և ժողովրդի շահերին, խաղաղության և սոցիալական առաջադիմության գործին:

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ**

**ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ**

**ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ**

## ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

### ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՐՇԱԼ ԸՆԿԵՐ ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՐՈՍԻ «ՈՍԿԵ ԱՍՏՂ» ՄԵԴԱԼՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

**Սովետական Միության տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման գործում կոմունիստական կուսակցությանը և սովետական պետությանը մատուցած ակնառու ծառայությունների, Հայրենական մեծ պատերազմի տարիներին գերմանաֆաշիստական զավթիչների դեմ հաղթանակի նվաճման, հետպատերազմյան ժամանակաշրջանում ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և հետագա զարգացման գործում ներդրած անձնական մեծ ավանդի համար, խաղաղության պայքարում անխոնջ գործունեության, կոմունիստական շինարարության բեղմնավոր ղեկավարման համար և ծննդյան յոթանասունհինգամյակի կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ, Սովետական Միության մարշալ ընկեր Լեոնիդ Իլյիչ ԲՐԵԺՆԵՎԻՆ պարգևատրել ԼԵՆԻՆԻ շքանշանով և ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՐՈՍԻ «ՈՍԿԵ ԱՍՏՂ» մեդալով:**

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի
առաջին տեղակալ՝ Վ. ԿՈՒԶՆԵՑՈՎ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝
Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

*Մոսկվա, Կրեմլ, 18 դեկտեմբերի 1981 թ.*

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻՆ

Թանկագին Լեոնիդ Իլյի՛չ:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը և Մինիստրների խորհուրդը հանրապետության կոմունիստների, աշխատավորների, ամբողջ հայ ժողովրդի կողմից Ձեզ՝ Լենինի և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության գործի հավատարիմ շարունակողիդ, արդիականության քաղաքական ու պետական ականավոր գործչիդ, խաղաղության, սոցիալական առաջընթացի և աշխատավոր մարդկանց երջանկության բոցաշունչ մարտիկիդ ջերմորեն և ի սրտե շնորհավորում են Ձեր ծննդյան փառապանծ 75-ամյակի առթիվ:

Ձեր ամբողջ կյանքն ու գործունեությունը կուսակցությանը, ժողովրդին, սոցիալիստական հայրենիքին անձնվիրաբար ծառայելու ոգեշունչ օրինակ են:

Գլխավորելով մեր լենինյան կուսակցության մարտական շտաբը՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, Դուք, թանկագին Լեոնիդ Իլյիչ, անձնական վիթխարի ավանդ եք ներդնում ՍՄԿԿ-ի ու սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության մշակման և իրականացման գործում: Քաղաքական ու կազմակերպչական հսկայական տաղանդի, անսպառ եռանդի և աննկուն կամքի շնորհիվ Դուք կուսակցությանն ու ժողովրդին հմտորեն համախմբում և նպատակամղում եք հաջողությամբ կենսագործելու կոմունիստական շինարարության հոյակապ պլանները: Անշեղորեն աճում է մեր երկրի տնտեսական ու պաշտպանական հզորությունը, բարձրանում է սովետական ժողովրդի բարեկեցությունը:

Բարի կամքի բոլոր մարդկանց անսահման սիրուն և հարգանքին է արժանացել խաղաղության և միջազգային անվտանգության ամրապնդմանը նպատակամղված Ձեր եռուն գործունեությունը:

Սովետական Հայաստանի աշխատավորները ամբողջովին և լիովին հավանություն են տալիս Ձեր գլխավորած լենինյան Կենտրոնական կոմիտեի, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի քաղաքական գծին ու պրակտիկ գործունեությանը, խորին ու սրտագին շնորհակալություն են հայտնում հանրապետության նկատմամբ ցուցաբերվող մշտական ուշադրության և հայրական հոգատարության համար: Նրանք լի են վճռականությամբ՝ այսուհետև էլ անձնվիրաբար աշխատելու հանուն սովետական մեծ հայրենիքի հետագա բարգավաճման, իրենց բոլոր ուժերը, իրենց ստեղծագործական ողջ եռանդը գործադրելու ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումները, համագումարում Ձեր զեկուցման մեջ առաջադրված խնդիրները կենսագործելու համար:

Արտահայտելով Սովետական Հայաստանի աշխատավորների, ամբողջ ժողովրդի խորին սերը, ամենաբարի և անկեղծ զգացմունքները, Ձեզ, թանկագին Լեոնիդ Իլյիչ, ի սրտե մաղթում ենք քաջառողջություն և նոր նշանակալի հաջողություններ Ձեր ազնիվ, անխոնջ գործունեության մեջ՝ հանուն կոմունիստական պայծառ իդեալների հաղթանակի:

| ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ | ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ | ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ |
|---|---|---|

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՊԱՐԳԵՎՆԵՐԻ ՀԱՆՁՆՈՒՄԸ ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻՆ

*ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ծննդյան 75-ամյակի առթիվ դեկտեմբերի 18-ին Կրեմլի Մեծ պալատում հանդիսավոր իրադրության մեջ նրան հանձնվեցին Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության, Հունգարական Ժողովրդական Հանրապետության, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության, Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության, Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության, Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետության բարձր պարգևները:*

*Սրտագին շնորհավորանքներով հոբելյարին դիմեցին և նրան բարձր պարգևներ հանձնեցին Բուլղարիայի կոմունիստական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար, Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության Պետական խորհրդի նախագահ Տ. Ժիվկովը, Հունգարիայի սոցիալիստական բանվորական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Կադարը, Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության Պետական խորհրդի նախագահ Է. Հոնեկերը, Մոնղոլական ժողովրդահեղափոխական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար, Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության ժողովրդական մեծ խուրալի նախագահության նախագահ Յու. Ցեդենբալը, Ռումինական կոմունիստական կուսակցության գլխավոր քարտուղար, Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության պրեզիդենտ Ն. Չաուշեսկուն, Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար, Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետության պրեզիդենտ Գ. Հուսակը:*

*Այնուհետև ճառով հանդես եկավ ընկեր Լ. Ի. Բրեժնևը:*

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

Հարգելի ընկերնե՛ր:

Բարեկամնե՛ր:

Հուսով եմ, ձեզ հասկանալի է իմ հուզմունքը: Չէ՛ որ հոբելյանը ոչ միայն հաշվետվություն է ինքն իր առջև, իր ժողովրդի առջև, այլև հաշվետվություն է համախոհ բարեկամների առջև: Այստեղ ասես նորովի ես ստուգում անցածդ ուղին:

Ես ի սրտե երախտապարտ եմ ընկերներ Ժիվկովին, Կադարին, Հոնեկերին, Ցեդենբալին, Չաուշեսկուին, Հուսակին այն բանի համար, որ նրանք այսօր այստեղ են, Մոսկվայում: Շնորհակալություն եմ հայտնում ձեզ, բա-

րեկամներ, բարձր պարգևների համար, հենց նոր իմ մասին և իմ աշխատանքի մասին ասված ջերմ խոսքերի համար։

Իր մասին խոսելը մարդու համար դժվար է, նույնիսկ անհարմար։ Ուստի ցանկանում եմ անմիջապես շեշտել. իմ աշխատանքը լենինյան կուսակցության վիթխարի գործունեության մի մասնիկն է, որի հետ իմ կյանքը անխզելիորեն կապված է ահա արդեն ավելի քան հիսուն տարի։

Քիչ փորձություններ բաժին չեն վիճակվել մեր երկրին, մեր ժողովրդին։ Մենք ունեցել ենք ծանր դժվարություններ, ունեցել ենք անհաջողություններ, բայց ավելի շատ եղել են ուրախություններ։ Եվ, իհարկե, մեզ՝ կոմունիստներիս համար, գլխավոր ուրախությունը միշտ եղել ու մնում է ստեղծագործության բերկրանքը, նորի ստեղծման բերկրանքը։

Մեզ բախտ է վիճակվել մասնակցելու սոցիալիստական երկրների համաշխարհային ընկերակցության կազմավորմանն ու զարգացմանը։ Ահա արդեն համարյա չորս տասնամյակ մենք աշխատում ենք սոցիալիստական երկրների մեր դասակարգային ընկերների հետ ձեռք-ձեռքի տված։ Մենք համատեղ ենք կառուցում, և կառուցում ենք ոչ հասարակ պայմաններում, ժողովուրդների միջև իրոք արդարացի, իրոք եղբայրական հարաբերություններ։ Դա, առանց չափազանցության, մարդկային պատմության մեջ գործունեության ամենաազնիվ ուղղություններից մեկն է։

Մեր բոլոր քաղաքական և բարոյական ձգտումները ենթարկված են խաղաղ գործերին։ Մեզ համար դրանք միշտ առաջին պլանի վրա են։ Մենք խաղաղություն ենք ուզում մեզ համար, այն ժողովուրդների համար, որոնք փրնտրում են առաջընթացի իրենց ուղիները, մենք խաղաղություն ենք ուզում ամբողջ մարդկության համար։ Պետական գործիչները պետք է հասկանան. որպեսզի խաղաղության գործը հաղթանակի, հարկավոր է պաշտպանել ոչ միայն սեփական շահերը, այլև հարգել ուրիշների շահերը։

Խաղաղությունը և արդարությունը անբաժանելի հասկացություններ են։ Եվ, իհարկե, խաղաղության նկատմամբ իսկական հոգատարությունը անհամատեղելի է ազգային էգոիզմի հետ, համաշխարհային առաջնության հավակնությունների հետ։

Քաղաքականության մեջ ոչ միայն պարզապես օգտակար, այլև անհրաժեշտ է նայել այսօրվա հորիզոններից այն կողմ։ Ես չեմ կասկածում, որ խաղաղության լույսը կցրի պատերազմի ուրվականը։ Գալիք տարիները կարող են ու պետք է լինեն խաղաղ։ Դրանք է՛լ ավելի մեծ չափով կբացահայտեն մեր իդեալների հումանիզմը, մեր բարեկամության վեհությունը։

Ինչ վերաբերում է ինձ, ուզում եմ հավաստիացնել, որ ես այսուհետև էլ ջանք չեմ խնայի հանուն սոցիալիստական երկրների բարեկամության ամրապնդման, հանուն լենինյան անմահ գործի նոր հաջողությունների։

Ահա, թանկագին ընկերնե՛ր, այն մի քանի մտքերն ու զգացմունքները, որ ես ուզում էի ձեզ հետ կիսել ինձ համար այս հանդիսավոր օրը։ **(Երկարատև ծափահարություններ)։**

# ՀԱՅՐԵՆԻՔԻ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՊԱՐԳԵՎԻ ՀԱՆՁՆՈՒՄԸ ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻՆ

*ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևին դեկտեմբերի 19-ին Կրեմլի Մեծ պալատում հանդիսավոր իրադրության մեջ հանձնվեց Սովետական Միության բարձրագույն պարգևը՝ Լենինի շքանշան և Սովետական Միության հերոսի «Ոսկե աստղ» մեդալ։*

*Պարգևը հանձնեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Մ. Ա. Սուսլովը։*

# ԸՆԿԵՐ Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎԻ ՃԱՌԸ

Թանկագին Լեոնիդ Իլյի՛չ։

Այսօր մենք՝ Ձեր զինակիցներն ու բարեկամները, կուսակցության հետ, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին Ձեզ մեծարում ենք Ձեր փառապանծ յոթանասունհինգամյակի օրը։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ողջույնի մեջ արտահայտված զգացմունքներն ու մտքերը սովետական բոլոր մարդկանց զգացմունքներն ու մտքերն են։

Ձեզ՝ կոմունիստական կուսակցության ու սովետական պետության, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ականավոր գործչիդ, Լենինի անմահ գործի հավատարիմ շարունակողիդ, աշխարհի խաղաղության ու սոցիալական առաջընթացի բոցաշունչ մարտիկիդ ուղղված հարգանքի և խորին երախտագիտության անկեղծ, սրտաբուխ խոսքեր են ասում մոլորակի միլիոնավոր մարդիկ։

Կարելի է առանց չափազանցության ասել, որ Ձեր բովանդակ կյանքը կուսակցության հետ, ժողովրդի հետ, ժողովրդի համար ապրած կյանք է։ Գործարանի արտադրամասը, գյուղացու դաշտը այն հասցեներն են, որտեղ Դուք յուրացրել եք կյանքի գիտությունը, որտեղ Ձեզ համար սրտամոտ են դարձել աշխատավորության խոհերն ու իղձերը։ Հողաշինարար, մետալուրգ-ինժեներ, սովետական, կուսակցական աշխատող՝ սրանք Ձեր աշխատանքային հարուստ կենսագրության կարևոր ուղենիշներն են։ Պատերազմի հետևանքով ավերված տնտեսության վերականգնում, անծայրածիր խոպան տարածությունների հերկում ու յուրացում, տիեզերական վիթխարի էպոպեայի իրականացում՝ այս բոլոր մեծագործությունները տեղի են ունեցել Ձեր անմիջական մասնակցությամբ, դրանց Դուք նվիրաբերել եք Ձեր ջերմ սիրտը, ստեղծարար եռանդը, ականավոր ղեկավարի վառ տաղանդը։

Դուք, որպես մարտական հրամանատար ու քաղաշխատող, մեծ ավանդ եք ներդրել հիտլերյան ֆաշիզմի ջախջախման գործում, անցել եք Հայրենական մեծ պատերազմի դժվարին մարտական ուղին սկզբից մինչև վերջ։ Դուք այսօր էլ զինվոր եք, այսօր էլ գտնվում եք հայրենիքի պաշտպանների շարքում։ Լինելով Սովետական Միության մարշալ, ՍՍՀՄ պաշտպանության խորհրդի նախագահ, Դուք իրականացնում եք երկրի պաշտպանունակության ամրապնդման, խաղաղության ու սոցիալիզմի նվաճումների պաշտպանության

# ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹՅՈՒՆ ԿՐԵՄԼՈՒՄ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ 75-ԱՄՅԱԿԻ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը դեկտեմբերի 19-ին Կրեմլի Գեորգիևյան դահլիճում ընդունելություն կազմակերպեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի յոթանասունհինգամյակի առթիվ։*

*ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի անունից ընդունելությունը բացեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Մ. Ա. Սուսլովը։*

*Ընդունելությանը հանդես եկավ ընկեր Լ. Ի. Բրեժնևը։ Նա ասաց.*

Թանկագին ընկերներ և բարեկամներ։

Այսօր այստեղ լավ, ջերմ շատ խոսքեր ասացին թե՛ Կենտկոմի ղեկավարության իմ ընկերները, թե՛ միութենական հանրապետությունների, արհմիությունների, կոմերիտմիության, գիտնականների, զինված ուժերի ներկայացուցիչները և թե մեր արտասահմանյան հյուրերը։ Դրա համար սրտագին շնորհակալություն եմ հայտնում բոլոր նրանց։ **(Ծափահարություններ)։**

Երևի ոմանք չափն անցան գովեստների հարցում, առանց դրա մեզ մոտ հոբելյանները հազվադեպ են յոլա գնում։ **(Ծիծաղ)։** Այդ մասին դեռ Լենինն էր ասում, նախազգուշացնում, որ մենք՝ կոմունիստներս, չմեծամտանանք, չմոռանանք գործը։ Ուրեմն, եկեք հետևենք լենինյան նաև այդ պատգամին։ **(Ծափահարություններ)։**

Այն ամենը, ինչ ինձ հաջողվել է անել կյանքում՝ արտադրության մեջ, մարտում, քաղաքական և պետական աշխատանքի ասպարեզում, այդ ամենն արվել է մեր լենինյան կուսակցության կոչով, որի հավատարիմ զավակն եմ ես ահա արդեն հիսուն տարի և այդպիսին կմնամ, քանի դեռ ապրում եմ։ Կուսակցությունը մեր ուժի աղբյուրն է **(ծափահարություններ)**, մեր առաջընթաց ուղին լուսավորող լուսարձակը։ Նա մեր ժողովրդի լավագույն որդիների և դուստրերի կոլեկտիվ բանականությունն է։ Նա, ինչպես մեզ մոտ հաճախ և ճշմարտացիորեն ասում են, մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչն է։ **(Ծափահարություններ)։**

Կուսակցությունն իր ամբողջ գործունեությունը ենթարկում է ժողովրդի շահերին, նրա բարօրությանը, դրա համար էլ ըմբռնում և աջակցություն է գտնում ամբողջ ժողովրդի կողմից։ Դա է կուսակցության ուժի աղբյուրը, նրա բոլոր պլանների հաջող կենսագործման երաշխիքը։ **(Ծափահարություններ)։**

Բոլոր տեղամասերում, որտեղ էլ ինձ վիճակվել է աշխատել, խոսքը վերջին հաշվով վերաբերել է երեք գլխավոր խնդիրների լուծմանը. էկոնոմիկայի վերելք, գաղափարադաստիարակչական աշխատանք և, վերջապես, պաշտպանության ամրապնդում ու կայուն խաղաղության պայքար։ Ահա սրանք են մեր կուսակցության գործունեության «Երեք հիմնասյուները», որի գերագույն նպատակն է ժողովրդի երջանկությունը։ **(Ծափահարություններ)։** Այդպիսի մեծ գործին ափսոս չէ նվիրաբերել ամբողջ կյանքը։ Եվ ես հպարտանում եմ, որ դարձա մեկը նրանցից, ում դա վիճակվել է։ **(Ծափահարություններ)։**



Ուզում եմ ասել ևս մի բան։ Հավանաբար, մեր ամբողջ աշխատանքը օդում կախված կմնար, եթե մենք ամեն օր չհենվեինք մեր հսկայական երկրում ամենուրեք տեղական կուսակցական ղեկավարների վիթխարի, անդուլ աշխատանքի վրա։

Եվ ամենից առաջ այստեղ հարկավոր է խոսել այն աշխատանքի մասին, որ կատարում են միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների քարտուղարները, կուսակցության երկրկոմների և մարզկոմների, քաղկոմների և շրջկոմների քարտուղարները։ Նրանց ուսերին հոգսերի վիթխարի բեռ է դրված։ Նրանք են պատասխանատու ժողովրդի կյանքի բառացիորեն բոլոր ոլորտներում աշխատանքի կազմակերպման համար։ Սեփական փորձով գիտեմ, թե դա որքան դժվար է և որքան գրավիչ ու հետաքրքրական։ Ուստի այս հանդիսավոր պահին ես կուզենայի նրանց բոլորին երախտագիտության ջերմ զգացմունք արտահայտել, ինչպես հարկն է գնահատել այդ ընկերների՝ կուսակցության քաղաքականության հավատարիմ և հուսալի կիրառողների աշխատանքը։ **(Երկարատև ծափահարություններ)։**

Թանկագին բարեկամնե՛ր։ Երբ գալիս է ժամանակը անցնելու կյանքիդ ուղու հերթական բնագիծը, ակամա խորհում ես թե՛ այն մասին, ինչ եղել է և թե այն մասին, ինչ լինելու է։

Անցյալի մասին երկար խոսելու հարկ չկա, այն հայտնի է։ Եվ դրա համար, ես կարծում եմ, կարմրելու առիթ չունենք։ Մտքերն ավելի շատ կենտրոնանում են այն բանի վրա, ինչ կուսակցությունն ու ժողովուրդը պետք է անեն գալիք տարիներին։ Եվ ինչին, անկեղծորեն ասած, կուզենայի մասնակցություն բերել, քանի դեռ դրա համար ուժ կա։ **(Ծափահարություններ)։** Իսկ պետք է արվի, ընկերներ, անչափ շատ բան։

Մենք ստեղծել ենք հզոր, տեխնիկապես լավ զինված սոցիալիստական ժողովրդատնտեսական օրգանիզմ։ Մենք պատրաստել ենք էկոնոմիկայի, կառավարման, հասարակական կյանքի բոլոր բնագավառներում մասնագետների վիթխարի բանակ։ Բայց դրանով հանգստանալ չի կարելի։

Հիմա բանը այդ մեխանիզմի և դրանում զբաղված բոլոր մարդկանց հստակ և անխափան աշխատանքի կազմակերպումն է։

Հարկ կլինի, և դա ամենակարևորն է, հենվելով առաջավոր տեխնիկայի և աշխատանքի գիտական կազմակերպման վրա, զգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը մեր ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ։ Այնքան, որ մեզ մոտ աշխատանքի արտադրողականությունը լինի ոչ թե ավելի ցածր, այլ ավելի բարձր, քան կապիտալիզմի առավել զարգացած երկրներում։ Սոցիալիստական կարգերը դրա համար մեզ տալիս են բոլոր հնարավորությունները։ Հարցը միայն այն է, որ կարողանանք դրանք ճիշտ օգտագործել, սովորենք ռացիոնալ, խնայողաբար տնտեսավարել։

Հարկ կլինի զգալիորեն բարելավել էկոնոմիկայի կառավարումը, հաշվի առնելով մեր ժողովրդի փորձն ու ստեղծագործական նախաձեռնությունը, հաշվի առնելով այն ամեն լավագույնը, ինչ կա սոցիալիզմի եղբայրական երկրների, ինչպես նաև զարգացած կապիտալիստական պետությունների փորձի մեջ։

Հարկ կլինի մշակել և ամենուրեք արմատավորել բարոյական և նյութական խթանների անխափան գործող սիստեմ, որը մարդկանց մղի աշխատելու առավելագույն հատույցով, մշտապես բարձրացնելու արտադրանքի որակը։

Հարկ կլինի նոր մակարդակի բարձրացնել բոլոր սովետական մարդկանց քաղաքացիական գիտակցությունը, աշխատանքի և սոցիալիստական սեփականության նկատմամբ նրանց վերաբերմունքը, աշխատանքում, հասարակական կյանքում և կենցաղում նրանց կարգապահությունը և կուլտուրան։

Այս ամենը անհրաժեշտ է անել, ընկերներ, եթե մենք ուզում ենք մեզ ապահովագրել դժվարություններից, որոնց մինչև օրս դեռ բախվում ենք երկրի զարգացման գործում։ Կասեմ ավելին. այդ ամենը բացարձակապես անհրաժեշտ է անել, որպեսզի հաջողությամբ լուծենք մեր կուսակցության և

սովետական ժողովրդի գլխավոր խնդիրը՝ կոմունիստական հասարակության կառուցման խնդիրը: Հենց դրան են նպատակամղված կուսակցության XXVI համագումարի որոշումները:

Այս ամենի համար գործունեության վիթխարի ասպարեզ ունեն կուսակցությունը, բոլոր աստիճանների սովետները, արհմիությունները, կոմերիտմիությունը, մեր ամբողջ ժողովուրդը:

Եվ, իհարկե, հարկ կլինի մեր ուժերը ներածին չափ ամեն ինչ անել երկրի անվտանգության և կայուն, հուսալի խաղաղության ապահովման համար: Իսկ դա միջազգային ներկայիս սուր և լարված իրադրության մեջ ամենևին հեշտ չէ:

Օտարերկրյա պետական գործիչների հետ զրույցների ժամանակ երբեմն առիթ է լինում լսել այնպիսի դատողություններ, թե Բրեժնևի խաղաղասիրությանը մենք հավատում ենք, իսկ ինչ վերաբերում է ձեզ մոտ, ՍՍՀՄ-ում մյուսների խաղաղասիրությանը, դա իբր դեռ հայտնի չէ:

Ուզում եմ այդ կերպ դատող պարոններին ասել. դուք քիչ եք ծանոթ Սովետական Միությանը: Խաղաղության գործին Բրեժնևի նվիրվածությունը բխում է հենց նրանով, որ նա արտահայտում է ամբողջ սովետական ժողովրդի **(երկարատև ծափահարություններ)** և, իհարկե, ամբողջ սովետական ղեկավարության մտքերն ու զգացումները, արտահայտում է արտաքին քաղաքականության մեջ մեր կուսակցության ու պետության հաստատուն և անշեղ գիծը: **(Ծափահարություններ):** Այդ գիծը հետևողականորեն վարվում է Լենինի ժամանակներից մինչև մեր օրերը: **(Ծափահարություններ):** Խաղաղության և մյուս երկրների հետ խաղաղ համագործակցության գործին նվիրվածությունը որոշվում է մեր հասարակության հենց բնույթով: Հենց դրա համար էլ մեզ մոտ չկան ու չեն լինի պատերազմի, ագրեսիայի, քաղաքական արկածախնդրության կողմնակիցներ: Դա այդպես է այժմ, դա այդպես կլինի այսուհետև էլ: **(Երկարատև ծափահարություններ):**

Ավարտելով ճառս, ուզում եմ առաջարկել.

— Մեր մեծ սովետական ժողովրդի կեցցե՛ն: **(Երկարատև ծափահարություններ):**

— Սովետական Միության կոմունիստական կուսակցության՝ Լենինի կուսակցության, կոմունիստական շինարարության ճարտարապետի կեցցե՛ն: **(Բուռն ծափահարություններ):**

— Արդի պատմության գլխավոր շարժիչ ուժերից մեկի՝ սոցիալիստական պետությունների պանծալի ընկերակցության կեցցե՛ն: **(Երկարատև ծափահարություններ):**

— Ամբողջ աշխարհի կայուն խաղաղության կեցցե՛ն: **(Երկարատև ծափահարություններ):**

— Ձեր կենացը և Ձեր հաջողությունների կեցցե՛ն, թանկագին ընկերներ: **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

---

**ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում**

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՖԵԴԵՐԱՏԻՎ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, քննության առնելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարած այցի արդյունքները, որը տեղի ունեցավ 1981 թվականի նոյեմբերի 22—25-ը, ամբողջովին ու լիովին հավանություն են տալիս այն շատ կարևոր և օգտակար աշխատանքին, որ կատարեց Լ. Ի. Բրեժնևը ԳՖՀ-ի կանցլեր Հ. Շմիդտի, արևմտագերմանական պետական ու քաղաքական այլ գործիչների հետ ունեցած բանակցությունների և զրույցների ընթացքում:**

**Համաեվրոպական և համաշխարհային արձագանք գտան այցի ընթացքում Լ. Ի. Բրեժնևի ունեցած հրապարակային ելույթները: Լ. Ի. Բրեժնևի Գերմանիայի Ֆեդերարտիվ Հանրապետություն կատարած այցը ամբողջությամբ վերցված իրոք խաղաղության առաքելություն եղավ՝ դրա ամենալիակատար և ամենաբարձր ըմբռնումով:**

**Միջազգային հարաբերությունների ներկայիս լարված և չափազանց պատասխանատու պահին, երբ դրանք կարող են խիստ վատանալ կամ էլ կարող են շրջվել դեպի ավելի լավ կողմը, Լ. Ի. Բրեժնևի ԳՖՀ կատարած այցը հատուկ նշանակություն է ստանում ինչպես սովետա-արևմտագերմանական երկկողմ կապերի համար, այնպես էլ Արևելքի և Արևմուտքի հարաբերությունների ամբողջ կոմպլեքսի համար, համաշխարհային քաղաքականության ընդհանուր ուղղվածության համար:**

**Սովետա-արևմտագերմանական բարձր մակարդակի նոր հանդիպման ընթացքը և արդյունքները կրկին հավաստում են միջազգային գործերում վարվող կուրսի, պատերազմի, առաջին հերթին միջուկային պատերազմի, սպառնալիքի վերացման, զինաթափման, լարվածության թուլացման և տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ համագործակցու-**

թյան նպատակով ՍՄԿԿ XXVI համագումարի մշակած կուրսի գործուն բնույթը: ԳՖՀ-ում Լ. Ի. Բրեժնևի վարած բանակցությունները և զրույցները, նրա հանդիպումները և ելույթները քաղաքական խոշոր քայլ եղան 80-ական թվականների խաղաղության ծրագրի պրակտիկ իրականացման գործում:

Սովետական ժողովրդի, մեր բարեկամների և դաշնակիցների, Եվրոպայի բոլոր ժողովուրդների անվտանգության արմատական շահերը թելադրում էին Բոննում անցկացվող բանակցությունների կենտրոնում առավել սուր և հրատապ հարցը դնելու անհրաժեշտությունը. ինչպես կանխել արևմտաեվրոպական մի շարք երկրներում և առաջին հերթին ԳՖՀ-ում ամերիկյան միջուկային հրթիռների նոր տեսակների տեղաբաշխման պլանների կապակցությամբ Եվրոպայի վրա կախված սպառնալիքը և թույլ չտալ ուժերի հաշվեկշռի խախտում՝ հօգուտ ՆԱՏՕ-ի բլոկի:

Այդ հարցը Լ. Ի. Բրեժնևը առաջադրեց ամենայն ուղղամտությամբ և որոշակիությամբ:

Լ. Ի. Բրեժնևը ԳՖՀ-ում հանդես եկավ նոր, հեռուն գնացող առաջարկություններով, որոնք ծառայում են մի նպատակի՝ գտնել փոխադարձաբար ընդունելի համաձայնություն, Եվրոպան փրկել միջուկային հրդեհի վտանգից: Այդ առաջարկությունները նախատեսված են ոչ միայն ԳՖՀ-ի և մյուս արևմտաեվրոպական երկրների համար: Դրանք հասցեագրված են նաև ԱՄՆ-ին՝ կապված այն բանի հետ, որ նոյեմբերի 30-ին Ժնևում սկսվում են սովետա-ամերիկյան բանակցություններ Եվրոպայում միջին հեռավորության միջուկային զենքի շուրջը:

Սովետական նոր առաջարկությունների էությունը հետևյալն է: Նախ, Սովետական Միությունը էապես լրացրեց ավելի վաղ իր արած առաջարկությունը Եվրոպայում միջին հեռավորության նոր միջուկային միջոցների ծավալման և առկա միջոցների արդիականացման համար մորատորիում սահմանելու մասին այն ժամանակ, քանի դեռ բանակցություններ են վարվում սպառազինությունների այդ տեսակների շուրջը:

Արտահայտվեց սովետական կողմի պատրաստակամությունը՝ այդպիսի մորատորիումի համար մյուս կողմի համաձայնության դեպքում միակողմանի կարգով կրճատելու ՍՍՀՄ-ի եվրոպական մասում միջին հեռավորության իր միջուկային սպառազինությունների որոշ մասը, ընթանալով դեպի այն ավելի ցածր մակարդակը, որի մասին ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը կարող են պայմանավորվել բանակցությունների շնորհիվ:

Երկրորդ, ընդգծվեց Սովետական Միության մտադրությունը՝ Ժնևի բանակցությունների ընթացքում հանդես գալու երկու կողմերից միջին հեռավորության միջուկային միջոցների արմատական կրճատումների օգտին՝ ոչ թե տասնյակ, այլ հարյուրավոր միավորներով: Ընդ որում, իհարկե, անհրաժեշտ է հաշվի առնել ինչպես առաջավոր բազավորման ամերիկյան միջոցները, այնպես էլ Անգլիայի և Ֆրանսիայի համապատասխան միջուկային միջոցները:

Երրորդ, ՍՍՀՄ-ը պատրաստ կլիներ պայմանավորվածության գալ նաև այն մասին, որ երկու կողմերը՝ Արևմուտքը և Արևելքը, լրիվ հրաժարվեն Եվրոպայում գտնվող օբյեկտների վրա ուղղված միջին հեռավորության միջուկային զենքի բոլոր տեսակներից:

Ավելին, ինչպես ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը, Սովետական Միությունը ընդհանրապես հանդես է գալիս հօգուտ այն բանի, որ Եվրոպայում վերջին հաշվով չլինի ոչ մի միջուկային զենք՝ ոչ միջին հեռավորության, ոչ էլ տակտիկական: Դա կլիներ իրոք «զրոյական լուծում», արդարացի բոլոր կողմերի համար:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի արած առաջարկությունները Եվրոպայում միջուկային սպառազինությունների կրճատման ծրագիր են: Այն համապատասխանում է բոլոր ժողովուրդների իղձերին, միջուկային պատերազմի սպառնալիքի դեմ հանդես եկող լայն մասսաների պահանջներին:

Սովետական Միությունում սպասում են, որ Արևմուտքը և ամենից առաջ Ամերիկայի Միացյալ Նահանգները ամենայն ուշադրությամբ և օբյեկտիվությամբ կվերաբերվեն սովետական նոր նախաձեռնություններին:

Լ. Ի. Բրեժնևի զրույցների հիման վրա սովետա-ամերիկյան բանակցություններում սովետական պատվիրակությանը տրված են համապատասխան հրահանգներ:

Եվրոպայում միջուկային զենքի հարցը միայն մայրցամաքի ապագայի, այն բնակեցնող հարյուր միլիոնավոր մարդկանց բախտի հարց չէ: Դա նաև ընդհանուր խաղաղության բախտի հարց է: Սովետական Միությունը հանդես է գալիս բանակցությունների սեղանի շուրջը այնպիսի լուծում գտնելու օգտին, որ ոչ ոքի անվտանգությունը սահմանափակված չլինի, իսկ Եվրոպայում ռազմական դիմակայության մակարդակը նվազեցվի:

Բայց պատրանք կլիներ գայթակղվել նրանով, թե նման լուծումը ինքն իրեն կգա: ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ի գծով նրա հիմնական դաշնակիցները մինչև օրս ձգտում չեն դրսևորում կանգնելու ռեալիզմի ոգով, հավասարության և միատեսակ անվտանգության սկզբունքի հիման վրա փոխադարձաբար ընդունելի համաձայնություն որոնելու ուղու վրա: Բոննում անցկացված բանակցությունները կրկին ցույց տվեցին, որ Եվրոպայում միջին հեռավորության միջուկային միջոցների հարցում Սովետական Միության և ՆԱՏՕ-ի, ներառյալ ԳՖՀ-ն, դիրքերի մեջ պահպանվում են էական տարաձայնություններ:

Դատելով բազմաթիվ նշաններից, ՆԱՏՕ-ում իշխող տերությունները, նախ և առաջ ԱՄՆ-ը, դարձյալ շեշտը դնում են իրենց համար ռազմական առավելություններ ստանալու վրա, իսկ փաստորեն՝ Սովետական Միության միակողմանի զինաթափման վրա: Ինչպես հաստատակամորեն և հստակորեն հայտարարեց Լ. Ի. Բրեժնևը, այդ թվում ԳՖՀ կատարած այցի ժամանակ, Սովետական Միությունը դրան չի համաձայնի: Սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցությունը երբեք չեն զոհաբերի մեր երկրի, մեր դաշնակիցների և բարեկամների շահերը: Այդ մասին պետք է իմանան Եվրոպայի ժողովուրդները, ամերիկյան ժողովուրդը, բոլոր նրանք, ում համար թանկ է զինաթափման ու խաղաղության գործը: Այդ բանում իրենց պետք է հաշիվ տան նաև արևմտյան պետությունների պատասխանատու ղեկավարները:

Գլխավոր հետևություններից մեկը, որ պետք է անել ԳՖՀ-ում Լ. Ի. Բրեժնևի վարած բանակցություններից, այն է, որ պետությունները, անկախ նրանց սոցիալական կարգից, այս կամ այն ռազմական դաշինքին մասնակցելուց, պետք է ամեն ջանք գործադրեն, շարունակեն համատեղ աշխատել հանուն խաղաղության ամրապնդման, լարվածության թուլացման և վստահության կլիմայի վերականգնման:

Կարևոր է, որ դա կողմնորոշիչ լինի բոլոր պետությունների գործնական քաղաքականության համար:

Բոննում ընկեր Լ. Ի. Բրեժնևի վարած բանակցությունները ի հայտ բերեցին Սովետական Միության և ԳՖՀի հայացքների զուգադիպում բարդացած միջազգային պայմաններում պետությունների քաղաքական երկխոսության պահպանման նշանակության նկատմամբ:

ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը այն կարծիքին են եղել և են, որ միջազգային իրադարձությունների ընթացքի համար իր պատասխանատվությունը գիտակցող յուրաքանչյուր երկիր պետք է իրենից կախված ամեն ինչ անի բանակցությունների հաջող անցկացմանը և երկխոսության զարգացմանը նպաստող քաղաքական մթնոլորտ ստեղծելու համար: Ինչ վերաբերում է ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի երկխոսությանը, ապա դրա վերաբերյալ Սովետական Միության դիրքորոշումը սահմանված է միանգամայն հստակորեն, նախ և առաջ՝ ՍՄԿԿ XXVI համագումարում: Նա հանդես է գալիս այդպիսի երկխոսության օգտին:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը բարձր են գնահատում այցի ընթացքում ձեռք բերված այն արդյունքները, որոնք վերաբերում են սովետա-արև-









մտագերմանական երկկողմ հարաբերությունների զարգացմանը: Դրանք նոր եռանդուն ազդակ են հանդիսանում տարբեր բնագավառներում ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի բարիդրացիական, խաղաղ համագործակցության զարգացման համար: Այցի նախօրյակին ստորագրվեց «Գազ-խողովակներ» պայմանագիրը՝ մեր դարի խոշորագույն ձեռնարկումը Եվրոպայի շրջանակներում էներգետիկ պրոբլեմների լուծման ասպարեզում: Կողմերի միջև համաձայնեցված կամ քննարկվող մյուս նախագծերի հետ այն պատկառելի հիմք կստեղծի փոխշահավետ տնտեսական կապերի հետագա մեծացման համար, որոնք դուրս են գալիս քսաներորդ հարյուրամյակի սահմաններից:

Բանակցությունների ընթացքում և կողմերի ընդունած կոմյունիկեում ընդգծվեց, որ փոխադարձ շահերին համապատասխանող տնտեսական համագործակցության նպաստավոր զարգացումը դրականորեն է ազդում ամբողջությամբ վերցված պետությունների հարաբերությունների վրա և կարող է նպաստել միջազգային կայունությանն ու խաղաղության ամրապնդմանը:

Այցի շնորհիվ Սովետական Միության և ԳՖՀ-ի ղեկավարները հավաստեցին, որ երկու պետությունները այսուհետև էլ կընթանան այն պատմական երթուղով, որը ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի հարաբերություններում բացվել է մոսկովյան պայմանագրով, իսկ համաեվրոպական խորհրդակցության մասնակից բոլոր երկրների հարաբերություններում՝ Հելսինկիի եզրափակիչ ակտով:

Սովետական ղեկավարությունը համապատասխան մինիստրություններին, գերատեսչություններին և կազմակերպություններին ցուցում է տվել, որ առևտրատնտեսական, գիտատեխնիկական, մշակութային և մյուս բնագավառներում համագործակցությունը զարգացնելու մասին ԳՖՀ-ում Լ. Ի. Բրեժնևի վարած բանակցություններից ու զրույցներից բխող պայմանավորվածությունները կատարվեն անշեղորեն և լրիվ ծավալով:

Սովետական մարդիկ բոլոր հիմքերն ունեն խորին գոհունակության զգացումով համակվելու Լ. Ի. Բրեժնևի ԳՖՀ կատարած այցի արդյունքների առթիվ: ՍՄԿԿ-ի և սովետական պետության լենինյան արտաքին քաղաքականությունը, որն իրականացվում է եղբայրական սոցիալիստական երկրների հետ սերտ կոորդինացմամբ, կրկին ցուցադրեց իր խաղաղասիրությունը, մասշտաբայնությունը և նախաձեռնողականությունը, համոզչորեն ներգործելով մարդկանց մտքի ու սրտի վրա:

Սովետական Միության միջազգային գործունեությունը ի բարօրություն ժողովուրդների անվտանգության և առաջադիմության, լարվածության թուլացման, սպառազինությունների մրցավազքի սանձահարման ուղղությամբ այդ վեհ նպատակների իրականացման գործում Լ. Ի. Բրեժնևի ներդրած անձնական ավանդը նպաստում են այն բանին, որ աշխարհում ամենուրեք ամրապնդվում է մարդկային քաղաքակրթության մեծագույն արժեքը՝ խաղաղությունը պահպանելու, այն ակտիվորեն և ամեն օր պաշտպանելու կամքը:

Փորձը ցույց է տալիս, որ ինչքան ավելի բարձր ու պահանջկոտ է հնչում ժողովուրդների, հասարակական տարբեր ուժերի ու շրջանների ձայնը ի պաշտպանություն խաղաղության, այնքան ավելի մեծ է այն հավանականությունը, որ այդ պայքարը հաջողությամբ կպսակվի: Լ. Ի. Բրեժնևի ԳՖՀ կատարած այցի արդյունքները ընդլայնում են այն բանի հնարավորությունները, որ խաղաղության պահպանման պայքարը դառնա է՛լ ավելի արդյունավետ, մեծացնում են ժողովուրդների վստահությունը այն բանի նկատմամբ, որ նույնիսկ միջազգային ամենաբարդ պրոբլեմները լուծելի են:

---

# Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ ԱՄԵՐԻԿՅԱՆ ԷՆ-ԲԻ-ՍԻ ՀԵՌՈՒՍՏԱԸՆԿԵՐՈՒԹՅԱՆԸ

Ամերիկյան Էն-Բի-Սի հեռուստաընկերությունը դիմել էր ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևին, խնդրելով պատասխանել մի քանի հարցերի: Ստորև բերվում են Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի պատասխանները Էն-Բի-Սի-ի հարցերին:

**Հարց.** Հնարավորություն կա՞, արդյոք, որ Ժնևի բանակցություններում 1982 թվականին հիմք ձեռք բերվի համաձայնության գալու սպառազինությունների վերահսկման պայմանագիր կնքելու շուրջը:

**Պատասխան:** Այո՛, կա: Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա ձգտում է համաձայնության: Բայց, իհարկե, գործը կախված է ոչ միայն մեզանից: Պակաս նշանակություն չի ունենա այն դիրքը, որ կգրավեն Միացյալ Նահանգները:

Բանակցությունների հաջողության բանալին այն է, որ երկու կողմերը կիրառեն հավասարության և միատեսակ անվտանգության սկզբունքը: Այդ սկզբունքը չպիտի խախտվի: Պայմանավորվածությունը պետք է հաշվի առնի զենքի այն սիստեմների առանձնահատկությունները, որոնք կողմերի մոտ միատեսակ չեն, հաշվի առնի Սովետական Միության ու ԱՄՆ-ի աշխարհագրական դիրքի տարբերությունները և մի շարք այլ գործոններ: Կշեռքի երկու նժարները պետք է ինչպես հարկն է հավասարակշռված լինեն:

Տեղի ունեցող բանակցությունների կարևորության մասին շատ խոսելու հարկ չկա, դրանց ելքից է կախված՝ կնվազի՞, թե՞ կմեծանա միջուկային պատերազմի առաջացման սպառնալիքը:

**Հարց.** Արդյոք Դուք կանխատեսում և պաշտպանո՞ւմ եք 1982 թվականին Ռեյգանի և Բրեժնևի բարձր մակարդակի հանդիպումը: Եթե այո, ապա ինչո՞ւ:

**Պատասխան.** Մենք Միացյալ Նահանգների հետ ակտիվ երկխոսության, այդ թվում նաև բարձր մակարդակի հանդիպման կողմնակից ենք: Այդ մասին պարզորոշ ասվեց դեռևս այս տարվա փետրվարին մեր կուսակցության համագումարում: Ես հիմա էլ այդ նույն կարծիքին եմ: Փորձը ցույց է տալիս, որ միմյանց դիրքերն ու մտադրությունները ավելի լավ հասկանալու համար, քաղաքական լուրջ որոշումներ ընդունելու համար բարձր մակարդակի հանդիպումներն ավելի օգտակար են, քան միջպետական հաղորդակցման որևէ այլ ձև: Իհարկե, այդպիսի հանդիպման հաջողության համար անհրաժեշտ է համապատասխան նախապատրաստություն:

**Հարց.** Ինչպես երևում է, նկատվում է անհանգստության ան այն առիթով, որ Արևելքը և Արևմուտքը գլորվում են առճակատման կողմը, որը հնկայական վտանգ է ներկայացնում, ներառյալ նույնիսկ պատերազմի հնարավորությունը: Կիսո՞ւմ եք Դուք, արդյոք, այդ անհանգստությունը:

**Պատասխան.** Կիսում եմ: Բայց բուն հարցը ես այլ կերպ կդնեի. ի՞նչ պետք է անել, որպեսզի չլինի առճակատում: Եվ ահա իմ պատասխանը. կարևոր է, որ կառավարությունները, պետական գործիչները մինչև վերջ գիտակցեն, որ մոլորակի բոլոր ժողովուրդների համար գլխավորը խաղաղությունն է, վստահությունը վաղվա օրվա հանդեպ: Եվ, իհարկե, է՛լ ավելի կարևոր է, որ դա մարմնավորվի պետությունների գործնական քաղաքականության մեջ: Հարկավոր է չափավորել սպառազինությունների մրցավազքի սաստկացման վտանգավոր մոլուցքը: Հարկավոր է թուլացնել լարվածության շիկացումը, մարել ճգնաժամային իրավիճակների վտանգավոր օջախները, հրաժարվել սպառազինությունների անիմաստ մրցավազքի քաղաքականու-

թյունից, վերստին կանգնել պետությունների նորմալ հարաբերությունների, փոխադարձ հարգանքի, միմյանց օրինական շահերը հասկանալու և հաշվի առնելու ուղու վրա: Հարկավոր է լրջորեն, գործնականորեն զբաղվել սպառազինությունների սահմանափակման և կրճատման հարցերով: Այս ամենն էլ միասին վերցված կօգնի վերացնելու միջուկային պատերազմի սպառնալիքը:

**Հարց.** Ինչպիսի՞ կոնկրետ քայլեր եք Դուք առաջարկում ձեռնարկել երկու գերտերությունների առճակատման ուժեղացման սպառնալիքը խոչընդոտելու համար:

**Պատասխան.** Կարծում եմ, դուք նկատի ունեք ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը, թեև «գերտերություններ» տերմինը հարմար չենք համարում:

Իհարկե, մեր երկու պետությունների ջանքերի գործադրման առաջնակարգ բնագավառը, հաշվի առնելով նրանց կշիռը միջազգային ասպարեզում զինաթափման պրոբլեմն է: Եվրոպայում միջուկային սպառազինությունների սահմանափակման և կրճատման բանակցություններից բացի, ինչը ես արդեն հիշատակեցի, ամբողջ հասակով մեկ օրակարգի հարց է դառնում, ու, հավանաբար, ամերիկյան կողմը նույնպես դա տեսնում է, ստրատեգիական սպառազինությունների՝ որպես առավել հզոր ու վտանգավոր սպառազինությունների սահմանափակման և կրճատման խնդիրը: Մենք պատրաստ ենք բանակցությունների վերսկսմանը: Այստեղ խոսքը պատկանում է Վաշինգտոնին:

Կարելի կլիներ հիշատակել այդ բնագավառի մի շարք այլ շատ կարևոր պրոբլեմներ ևս, ինչպիսիք են քիմիական զենքի արգելումը, միջուկային զենքի փորձարկումների ընդհանուր ու լրիվ արգելումը: Դրանց լուծման գործում տեղաշարժը ռեալ է ամենից առաջ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ակտիվ դերի և բավարար փոխըմբռնման դեպքում:

Այնուհետև բուն երկկողմ սովետա-ամերիկյան հարաբերությունների մասին: Այստեղ վերջին ժամանակներս հաճախ են երևան գալիս արհեստական խոչընդոտներ դրանց նորմալ, փոխշահավետ զարգացման համար՝ լինի դա առևտրում, մշակութային, գիտական և այլ ոլորտներում: Մեր երկրների ժողովուրդների համար շատ ավելի լավ կլիներ, եթե նման խոչընդոտները վերացվեին և առհասարակ այլևս չառաջանային:

Սա, այսպես ասած, նվազագույնն է: Բայց այն նվազագույնը, որը կարող է ակիզբ դառնալ մեր երկրների միջև վստահության վերածնման և ավելի լավ հարաբերությունների տանող ճանապարհին, մի բան, որը հաստատապես կանդրադառնար նաև աշխարհի ընդհանուր մթնոլորտի առողջացման վրա: Չեմ կարծում, թե ամերիկացիները դրանով ավելի քիչ են շահագրգռված, քան մենք:

**Հարց.** Դուք բացահայտորեն պաշտպանում եք Արևմտյան Գերմանիայի դերը՝ որպես Մոսկվայի և Վաշինգտոնի միջնորդի: Դուք գտնո՞ւմ եք, արդյոք, որ այդ դերն ապագայում կարող է մեծանալ:

**Պատասխան.** Մենք, բնականաբար, ողջունում ենք ԳՖՀ-ի քաղաքականության այն միտումները, որոնք նպաստում են լարվածության թուլացմանը և խաղաղ համագործակցությանը, ինչի մասին մանավորապես խոսվեց վերջերս Բոնն կատարած իմ այցի ընթացքում: Սովետական Միությունը դրականորեն է վերաբերվում նաև ամեն մի այլ երկրի՝ խոշոր, միջակ կամ փոքր երկրի ջանքերին, եթե այդ ջանքերը նպատակամղված են քաղաքական կլիմայի բարելավմանը, ռազմական դիմակայության մակարդակի նվազեցմանը: Մենք ինքներս շատ բան ենք անում և պատրաստ ենք անելու այդ ուղղությամբ: Եվ կասկած չպիտի լինի, որ ԱՄՆ-ի կամ որևէ այլ պետության համապատասխան գործողությունները ըմբռնում, արձագանք կգտնեն մեզ մոտ:

Ազնվորեն մեզ պարզված ոչ ոքի ձեռքը օդում կախված չի մնա:

Քանի որ իմ հարցազրույցը զուգադիպում է նոր տարվա՝ 1982 թվականի նախօրեին, կցանկանայի բոլոր ամերիկացիներին մաղթել բարօրություն, անձնական երջանկություն և, իհարկե, խաղաղություն և կրկին անգամ խաղաղություն:

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Դեկտեմբերի 2-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թվականի նոյեմբերյան պլենումի արդյունքների և պլենումի որոշումներից ու պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Պլենումը լսեց Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, Հայկական ՍՍՀ պետպլանի նախագահ ընկ. **Հ. Ս. Սաղոյանի** զեկուցումը «Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների պետական պլանի մասին և Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման 1982 թվականի պետական պլանի մասին» և Հայկական ՍՍՀ ֆինանսների մինիստր ընկ. **Ջ. Ա. Ջանոյանի** զեկուցումը «Հայկական ՍՍՀ 1982 թվականի պետական բյուջեի մասին և Հայկական ՍՍՀ 1980 թվականի պետական բյուջեի կատարման մասին»:

Զեկուցումների շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Լ. Ն. Ներսիսյանը,** Լենինականի Մայիսյան ապստամբության անվան բամբակագործվածքային արտադրական միավորման ջուլհակուհի ընկ. **Թ. Մ. Սարգսյանը,** ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Հ. Ա. Օհանյանը,** Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստր ընկ. **Հ. Վ. Թարջումանյանը,** Երևանի «Էլեկտրասարք» արտադրական միավորման բրիգադավար ընկ. **Է. Թ. Հարությունյանը,** ՀԿԿ Աշտարակի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Հ. Խաչատրյանը,** Հայկական ՍՍՀ գյուղական շինարարության մինիստր ընկ. **Գ. Ա. Թադևոսյանը,** Նաիրիի շրջանի Մրգաշենի սովխոզի բրիգադավար ընկ. **Չ. Բ. Մայիլյանը,** ՀԿԿ Եղեգնաձորի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Ս. Հայրապետյանը,** «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. **Բ. Հ. Թումասյանը:**

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը քննարկված հարցերի վերաբերյալ ընդունեց համապատասխան որոշումներ:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ավարտեց աշխատանքը:

## ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները գործողության մեջ

# ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐՆԵՐԸ

**Վ. Ֆ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀԱՄԽ-ի քարտուղար

*Կուսակցության XXVI համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծրագրի իրականացման գործում անգնահատելի է երկրի ամենամասսայական հասարակական կազմակերպության՝ սովետական արհմիությունների դերը: Եվ միանգամայն բնական հասկանալի է այն մեծ ուշադրությունը, որ համագումարը նվիրեց արհմիություններին: «Կուսակցությունը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— արհմիությունները դիտում է որպես իր հուսալի հենարանը մասսաների շրջանում, որպես դեմոկրատիան զարգացնելու, աշխատավորներին կոմունիզմի կառուցման մեջ ներգրավելու հզոր միջոց» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութեր, էջ 109): Սովետական արհմիությունները, արտահայտելով երկրի միլիոնավոր աշխատավորների կամքն ու խոհերը, լիովին պաշտպանում են կոմունիստական կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությունը, ձգտում են հայրենանվեր աշխատանքով ապահովել կուսակցության կանխագծումների իրագործումը, տասնմեկերորդ հնգամյակի բնագծերի նվաճումը:*

*ՍՍՀՄ նոր սահմանադրության ընդունումից հետո է՛լ ավելի բարձրացավ հասարակական կազմակերպությունների, այդ թվում արհմիությունների դերը սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման բնագավառում: Ներկայումս զգալիորեն աճել է արհմիությունների ազդեցությունը սովետական ժողովրդի քաղաքական, տնտեսական, սոցիալ-կուլտուրական կյանքի բոլոր կողմերի վրա:*

*Արհմիութենական կազմակերպությունների իրավունքները մեծ են, լիազորությունները՝ լայն, խնդիրները՝ լուրջ և բարդ: Նրանք մշտապես հանդես են գալիս որպես աշխատավորների շահերի պաշտպաններ, ակտիվորեն մասնակցում են տնտեսական, սոցիալական և կուլտուրական շինարարության պլանների կազմմանն ու առաջադրված խնդիրների լուծմանը, ամեն ինչ անում են սոցիալիստական մրցության զարգացման, գյուտարարական և ռացիոնալիզատորական շարժման վերելքի համար:*

*Սովետական Հայաստանի էկոնոմիկան լավ ելագիծ է վերցրել տասնմեկերորդ հնգամյակում: Շարունակելով հարվածային հերթափոխը՝ արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատողները նոր, վառ էջեր են գրում սոցիալիստական մրցության տարեգրության մեջ: Արդյունաբերական արտադրանքի իրացման առաջին կիսամյակի պլանը կատարվել է 103,5 տոկոսով, նախատեսվածից ավելի է թողարկվել 63,5 միլիոն ռուբլու արտադրանք:*

*Հանրապետության ընդհանուր առաջընթացն ապահովվում է աշխատավորական կոլեկտիվների այն արդյունավետ պայքարով, որ նրանք կուսկազմակերպությունների ղեկավարությամբ մղում են ՍՄԿԿ XXVI համագումարի և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի որոշումների կենսագործման համար: Զգալի բերված ակնառու նվաճումների մեջ իրենց ծանրակշիռ ավանդն ունեն հանրապետության արհեստակցական միությունները: ՀԱՄԽ-ը, հանրապետական ճյուղային, շրջանային ու տեղական կոմիտեները, արհմիութենական սկզբնական կազմակերպություններն ամենուրեք ակտիվ գործունեություն են ծավալում սոցիալիստական մրցության գործարարության ու արդյունավետության բարձրացման, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացման համար: Ստեղծարար մրցությանը, որը համաժողովրդական բնույթ ստացավ տասնմեկերորդ հնգամյակի առաջին իսկ օրերից, նոր թափ հաղորդվեց ՍՄԿԿ XXVI համագումարից հետո: Ինչպես նախահամագումարյան, այնպես էլ հետհամագումարյան շրջանում սոցիալիստական մրցությունում ծնվեցին բազմաթիվ հայրենասիրական նոր նախաձեռնություններ, որոնք լայն տարածում գտան ձեռնարկություններում ու տնտեսություններում: Ավելացավ առաջավոր կոլեկտիվների թիվը: Աշխատանքային այդ վերելքը տասներորդ հնգամյակում տեղի ունեցած արմատական տեղաշարժերի օրգանական շարունակությունն է: Մեր հանրապետությունում մրցության մեջ այժմ ընդգրկված են ավելի քան մեկ միլիոն բանվորներ, կոլտնտեսականներ, ծառայողներ: Լայն ծավալ է ստացել մրցության բարձրագույն ձևի՝ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը: Տարեցտարի խտանում են կոմունիստական կոչմանն արժանանալու համար պայքարողների շարքերը: Ավելի քան 7.500 բրիգադ, 2.700 արտադրամաս ու տեղամաս, 99 ձեռնարկություն ու կազմակերպություն և 197 հազար մարդ արդեն կրում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի ու հարվածայինի բարձր կոչումը:*

*Կարելի է թվարկել բազմաթիվ օրինակներ, ցույց տալու համար, թե արհմիութենական կոմիտեներն ինչպես են զբաղվում սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման, մրցության կազմակերպման ու ծավալման և իրենց վերապահված այլևայլ հարցերով: Այս առումով բնորոշ է Երևանի ալյումինի գործարանի օրինակը: Այստեղ արհմիութենական կազմակերպությունը, ադմինիստրացիայի հետ միասին, կուսկազմակերպության ղեկավարությամբ որոշակի փորձ է կուտակել սոցիալիստական մրցության և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման ծավալման և կատարելագործման բնագավառում: Բանվորների 85 տոկոսը պայքարում է կոմունիստականի բարձր կոչման համար: Գործարկոմը և դիրեկցիան, մրցության կազմակերպման հիմքում դնելով լենինյան սկզբունքները, մշակել, հաստատել և գործողության մեջ են դրել սոցիալիստական մրցության նոր պայմաններ, սահմանել մրցության արդյունքների ամփոփման կարգն ու ժամկետները, բարոյական ու նյութական խրախուսման միջոցները և այլն:*

*Գործարանի և արտադրամասերի ղեկավարները, արհմիութենական կոմիտեները, վարպետները և արհմիութենական խմբակների կազմակերպիչները օպերատիվ հսկողություն են սահմանել անձնական առաջադրանքների, սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի վրա: Սոցիալիստական մրցության մասսայականացման, առաջավոր փորձի տարածման նպատակով լայնորեն օգտագործվում են ռադիոհանգույցը և պատի թերթերը, տեղական ռադիոհանգույցը և այլն: Մրցությունում հաղթած արտադրամասերի կոլեկտիվները պարգևատրվում են փոխանցիկ կարմիր դրոշներով ու դրամական մրցանակներով: «Լավագույն բանվոր», «լավագույն բրիգադ», «լավագույն տեղամաս» մրցույթների հաղթողներին տրվում են հուշադրոշներ, պատվոգրեր և դրամական պարգևներ: Արտադրամասերի, տեղամասերի, բրիգադների սոցմրցության արդյունքներն ամփոփվում են յուրաքանչյուր ամիսը մեկ, իսկ չորս հիմնական արտադրամասերինը՝ ամեն օր, մրցանակային տեղերը շնորհվում են յուրաքանչյուր ամիս: Գործարանում տարեցտարի ավելանում են մրցության առաջավորներին խրախուսելու համար հատկացվող գումարները: Այսպես, իններորդ հնգամյակի տարիներին այդ նպատակով ծախսվել էր ընդամենը 50 հազար ռուբլի, իսկ տասներորդ հնգամյակում՝ 200 հազար:*

*Սոցիալիստական պարտավորությունների կատարմանը մեծ չափով նը-*

# ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՓՈՐՁՎԱԾ ՄԻՋՈՑԸ

ՅՈՒ. Ս. ՍԱՀԱԿՅԱՆ
ՀԿԿ Սովետական շրջկոմի ընդհանուր բաժնի վարիչ

ԿՈՒՍԲՅՈՒՐՈՅԻ ՔԱՐՏՈՒՂԱՐԻ մոտ զրույցը երկար չտևեց, բայց բրիգադավար Սոնիկ Մացակյանը չէր կարողանում կտրվել մտքերից, իրեն համակած խոհերից։ Հանձնարարությունն ուղղակիորեն աղերսվում էր ո՛չ միայն արտադրության, այլև մարդու բախտի հետ։

...Առաջին հայացքից ամեն ինչ պարզ էր թվում. «Հայարդկապ» արտադրական միավորման գլխավորող գործարանում նույն ընտանիքից աշխատում են երեքը. Դմիտրի Ավագյանը ավտոհավաքակայանում փականագործ է, կինը՝ Անահիտը, և նրանց որդին՝ Գևորգը, հավաքման № 1 արտադրամասում են։ Բայց ահա որդին այնպես չի դրսևորում իրեն, ինչպես պետք է. հաճախակի բացակայում է գործից, ընկերակցում է կասկածելի տղաների հետ, անտեղի վեճերի առիթ է տալիս, արտադրանքի որակն էլ, բնականաբար, այն չէ։

Բրիգադավար Սոնիկ Մացակյանը վաղուց է նկատել երիտասարդի հետ կատարվող փոփոխությունը. հանդիմանել է նրան, բացատրել, որ ցածր կարգապահությունը, վերջին հաշվով, ազդում է աշխատանքի, շրջապատի վրա։ Բայց էական փոփոխություն չի եղել։ Անհրաժեշտ էր նրան փոխադրել մեկ այլ արտադրամաս, նոր միջավայր։

— Իսկ դու փորձիր թափանցել տղայի ներաշխարհը,— ասաց կուսբյուրոյի քարտուղար Վ. Հայկյանը,— գուցե, իրոք, ինչ-որ բան խանգարում է նրան։ Աշխատիր օգնել, միայն թե անհրաժեշտ է նրբանկատ ու համբերատար լինել։

Իսկ վերջում քարտուղարն ավելացրել էր.

— Խնդրում եմ նկատի ունենալ, որ դա կուսակցական հանձնարարություն է։

Վերջին նախադասության վրա Սոնիկը մի տեսակ տարակուսանքով էր նայել քարտուղարին, ասել է թե՝ մի՞թե այդպիսին է լինում կուսակցական հանձնարարությունը, և, բացի այդ, ինչո՞ւ հատկապես իրեն է տրվում այն։

— Այո՛, ընկեր Մացակյան,— հանդիստ շարունակել էր քարտուղարը,— համարեք, որ դուք ստանում եք կուսակցական հանձնարարություն։

Այս խոսքերի հետ բրիգադավարը զգացել էր նաև հանձնարարության կարևորությունը, ինչպես նաև հանձնարարողի հուսադրող ու խրախուսող տոնը։

Հանձնարարության կատարումը շատ ժամանակ չպահանջեց։ Ավագյանների հետ հանդիպումներն ու ընկերական անկեղծ զրույցները շատ բան պարզեցին այդ ընտանիքում ստեղծված մթնոլորտի մասին, որը կարող էր ազդել երիտասարդի վարքագծի վրա։ Իսկ երբ պատճառները հայտնի են, արդյունավետ պայքարն արդեն դժվար չէ։

Անցել էր որոշ ժամանակ, արդեն կարգավորվել էր ընտանեկան այն դժվարին վիճակը, որ մի ժամանակ կար Ավագյանների մոտ։ Հավաքման արտադրամասի մարդիկ հրաժեշտի երեկոյի էին հավաքվել՝ Գևորգի բանակ մեկնելու կապակցությամբ։ Կուսակցության անդամության թեկնածու Սոնիկ Մացակյանը, մտորելով հարազատ բրիգադի մարդկանց մասին, այդ երեկո կարծես նոր միայն ստացավ ավելի վաղ իրեն զբաղեցնող հարցի պատասխանն ու տրված հանձնարարության իմաստը. բրիգադավարը պետք է լավ գիտենա իր մարդկանց, առանց դրա դժվար կլինի ղեկավարել բրիգադը։ Ահա թե ինչու հատկապես իրեն է տրվել կուսակցական այդ հանձնարարությունը։

«Հայարդկապ» արտադրական միավորման սկզբնական կուսկազմակերպության բյուրոն ունի կոմունիստների հետ տարվող անհատական աշխատանքի, կուսակցական հանձնարարությունների միջոցով նրանց ակտիվությունը բարձրացնելու լավ ավանդույթներ։ Եվ ամենևին էլ պատահական չէ, որ ավելի քան 160 կոմունիստներից յուրաքանչյուրն ունի մշտական և ժամանակավոր հանձնարարություն։ Ընդ որում կուսբյուրոն տրված հանձնարարությունները գրանցում է համապատասխան քարտերում և պարբերաբար ստուգում դրանց կատարումը։ Այդ ամենի շնորհիվ կոմունիստները լավ դպրոց են անցնում, այդ նույն պահանջկոտությամբ ու հետևողականությամբ նրանք վերաբերվում են միմյանց նկատմամբ, ամրապնդվում է աշխատանքային ու կատարողական կարգապահությունը, բարձրանում է կուսկազմակերպության և ողջ կոլեկտիվի մարտունակությունը։

Կուսբյուրոն հոգ է տանում, որպեսզի ժամանակավոր հանձնարարությունների կատարման ընթացքում անհրաժեշտ փորձ ձեռք բերելուց հետո կոմունիստն առավել պատասխանատվությամբ կատարի մշտական հանձնարարությունները։ Ընդ որում հանձնարարությունները տալիս հաշվի են առնվում տվյալ անձնավորության հնարավորությունները, ծանրաբեռնվածության աստիճանը, կարողությունը, նախասիրությունը և այլ հանգամանքներ։

Առանձնակի ուշադրություն է նվիրվում երիտասարդ կոմունիստների դաստիարակությանը. որպես կանոն նրանք ստանում են մշտական հանձնարարություններ, իսկ անհրաժեշտության դեպքում նաև՝ ժամանակավոր։ Ընդ որում հանձնարարությունների մեծ մասը վերաբերում է արտադրության առջև ծառացած խնդիրների կատարմանը։

Կուսակցության անդամության թեկնածու, ինժեներ Արմեն Այվազյանին բյուրոն հանձնարարեց կազմակերպել երիտասարդ մասնագետների խորհուրդ։ Նրա առջև խնդիր դրվեց՝ ուսումնասիրել Մոսկվայից ստացված գծագրերը և պարզել փորձնական արտադրամասում դրանց իրականացման հնարավորությունը։ Այս հանձնարարությունը փաստորեն դարձավ բանվորական աշխատանքին ինժեներական օգնություն կազմակերպելու արդյունավետ ձև։ Միշտ չէ, որ ստացված գծագրերով կարելի է միանգամից սկսել հանգույցների արտադրությունը, հաճախ ինժեներական գծագրերն իրականացնելու համար հարկ է լինում բանվորական ուղղումներ կատարել դրանցում։ Խորհուրդը նախապես ստուգում է գծագրերը, պատրաստում մեկ-երկու դրոշմիչներ, և երբ համոզվում է, որ գծագրերը պատրաստ են արտադրության համար, թույլ է տալիս սկսել զանգվածային արտադրությունը։ Արտադրամասային կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար, կարգավորող բանվորուհի Ազգուշ Եղիազարյանը նույնպես ակտիվորեն մասնակցում է այս հանձնարարության կատարմանը։ Խորհուրդն արդեն հասել է ակնհայտ հաջողության։ Նրանց պատրաստած երկու սարքերն արժանացել են հատուկ հանձնաժողովի «գերազանց» գնահատականին, արտադրանքը ներկայացվել է պետական որականիշի։ Ձեռնարկությունում պետական որականիշով թողարկվող արտադրանքն այժմ կազմում է 70 տոկոս, և այդ գործում փոքր չէ կուսբյուրոյի դերը. այն կուսակցական հանձնարարությունների միջոցով կոմունիստների ուժերը նպատակամղում է արտադրանքի որակի և աշխատանքի արդյունավետության բարձրացմանը։

Անցյալ տարի կուսակցության մեջ ընդունվեց միավորման գլխավոր մեխանիկ Դավիթ Մուրադյանը։ Թեկնածուական շրջանում կուսկազմակերպության բյուրոն նրան հանձնարարել էր նորոգել Նաիրիի շրջանի Պռոշյանի անվան ենթաշեֆ սովխոզի գայլիկոնող և խառատային հաստոցները։ Երիտասարդ մասնագետը հանձնարարությունը կատարել էր բարձր որակով և ժամանակին դրանք

տրամադրել գյուղի մարդկանց։ Իսկ գարնանը նա հողի աշխատավորներին տեղում գործնական օգնություն է ցույց տվել հաստոցներն արդյունավետ օգտագործելու նպատակով։

Կուսբյուրոն պարբերաբար իր նիստերում և ժողովներում քննարկում է կոմունիստների հաղորդումները կուսակցական հանձնարարությունները կատարելու ընթացքի մասին։ Եթե հանձնարարությունը կատարված է, տրվում է նորը, եթե կատարումը ձգձգվում է կամ այդ գործում անփութություն ու անհետևողականություն է նկատվում, ապա միջոցներ են ձեռնարկվում և սահմանվում կոնկրետ ժամկետներ։ Հանձնարարության կատարման վիճակին համապատասխան ընդունվում է կոնկրետ որոշում։ Այդպիսի հաղորդումներ քննարկելը, ինչ խոսք, բարձրացնում է հանձնարարված գործի նկատմամբ մարդկանց պատասխանատվությունը, նպաստում նրանց դաստիարակությանը։

Կուսակցության Սովետական շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները առանձնակի ուշադրություն են նվիրում կոմունիստների հետ տարվող անհատական աշխատանքի բարելավմանն ու կատարելագործմանը, հոգ են տանում, որպեսզի կոմունիստները ստանան կուսակցական մշտական հանձնարարություն։ Որքան մեծ է այդպիսի հանձնարարություններ ունեցողների թիվը, այնքան բազմազան ու հետաքրքրական բնույթ են կրում պրակտիկ աշխատանքն ու կազմակերպվող միջոցառումները։

Ինչպես մշտական, այնպես էլ ժամանակավոր հանձնարարություն ստանալով՝ կոմունիստներն իրենց հերթին կազմակերպում են առաջադրանքի կատարումը. ընտրում են մարդիկ, ստեղծում անհրաժեշտ պայմաններ, որոշում դեպի նպատակը տանող ուղիները։ Հենց այդպիսի աշխատանքի կատարման պրոցեսում կուսկազմակերպությունը ձևավորում, աճեցնում և կոփում է կոմունիստին, նախապատրաստում նրան ավելի պատասխանատու հանձնարարությունների կատարման։

Կոմունիստը հասարակական հանձնարարություններ է ստանձնում նաև կոմերիտական, արհմիութենական, սովետական և հասարակական մյուս կազմակերպություններից։ Մեծ թվով կոմունիստներ են աշխատում հատկապես կոմերիտական կազմակերպություններում. շրջանի 181 կոմերիտական կազմակերպության քարտուղարներից 92-ը կուսակցության անդամներ են։ Կուսակցական կորիզի առկայությունն ակնհայտորեն բարձրացնում է կոմերիտական աշխատանքի մակարդակը։

Կուսակցական հանձնարարությունների առումով ուսանելի փորձ է կուտակել նաև «Ալմաստ» գործարանի սկզբնական կուսկազմակերպությունը։ Այստեղ կուսբյուրոն, սկսելով փոքրից, երիտասարդ աշխատողներին աստիճանաբար հնարավորություն է տալիս կատարելու մշտական կամ համեմատաբար տևական և առավել պատասխանատու հանձնարարություններ։ Մեկ ու կես տասնամյակ է, որ այս գործարանում է աշխատում կոմունիստ բանվորուհի Ջեմֆիրա Խաչատրյանը։ Եղել է № 2 արտադրամասի կոմերիտական կազմակերպության բյուրոյի անդամ, քարտուղար, կատարել է կուսկազմակերպության բազմաթիվ հանձնարարությունները։ ՍՄԿԿ շարքերն ընդունվելուց հետո հաստատվել է որպես ագիտատոր։ Կուսակցական հանձնարարությունները մեծապես նպաստել են երիտասարդ բանվորուհու ակտիվության բարձրացմանը, գաղափարապես ու հոգեպես հարստացրել նրան։ Ջեմֆիրան գործարանի կուսբյուրոյի անդամ է, նա ընտրվել է ՀԿԿ Սովետական շրջկոմի և հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեի կազմում, երկրորդ անգամ ընտրվել է հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ։

Հաճախ հարցնում են, թե ինչպես է Ջեմֆիրան հասցնում հասարակական հանձնարարությունները համատեղել բարձր արտադրողական աշխատանքի, ընտանեկան պարտականությունների հետ։ Եվ, իրոք, դժվարությունները քիչ չեն։ Հասնելով նման մակարդակի, մեկ ուրիշը թերևս կաշխատեր խուսափել «փոքր» հանձնարարություններից։ Սակայն նրա համար այդպիսի հասկացություն գոյություն չունի։ Փոքր թե մեծ՝ հանձնարարությունը պետք է կատարվի։ Նա գտնում է, որ առանց ակտիվ հասարակական կյանքի մարդու հոգեկան աշխարհը մի տեսակ կաղքատանա, կկորցնի լիարժեքությունը։



Գործարանում լավ են ճանաչում բանվորուհի Մարիետա Սահակյանին։ Երեկվա կոմերիտական ակտիվիստուհին աճել է կոլեկտիվի աչքի առաջ, դարձել ձեռնարկության ճանաչված մարդկանցից մեկը. Այսօր նա Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի անդամ է։ Գործարանի կուսբյուրոն հոգ է տանում, որպեսզի կազմակերպության 185 անդամ-թեկնածուներն ունենան մշտական և ժամանակավոր հանձնարարություններ։ Ավելին, նման հանձնարարություններ ունեցողների շրջանակը հետզհետե մեծանում է՝ ի հաշիվ անկուսակցականների։ Երիտասարդությունն ակտիվորեն մասնակցում է հատկապես ժողովրդական դրուժինայի աշխատանքին։

Կուսբյուրոն տարիների փորձից եկել է այն համոզման, որ տարբեր, առանձնապես ծավալուն միջոցառումների հաջողությունը շատ բանով պայմանավորված է նրանով, թե ովքեր են նախապատրաստում տվյալ միջոցառումը, ինչ թարմություն կբերեն նրանք, ինչը կդառնա օգտակար և ուսանելի։ «Ալմաստ» գործարանում անցկացվեց մի միջոցառում, որն օգտակար էր ոչ միայն այդ ձեռնարկության, այլև քաղաքի մյուս արտադրական կոլեկտիվների համար։ Գործարանի կուսակցական, հասարակական կազմակերպությունների, քաղաքային ժողկրթբաժնի նախաձեռնությամբ ուսումնասիրվեց այն հարցը, թե ձեռնարկության աշխատողների երեխաները ինչպես են սովորում և դաստիարակվում քաղաքի դպրոցներում։ Կուսակցական հանձնարարություն տրվեց 34 մարդու։ Մոտավորապես 50 դպրոցներում նրանք մասնագետների հետ միասին ուսումնասիրեցին իրենց կոլեկտիվի անդամների երեխաների առաջադիմության վիճակը։ Ուսումնասիրության արդյունքները հանգամանորեն քննարկվեցին ձեռնարկությունում, կոնկրետ միջոցառումներ մշակվեցին այն ընտանիքներին օգնելու նպատակով, որտեղ անհրաժեշտ բարձրության վրա չի գտնվում երեխաների դաստիարակության գործը։

«Հայպետտրանս» նախագծային ինստիտուտն իր կառուցվածքով, խնդիրների բազմազանությամբ յուրահատուկ կազմակերպություն է։ Կոմունիստների և կոլեկտիվի անդամների մի մասը գտնվում է կենտրոնից շատ հեռու. արշավախմբերից մեկը նախագծային աշխատանքներ է կատարում Վարդենիսում և Ջերմուկում, մյուսները Իջևանում ու Հրազդանում են, Արագածի բարձրադիր կայանում և այլուր։ Բայց կուսակցական աշխատանքը, հանձնարարությունը շարունակվում է նաև այնտեղ։ Կոմունիստներ Շավարշ Մարությանը, Զորիկ Վասիլյանը, Մորիս Առաքելյանը քաղաքական մշտական աշխատանք են կատարում և երկու ամիսը մեկ կուսբյուրոյին հաշիվ տալիս կատարվածի մասին։ Ինչպես հիմնական աշխատանքի, այնպես էլ կուսակցական հանձնարարությունների կատարման արդյունքների քննարկումը այստեղ ընդունված գործելակերպ է։ Հուլիս ամսին, օրինակ, ինստիտուտի կուսբյուրոն քննարկեց Իջևան—Հրազդան երկաթգծի նախագծման գլխավոր ինժեների տեղակալ, արտադրամասային կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար Բորիս Պիրզոյանի հաշվետվությունը։ Լավ են գործում արդյունավետության և որակի, աշխատանքի գիտական կազմակերպման հանձնաժողովները, նրանք պլանավորված կերպով զբաղվում են առաջավոր տեխնոլոգիայի, բարձր արտադրողական մեքենաների ներդրման, հումքի և վառելանյութի խնայողության հարցերով։

Չնայած այս ամենին, դեռևս շատ անելիքներ կան կուսակցական հանձնարարության ընձեռած հնարավորություններն օգտագործելու, բոլոր կոմունիստներին այդ աշխատանքի մեջ ընդգրկելու գործում։

Առանձին կուսկազմակերպություններում (տեխնոլոգիական սարքավորումների և «Էկրան» արտադրամիավորումներ, քանդակագործական, գեղարվեստական ապակու կոմբինատներ, պտուղբանջարանի միավորում) ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների մի մասն իրականում դուրս է մնում ներգործության այդ անհրաժեշտ ոլորտից։ Մի շարք այլ կազմակերպություններում առավել ակտիվ կոմունիստները ծանրաբեռնվում են կուսակցական բազմաթիվ հանձնարարություններով, իսկ նկատելի թվով կոմունիստներ կամ քիչ հանձնարարություններ են ստանում, կամ էլ բոլորովին չեն ստանում։ Աշխատանքի այսպիսի եղանակը, բնականաբար, հանգեցնում է այն բանին, որ

ումանք անհարկի ծանրաբեռնվում են, իսկ մյուսները, ընդհակառակն, հետզհետե անտարբեր են դառնում հանձնարարությունների նկատմամբ։

Կուսկազմակերպությունների բյուրոները, նրանց քարտուղարները հաճախ գերադասում են ընտրել հեշտ ուղին, այսինքն՝ հանձնարարություն տալ նրանց, ովքեր բարեխղճորեն, առանց բացատրությունների սպասելու կգնան ու կկատարեն գործը։ Իսկ մյուսներին, ում հարկ կլինի բացատրել, հուշել հնարավոր տարբերակներ, հետևել, թե ինչպես են կատարում հանձնարարությունը, դուրս են թողնում այդ ոլորտից։ Նման մոտեցումը, հասկանալի է, ոչինչ ընդհանուր չունի բոլոր կոմունիստներին կուսակցական ակտիվ գործունեության մեջ ներգրավելու պահանջի հետ։

Մարդկանց ունակությունները վատ իմանալը, եղած ուժերը ոչ արդյունավետ օգտագործելը հանգեցրել են նրան, որ շատ կազմակերպություններում (շամպայն գինիների գործարան, № 160 շինմոնտաժային վարչություն, 2976 ավտոշարասյուն և այլն) ժողովների նախապատրաստման համար հանձնաժողովներ ընտրելիս հաճախ հաշվի են առնվում ոչ թե մարդկանց մասնագիտական հմտությունն ու կարողությունը, այլ միայն նրանց բարեխղճությունն ու պատրաստակամությունը։ Կուսակցական հանձնարարությունների նկատմամբ նման մոտեցումը շատ է վնասում գործին, հարցերը քննարկելիս չեն բացահայտվում թերությունների ու թերացումների պատճառները։ Նման գործելակերպը, ինչ խոսք, չի կարող նպաստել կոմունիստների ակտիվության բարձրացմանն ու նախաձեռնության զարգացմանը։

Կուսակցական հանձնարարությունը կոմունիստի, մարդու դաստիարակության իրոք փորձված միջոց է և այն պետք է օգտագործել խելացիորեն ու ստեղծագործաբար։ Շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների փորձը վկայում է, որ կոմունիստների ուժերի ճիշտ հաշվառման, այս կամ այն առաջադրանքի կատարման համար մարդկանց ճիշտ ընտրության դեպքում կուսակցական հանձնարարությունն իրոք դառնում է կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման զորեղ ազդակ։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ԴՐՍԵՎՈՐՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՈԼՈՐՏ

ՄԱՐԻԱՄ ՄԱՐԳԱՐՅԱՆ

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ մեծ ուշադրություն նվիրեց սոցիալիստական ապրելակերպի զարգացմանն ու կատարելագործմանը։ Ամփոփելով տասներորդ հնգամյակում սովետական հասարակության տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական արդյունքները, Լ. Ի. Բրեժնևը նշեց. «...էկոնոմիկայի կայուն վերելքի հիման վրա շարունակում էին կատարելագործվել հասարակական հարաբերությունների ամբողջ սիստեմը, մեր սոցիալիստական ապրելակերպը։ Ձեռք բերվածը տասնյակ միլիոնավոր մարդկանց անձնվեր աշխատանքի, կուսակցական կազմակերպությունների, ժողովրդական դեպուտատների սովետների, արհմիությունների և կոմերիտմիության ակտիվ աշխատանքի, սոցիալիստական մրցության թափի արդյունքն է» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 58)։

Սոցիալիստական ապրելակերպը անհատի, սոցիալական խմբի կամ ամբողջ սոցիալիստական հասարակության ողջ կենսագործունեության եղանակն է ու նրա բնույթը՝ պայմանավորված, ամենից առաջ, սոցիալիստական հասարակական-տնտեսական կարգով, ինչպես նաև նրա արժույթային դիրքորոշումներով։ Դա քաղաքակրթության պատմության մեջ նոր ապրելակերպ է, որը հիմնված է կոլեկտիվիզմի, փոխօգնության, մարդասիրության, աշխատանքի մարդու, հասարակության յուրաքանչյուր անդամի նկատմամբ հարգանքի վրա։ Լինելով սոցիալիզմի էությանն ու իդեալներին համապատասխանող կենսագործունեության ձևերի մի ամբողջական համակարգ, այն իր էությամբ միտում է նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման խնդրի լուծմանը՝ հօգուտ հասարակության և բոլոր աշխատավորների, նրանց բարեկեցության բարձրացման և այնպիսի պայմանների ստեղծման, որոնց առկայությամբ անհատի համակողմանի զարգացումը դառնում է հասարակական առաջընթացի հիմնական նպատակը։

Սոցիալիստական ապրելակերպի դրսևորման գլխավոր ոլորտը ողջ սոցիալիստական հասարակության աշխատանքային միջավայրն է։

Աշխատանքը, որպես մարդկային գոյության կարևորագույն ձև, վերաբերում է ապրելակերպի ցանկացած տեսակին, ըստ որում՝ և՛ որպես մարդկային գործունեության նպատակահարմար ձև, և՛ որպես տվյալ ֆորմացիային հատուկ քաղաքական-տնտեսական կատեգորիա։ «Քաղաքատնտեսական որոշակի կատեգորիա է ոչ թե աշխատանքը,— գրել է Վ. Ի. Լենինը,— այլ աշխատանքի միայն հասարակական ձևը, աշխատանքի հասարակական կառուցվածքը կամ այլ կերպ՝ մարդկանց փոխհարաբերություններն ըստ նրանց մասնակցության հասարակական աշխատանքին» (ԵԼԺ, հ. 7, էջ 56)։

Իր հասարակական ձևով կամ սոցիալ-տնտեսական բնույթով սոցիալիստական աշխատանքը սկզբունքորեն տարբերվում է կապիտալիստական հասարակարգում եղած աշխատանքից։ Կապիտալիզմի օրոք, երբ բանվորը, վաճառելով իր աշխատուժը, բանում է ոչ թե իր, այլ կապիտալիստի համար, աշխատաժամանակը օտարվում է բանվորի բուն կյանքից։

Ի հակադրություն կապիտալիզմի, սոցիալիզմի պայմաններում աշխատանքային գործունեության բնորոշ առանձնահատկությունն այն է, որ տեղի է ունե-

նում «Հարկադրական աշխատանքի մեծ փոխարինումն իր համար կատարվող աշխատանքով, պլանաչափորեն կազմակերպված հսկայական համապետական (որոշ չափով նաև միջազգային, համաշխարհային) մասշտաբի աշխատանքով...» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 35, էջ 230)։

Սոցիալիզմը, հաստատելով արտադրամիջոցների նկատմամբ հանրային սեփականություն, պայմաններ է ստեղծում, որպեսզի ամբողջ հասարակության աշխատանքը դառնա պլանաչափորեն իրականացվող կոլեկտիվ գործունեություն, որտեղ յուրաքանչյուր սոցիալական խումբ աշխատանքի հասարակական բաժանման համաձայն կատարում է հանրորեն անհրաժեշտ ֆունկցիաներ, որտեղ յուրաքանչյուր աշխատավոր աշխատանքի կոլեկտիվ ձևերի մասնակիցն է, իսկ դրանք մարդու մեջ զարգացնում են կոլեկտիվիզմի, փոխադարձ օգնության և համագործակցության զգացում, ընդհանուրի գործի հանդեպ հոգատարության և իր երկրի բախտի, սոցիալիզմի բախտի համար քաղաքացիական բարձր պատասխանատվության զգացում։

Սոցիալիստական ապրելակերպի հիմքը սոցիալիստական աշխատանքն է, իր համար, հասարակության համար կատարվող աշխատանքը, ազատ ու կամավոր, կոլեկտիվ ու պլանաչափ աշխատանքը։

Սոցիալիստական աշխատանքի էությամբ է պայմանավորված նոր, սոցիալիստական ապրելակերպը։ Այն ըմբռնումային նշանակություն ունի։ Աշխատանքային գործունեության մեջ է գոյավորվում անձնական և հասարակական շահերի միասնությունը, դրսևորվում են մարդու ստեղծագործական կարողությունները, կերպավորվում բարոյական արժույթներն ու կոմունիստական գիտակցականությունը։ Հանրօգուտ աշխատանքը զարգացած սոցիալիզմի հասարակության մեջ մարդու գրաված դիրքի գլխավոր, որոշիչ չափանիշն է։ «Բարեխիղճ աշխատանք, բարձր քաղաքացիականություն, գաղափարաբարոյական հատկություններ՝ ահա թե ինչով են որոշվում մարդու դիրքն ու հեղինակությունը մեր երկրում։ Դա է անհատի ստեղծագործական նախաձեռնության, նրա հզոր աճի անսպառ աղբյուրը։ Դա է սոցիալական արդարության և սոցիալական հավասարության ամենահամոզիչ դրսևորումը» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 6, էջ 738)։

Սոցիալիստական ապրելակերպի աշխատանքային բնույթը ձևավորվել է սոցիալիստական հասարակարգի կառուցման պրոցեսում։ ՍՍՀՄ-ում պատմական կարճ ժամանակամիջոցում՝ մինչև 1930 թվականի վերջը, լիովին վերացվեց գործազրկությունը և ապահովվեց աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածությունը։ Բանվորների ու ծառայողների թիվը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ 1980 թվականին կազմել է 112,5 միլիոն, իսկ հանրային տնտեսության մեջ զբաղված կոլտնտեսականներինը՝ 13,5 մլն մարդ։ Մինչդեռ 1980 թվականին զարգացած կապիտալիստական երկրներում գործազուրկների թիվն անցել էր 20 մլն մարդուց, այն դեպքում, երբ 1965 թվականին այդ թիվը 7 միլիոնից պակաս էր (Аргументы и факты, № 7, 1981, стр. 18):

Սոցիալիստական ապրելակերպը բնութագրվում է աշխատանքի համընդհանրությամբ, որը, մի կողմից, ապահովում է սոցիալիստական ապրելակերպի իրոք աշխատանքային բնույթը, մյուս կողմից, հասարակության բոլոր անդամների համար պայմաններ է ստեղծում արտադրության հանրային միջոցների իրավահավասար սեփականատերերի օբյեկտիվ վիճակն իրականացնելու համար։ Աշխատանքի համընդհանուր բնույթը հասարակությանը հնարավորություն է ընձեռում գործադրելու եղած բոլոր աշխատանքային ռեսուրսները, լրիվ ծավալով օգտագործելու աշխատանքը՝ որպես կյանքի հիմնական աղբյուրի, նյութական և հոգևոր հարստության ստեղծման պրոցեսի, մարդկային անհատի կերտողի, հասարակական առաջընթացի գործոնի։

Աշխատանքի բնույթի համընդհանրությունն արտահայտվում է օրենքով հաստատված աշխատանքի ընդհանուր իրավունքում։ Աշխատանքի իրավունքը սոցիալիստական հասարակության կարևորագույն սոցիալական նվաճումներից մեկն է, որը օրենսդրորեն ձևակերպված ու արտացոլված է ՍՄԿԿ սահմանադրությունում։ Այնտեղ ասված է. «ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն աշխատանքի իրավունք, այսինքն երաշխավորված աշխատանք ստանալու իրավունք՝ աշխատանքը վարձատրելով ըստ նրա քանակի ու որակի և պետության կողմից սահմանված նվազագույն չափից ոչ ցածր, ներառյալ նրանց իրավունքը՝ մասնագիտություն, զբաղմունքի և աշխատանքի տեսակ ընտրելու իրենց կոչմանը, ընդունակություններին, պրոֆեսիոնալ պատրաստությանը, կրթությանը համապատասխան և հաշվի առնելով հասարակական պահանջմունքները» (ՍՍՀՄ սահմանադրություն, 1977 թ., էջ 19)։

Աշխատանքի համընդհանրության սկզբունքի մեջ է նրա հասարակական ճանաչումը՝ որպես մարդկային կենսագործունեության կարևորագույն տեսակի։ Սակայն ապրելակերպի սոցիալիստական էությունը աշխատանքի համընդհանրությամբ չի սահմանափակվում։ Սոցիալիստական ապրելակերպում առաջնակարգ նշանակություն ունեն հասարակության անդամների աշխատանքի արժույթային կողմնորոշումը և դրան մղող շարժառիթները։ Աշխատանքի՝ որպես արժույթի նկատմամբ վերաբերմունքը, սովետական մարդու ապրելակերպի առանցքն է, որի շուրջն են կենտրոնանում նրա կենսագործունեության մյուս շատ կողմերը։

Անհատի կենսահաստատումը, նշել է Կ. Մարքսը, ենթադրում է ազատ հանրային, ստեղծագործական աշխատանք։ Սոցիալիստական ապրելակերպը սկսվում է աշխատանքի հասարակական դերի ընդհանուր ճանաչումից, երբ մարդիկ աշխատում են՝ գիտակցելով ընդհանուրի օգտին գործելու անհրաժեշտությունը։ Վ. Ի. Տոլստիխը իրավամբ նկատում է, որ ո՛չ միայն նա, ով չի աշխատում, այլև նա, ով աշխատանքը դիտում է լոկ որպես վաստակի միջոց, իսկ իր աշխատանքը գնահատում ընդհանուր գործի մեջ անհատական ներդրումից անկախ, վարում է ոչ սոցիալիստական ապրելակերպ (В. И. Толстых, Образ жизни. Понятие. Реальность. Проблемы. М., 1975, стр. 129): Նման վերաբերմունքը հետևանք է այն բանի, որ աշխատելու անհրաժեշտությունն ընկալվում է ընդամենը միայն որպես գոյության միջոցներ հայթայթելու պայման, այլ ոչ թե որպես գիտակցված պահանջմունք և անհրաժեշտություն։

Սովետական քաղաքացիներն աշխատում են՝ գիտակցելով աշխատանքի հասարակական դերը։ Այդ դերը չգիտակցելը, չընդունելը վերջին հաշվով հանգեցնում է անհատապաշտական կողմնորոշման, անձնական բարեկեցության ֆետիշացման, իսկ դա, իր հերթին, նսեմացնում, ետին պլան է մղում աշխատանքի՝ որպես սոցիալիստական ապրելակերպի կարևորագույն բաղադրատարրի, դերը։

Աշխատանքի՝ որպես արժույթային կողմնորոշումների սիստեմի, նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքը ներառում է ընդհանուրի օգտին աշխատելու պահանջմունքը և դրա նշանակության ու սոցիալական իմաստի գիտակցումը։ Աշխատանքի պահանջմունքը սոցիալիստական ապրելակերպի բաղկացուցիչ տարրն է։

Սոցիալիզմի պայմաններում աշխատանքը ավելի ու ավելի մեծ չափով և առավել մեծ թվով մարդկանց համար դառնում է ներքին անհրաժեշտություն։

Մոսկվայի Լիխաչովի անվան ավտոգործարանի կոլեկտիվի առջև ունեցած ելույթում Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Ժամանակակից արտադրությունը պահանջում է, որ յուրաքանչյուր աշխատող պարզ պատկերացնի իր տեղը աշխատանքային պրոցեսում, գիտենա, թե ինքը ինչ է անում և ինչու է անում, ինչ է իրենից կախված, զգա, որ իր աշխատանքը ընդհանուր աշխատանքի անհրաժեշտ մասն է։ Եթե այդպիսի գիտակցություն կա, ապա երևան է գալիս իսկական շահագրգռվածություն, այդ դեպքում աշխատանքը բեռ չէ, այդ դեպքում աշխատանքը ստեղծագործություն է» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 6, էջ 14)։

Սոցիալիստական աշխատանքի հասարակական դերի ճանաչումն անբաժանելի է աշխատանքի գիտակցական կարգապահության բարձր մակարդակից, արդի պայմաններում նրա ունեցած հարաճուն դերից։ Լինելով հասարակական կարգապահության կարևորագույն տեսակ, աշխատանքային կարգապահությունն առաջանում և զարգանում է աշխատանքի հասարակական կազմակերպման հետ միասին։

Վ. Ի. Լենինը կանխատեսում էր աշխատանքի հասարակական կազմակերպման ողջ բարդությունն ու դժվարությունը։ Նա նշում էր, որ աշխատանքի

նոր կարգապահություն հաստատելը, մարդկանց միջև հասարակական կապի նոր ձևեր ստեղծելը, մարդկանց աշխատանքի մեջ ներգրավելու նոր ձևեր ու եղանակներ արմատավորելը շատ տարիների ու տասնամյակների աշխատանք կպահանջի (տե՛ս Երկեր, հ. 30, էջ 662)։

Աշխատանքային կարգապահությունը սոցիալիստական ապրելակերպում արմատավորվում ու զարգանում է աստիճանաբար, աշխատանքի նկատմամբ հին վերաբերմունքի մնացուկների դեմ մղվող պայքարի ընթացքում։ Բարձր կարգապահության և աշխատանքի վերջնական արդյունքների բարձր որակի ապահովումը այժմ ո՛չ միայն տնտեսական, այլև բարոյական ու քաղաքական-դաստիարակչական նշանակություն ունի։ «Արդյունավետ սոցիալիստական տնտեսավարումը,— նշել է Ն. Ա. Տիխոնովը,— աններևակայելի է առանց կոլեկտիվի վրա հենվելու, առանց գործի նկատմամբ իրոք հոգատար վերաբերմունք, տնտեսական կուլտուրա դաստիարակելու, առանց յուրաքանչյուրի աշխատանքի բարձր որակի։ Դա պահանջում է հստակ կազմակերպվածություն, դա անհամատեղելի է թափթփվածության, կարգապահության խախտումների հետ» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 206)։ Բարձր կազմակերպվածությունը կուսակցական, պետական և տնտեսական ղեկավարության բոլոր մակարդակներում, բոլոր օղակներում, յուրաքանչյուր աշխատատեղում հանդես է գալիս որպես ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրների լուծման անհրաժեշտ, պարտադիր նախապայման։

Աշխատանքի սոցիալական իմաստի ըմբռնումն անբաժանելի է արտադրողականությունը բարձրացնելու, որակը բարելավելու, ժողովրդատնտեսական բարձր արդյունքների հասնելու ձգտումից։ Բարձր արտադրողական աշխատանքը, իր հերթին, ամրապնդում է մարդու հավատը իր ստեղծագործական հնարավորությունների նկատմամբ, հարստացնում է կենսագործունեության հիմնական տեսակի բովանդակությունը։ Ուստի աշխատանքի՝ որպես մեր ապրելակերպի բաղկացուցիչ մասի, զարգացման գլխավոր միտումներից մեկը նրա արտադրողականության անշեղ բարձրացումն է։ Եթե արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը տասներորդ հնգամյակում կազմել է 17 տոկոս, ապա տասնմեկերորդ հնգամյակում այն պետք է կազմի 23—25, գյուղատնտեսության մեջ՝ 22—24 տոկոս, այն դեպքում, երբ տասներորդ հնգամյակում այն կազմել է միայն 15 տոկոս։ Նախատեսվում է տասնմեկերորդ հնգամյակում ապահովել հանրային աշխատանքի արտադրողականության 17—20 տոկոսի աճ (տե՛ս ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 176—177)։ Հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման պրոբլեմը լուծվում է հասարակական հարաբերությունների կատարելագործման, բարեկեցության աճի, հոգևոր կուլտուրայի վերելքի, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման հետ օրգանական միասնության մեջ, այսինքն՝ անհատի համակողմանի զարգացման, սոցիալիստական ապրելակերպի ամրապնդման ու կատարելագործման համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու միջոցով։

Սովետական մարդկանց աշխատանքային կարգապահության և աշխատանքի արտադրողականության բարձրացման ներգործուն միջոց է սոցիալիստական մրցությունը աշխատավորական կոլեկտիվներում։ Այն նպաստում է սովետական մարդկանց բարոյական բարձր հատկությունների՝ աշխատասիրության, փոխադարձ հարգանքի ու փոխօգնության, կոլեկտիվիզմի զգացումի ձևավորմանն ու հաստատմանը։ Լինելով մարդկանց աշխատանքային, սոցիալ-քաղաքական և բարոյական ակտիվության արդյունք, զարգանալով դրանց հետ միասին, մրցությունը և ապրելակերպը սոցիալիստական հասարակական հարաբերությունների հասունության աստիճաններն են արտահայտում։ Որպես նոր ապրելակերպի կոլեկտիվիստական հիմունքների ձևավորման կարևորագույն գործոններից մեկը, մրցությունը արժույթային բարձր որակներով է օժտում կենսագործունեության վճռական բնագավառը՝ աշխատանքային ոլորտը, մարդկանց մեջ ամրապնդելով պարտքի գիտակցումը հասարակության հանդեպ, որը օգնում է, ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը. «բացահայտելու և գործողության մեջ դնելու արտադրության ռեզերվները, բարձրացնելու աշխատանքի արդյունավետությունն ու որակը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 94)։



Սովետական մարդիկ լավ գիտեն, որ ինչքան ավելի արդյունավետ է իրենց աշխատանքը, այնքան ավելի հարուստ է մեր երկիրը, այնքան ավելի բարեկեցիկ է սոցիալիստական հասարակության յուրաքանչյուր անդամի կյանքը։ Մարդը՝ հասարակությանը, հասարակությունը՝ մարդուն։ Այս սկզբունքը վառ կերպով դրսևորվում է սովետական մարդկանց աշխատանքային ակտիվության, աշխատանքի՝ որպես սոցիալիստական ապրելակերպի գլխավոր արժույթի նկատմամբ նրանց վերաբերմունքում։

Աշխատանքային գործունեության հասարակական նշանակության գիտակցումը, դրա բովանդակության հարստացումը, սովետական մարդկանց հանրակրթական, կուլտուրական մակարդակի բարձրացումը նպաստում են աշխատանքի ստեղծագործական բնույթի համակողմանի զարգացմանը, որը սոցիալիստական ապրելակերպի բնորոշ հատկանիշն է։

Որպես կենսագործունեության եղանակ՝ աշխատանքը մարդուց շարունակ պահանջում է ստեղծագործական վերաբերմունք։ Այս տեսակետից սոցիալիզմի սկզբունքային տարբերությունը նախորդ հասարակարգերից այն է, որ ստեղծագործությունն աշխատանքում, ինչպես և հասարակական կյանքի այլ ոլորտներում, ձեռք է բերում մասսայական բնույթ։ Միայն սոցիալիզմը կարող է աշխատավորներին «ներգրավել այնպիսի աշխատանքի ասպարեզ, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 35, էջ 229)։

Ժամանակակից սովետական բանվորի աշխատանքային գործունեությունը ավելի ու ավելի է հագեցվում մտավոր բովանդակությամբ։ Արտադրության արդյունավետության բարձրացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրների լուծումն այսօր չի կարելի պատկերացնել առանց նորարարության, առանց գյուտարարների ու ռացիոնալիզատորների շարժման։ Ուստի նորարարների առաջ քաշած յուրաքանչյուր արժեքավոր նախաձեռնության պաշտպանումն ու տարածումը աշխատավորների ուժերը, գիտելիքներն ու փորձը մոբիլիզացնելու, նրանց ակտիվ ստեղծագործության մեջ ներգրավելու, սոցիալիստական ապրելակերպը առավել զարգացնելու և կատարելագործելու կարևոր միջոց են։

Աշխատավորների գիտատեխնիկական ստեղծագործության զարգացման մարզում կարևոր դեր ունեն գյուտարարների և ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության, գիտատեխնիկական ընկերությունների կազմակերպությունները, որոնք միավորում են ավելի քան 20 մլն բանվորների, ինժեներների, տեխնիկների և ծառայողների։ Մեր հանրապետությունում այդ կազմակերպություններում ընդգրկված է ավելի քան 20 հազար մարդ։

Բանվորների առավել լայն շրջաններին տեխնիկական ստեղծագործությանը հաղորդակից դարձնելը հնարավորություն է ընձեռում աշխատավորական կոլեկտիվներում պահպանելու մշտական որոնումների, ստեղծագործական ձգտման մթնոլորտը, նպաստում նրանց ակտիվ մասնակցությանը տեխնիկական, տնտեսական և սոցիալական խնդիրների լուծմանը։

Ստեղծագործական հիմունքների ամրապնդումն աշխատանքում անմիջականորեն կապված է գիտատեխնիկական առաջընթացի, արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, ձեռքի ցածր արտադրողական, ֆիզիկական ծանր աշխատանքի վերացման հետ, որով դեռևս զբաղված են միլիոնավոր մարդիկ։ «Դա ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական լուրջ պրոբլեմ է։ Լուծել այն. նշանակում է վերացնել աշխատանքը յուրաքանչյուր մարդու կենսական առաջին պահանջմունքի վերածելու ճանապարհին եղած էական պատնեշները» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 93)։ Տասնմեկերորդ հնգամյակում խոշոր միջոցառումներ են նախատեսվում արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման բազայի վրա ձեռքի աշխատանքը էապես կրճատելու նպատակով։ Դա միայն արդյունաբերության մեջ հնարավորություն կստեղծի մի քանի միլիոն բանվորների ազատելու այն տեղամասերում, որտեղ գերիշխում է ձեռքի աշխատանքը։

Այդ պրոբլեմի լուծման սոցիալական իմաստն այն է, որ ձեռքի աշխատանքի կրճատումը դառնում է մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները աստիճանաբար վերացնելու կարևոր նախապայման։ Այն նպաստում է աշխատանքի վարձատրությունն աստիճանաբար հավասարեցնելու ընդհանուր միտումին։ Արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումը հանգեցնում են աշխատողների որակավորման միջին մակարդակի բարձրացմանը, որոշ չափով նվազում են արդյունաբերության և գյուղատնտեսության ճյուղերում աշխատանքի վարձատրման տարբերությունները, բարձրանում է թեթև և սննդի արդյունաբերության, գյուղատնտեսության ճյուղերի, ինչպես նաև ծառայությունների ոլորտում զբաղված աշխատողների աշխատավարձը։ Տասնմեկերորդ հնգամյակում խոշոր միջոցառումներ են նախատեսվում արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման բազայի վրա ձեռքի աշխատանքը էապես կրճատելու նպատակով։

Այս ամենը սովետական մարդկանց կողմնորոշում է բովանդակալից աշխատանքային ստեղծարար գործունեության, որի մասին են վկայում աշխատանքի բուն շարժառիթների փոփոխությունները։ Այստեղ արդեն որոշիչ են դառնում ո՛չ միայն աշխատանքային գործունեության արտաքին խթանները, այլև աշխատանքի բուն պրոցեսը, դրա պատճառած հոգեկան բավականությունը։ Նման պայմաններում անշեղորեն ընդլայնվում է աշխատանքի բարոյական գործոնների ոլորտը։ Այլ կերպ ասած, տեղի է ունենում սոցիալիստական աշխատանքի՝ կոմունիստականին մերձենալու աստիճանական ու անխուսափելի պրոցես։

Կոմունիստական աշխատանքը մարդկանց ստեղծարար գործունեությունն է, ուստի աշխատանքի ստեղծագործական սկզբունքների զարգացումը, նրա ստեղծարար ուժի բազմապատկումը հանդես են գալիս որպես աշխատանքը սոցիալիստական ապրելակերպի հետագա կատարելագործման առաջին նախադրյալի վերածելու վճռական պայման։ Կոմունիստական աշխատանքի տարրերը, ծիլերը երևան են գալիս արդեն այն ժամանակ, երբ ստեղծվում է սոցիալիստական հասարակական հարաբերությունների հիմքը։ Կոմունիստական շաբաթօրյակները, որպես աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի ծիլեր, որպես աշխատանքի նոր ձևերի տարատեսակություն, երևան են եկել այն ժամանակ, երբ սոցիալիզմը դեռ նոր էր կառուցվում։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ կոմունիստական շաբաթօրյակները «հեղաշրջման սկիզբն են», «կոմունիզմի փաստական սկիզբը», կոմունիստական աշխատանքին անցնելու սկիզբը։

Կոմունիստական աշխատանքի օբյեկտիվորեն առաջացող տարրերի հիման վրա ծագում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը։ Այժմ այդ շարժմանը մասնակցում է 65,8 մլն մարդ։

Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման ներկա փուլի առանձնահատկությունն այն է, որ այն անմիջականորեն առնչվում է աշխատավորների մոտ կոմունիստական բարձր գիտակցականության ձևավորման հետ։

Կոմունիստական աշխատանքը, ինչպես և ամեն մի աշխատանք, ենթադրում է մարդու ուժերի գործադրում, նրա ընդունակությունների բացահայտում և կիրառում։ Արտադրաուժերի բարձր մակարդակի և կոմունիստական հասարակական կազմակերպման շնորհիվ այդ աշխատանքը բացահայտում ու զարգացնում է ոչ թե մարդու առանձին, այլ բոլոր ընդունակությունները և դրա շնորհիվ նպաստում է համակողմանիորեն զարգացած անհատի ձևավորմանը։

Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը հանդես է գալիս որպես հասարակական գիտակցության փաստ, մարդու քաղաքական ու բարոյական հասունության չափանիշ, սոցիալիստական ապրելակերպի կարևորագույն հատկանիշ։ Սովետական մարդկանց աշխատանքային գործունեությունը հիրավի պետք է միշտ դիտվի որպես սուբյեկտի գոյության ու զարգացման եղանակի բնութագիր, որպես աշխատանքային պրոցեսում նրա ակտիվության արտահայտություն։

Աշխատանքը նոր հասարակարգի գլխավոր ստեղծարար ուժն է, մեզ բոլորիս պատկանող նյութական և հոգևոր հարստությունների աղբյուրը։

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԷՍԹԵՏԻԿԱՆ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**
Տեխնիկական էսթետիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական մասնաճյուղի դիրեկտոր
**Գ. Փ. ԱՎԱԳՅԱՆ**
Ավագ ինժեներ, տնտեսագետ

ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ապրանքների արտադրության ավելացումը և դրանց որակի բարձրացումը մեր կուսակցությունը համարում է արդյունաբերության բոլոր ճյուղերի, բոլոր ձեռնարկությունների և կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը։ Այս պատասխանատու առաջադրանքի կենսագործմանն են ուղղված նաև մեր՝ տեխնիկական էսթետիկայի բնագավառի աշխատողներիս ջանքերը։

Դիզայնի ծառայությունը մեր հանրապետությունում իրականացնում է տեխնիկական էսթետիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական մասնաճյուղը, որը կոորդինացնում է տարբեր գեղարվեստական-կոնստրուկտորական խմբերի գործունեությունը հիմնարկ-ձեռնարկություններում։ Դիզայնը բարդ ամբողջական համալիր է, ուր լուծվում են տնտեսական ու սոցիալ-կուլտուրական նշանակության խնդիրներ։ Նկարիչ-կոնստրուկտորն առավել ուշադիր է գործող ամեն մի սիստեմի, ամեն մի առարկայի, դրանց հետ մարդու ունեցած կապի նկատմամբ՝ հաշվի առնելով արտադրության ժամանակակից պայմանները։ Այս առումով է հենց իրարից տարբերվում դիզայների և կոնստրուկտոր-ինժեների գործունեությունը։

Մեծ է դիզայնի դերը առարկայական աշխարհի ձևավորման խնդրում։ Առաջին պլան է մղվում ուշադրությունը սպառողի, նրա պահանջմունքների նկատմամբ։ Գեղագիտորեն կատարյալ արտադրանքը, գեղարվեստորեն լավագույնս ձևավորված շրջակա միջավայրը, լայն սպառման ապրանքների տեսականիի մշտական նորացումն ու սպառողական հատկանիշների բարելավումը նպաստում են բնակչության էսթետիկական ճաշակի ձևավորմանը, հարուցում նոր պահանջմունքներ ու կուլտուրական արժույթների գնահատման նոր պատկերացումներ, ազդում մարդկանց զգացմունքների, ընկալումների ու վարքի վրա։ Ի վերջո, այն առևտրական սիստեմի, կենցաղի, սպասարկման կատարելագործման պրոբլեմ է։

Այսպիսով, դիզայնն ունի տնտեսական մեծ նշանակություն արտադրության ռացիոնալ կազմակերպման, արտադրանքի որակի բարձրացման ու իրացման առումով, ինչպես և սոցիալական նշանակություն՝ համակողմանի զարգացած անհատի կերպավորման համար։ Բացի այդ, էսթետիկորեն կատարյալ արտադրանքը բարձրացնում է երկրի միջազգային հեղինակությունը։ Մշտապես պետք է հիշել ընկեր Լ. Ի. Բրեժնևի՝ ՍՄԿԿ XXVI համագումարում արտասանած ուղենիշ խոսքերը. «Համապատասխանություն համաշխարհային և հայրենական լավագույն նմուշներին. դրանից պակաս ոչ մի բանի մենք չենք կարող և չպիտի համաձայնենք»։ Այս նպատակին հասնելու գործում մեծ է և դիզայնի ծառայության դերը։

Գեղարվեստական ձևավորման նվաճումների կիրառումը մեր երկրում վերջին 10—15 տարիների ընթացքում դիզայնի դերի աճի վկայությունն է։ Դրան նպաստում են մի կողմից՝ հանրային արտադրության ընդլայնումը, որով առավել բարենպաստ պայմաններ են ստեղծվում դիզայնի նվաճումների կիրառման համար, մյուս կողմից՝ սոցիալական գործունեության տվյալ ոլորտում կուտակված ստեղծագործական պոտենցիալի արագ աճը։ Դիզայները արդյունավետորեն նպաստում է ժողովրդի համար բարձրորակ ապրանքների թողարկմանը, դրանց տեսականու բարելավմանը։ Այն հիմնավորում է առարկայի ֆունկցիոնալ ու գեղագիտական միասնականությունը, շեշտը դնելով արտադրության տեխնոլոգիայի պարզեցման, իրերի ինքնաժեքի իջեցման վրա։

Դիզայնի բնույթը, առաջացումն ու զարգացումը պայմանավորված են արտադրության ու սպառման պայմանների փոփոխություններով։ Մի շարք հետազոտողներ, շոշափելով լոկ սպառման ոլորտը, չեն տեսնում դիզայնի՝ որպես նոր նախագծային դիսցիպլինի, գենետիկական կապը մասսայական արդյունաբերական արտադրության զարգացման հետ։ Շրջապատող միջավայրի վերափոխման վրա ակտիվորեն ներգործելու նպատակով դիզայներն օգտագործում է արդյունաբերության հնարավորությունները՝ օբյեկտ ընտրելով ամենամասսայական արտադրանքը։

Ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրության զարգացման և դրանց որակի բարձրացման միջոցառումների մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի համատեղ որոշման մեջ նախատեսված են մի շարք միջոցառումներ կուլտուր-կենցաղային ու տնտեսական ապրանքների որակի բարձրացման, բնակչության հարաճուն պահանջմունքների բավարարման համար։ Ամենևին էլ պատահական չէ ուշադրությունն այդպիսի ապրանքների նկատմամբ։ Տեխնիկապես բարդ կենցաղային սարքերն ու արտադրանքն են բնորոշում արդյունաբերության դեմքը։ Մեր երկրի բարձր գիտատեխնիկական պոտենցիալը, արտադրության կուլտուրայի աճն այսօր հնարավորություն են ընձեռում յուրացնելու նորագույն տեխնիկան և լրիվ բավարարելու սպառման ապրանքների նկատմամբ սովետական մարդկանց պահանջմունքները։

Արտադրանքի որակի բարձրացման նպատակով մեր մասնաճյուղն իրականացնում է հետևյալ ֆունկցիաները. գիտահետազոտական աշխատանքների և գեղարվեստական կոնստրուկցիաների մշակման մեթոդների հետագա կատարելագործում՝ հաշվի առնելով նոր կոմպլեքսային նախագծումներին ներկայացվող արդի պահանջները, որոնք կապահովեն տեխնիկական ու էրգոնոմիական բարձր ցուցանիշներ. գիտահետազոտական և գեղարվեստական-կոնստրուկտորական աշխատանքների գիտական կազմակերպման համակարգի զարգացում. օգնություն արդյունաբերական ձեռնարկություններին գեղարվեստական-կոնստրուկտորական և գիտահետազոտական մշակումների արդյունքների ներդրման գործում։

Սակայն հարկ է նշել, որ հանրապետության որոշ արդյունաբերական ձեռնարկություններ անբավարար են օգտագործում գեղարվեստական կոնստրուկտավորումը թողարկվող արտադրանքի որակի բարձրացման գործում։ Եթե դրան ավելացնենք, որ միութենական ենթակայության շատ ձեռնարկություններ արտադրության մեջ ներդրվելիք նոր արտադրատեսակի հատկանիշների նախագծերն ստանում են իրենց գերատեսչական կազմակերպություններից, ապա պարզ կդառնան այն օբյեկտիվ պատճառները, որոնք հանգեցնում են գեղարվեստական-կոնստրուկտորական ծառայության թերբեռնվածության։

Դիզայնի խնդիրների և զարգացման ուղիների մասին տակավին աղոտ պատկերացում ունեն հիմնարկ-ձեռնարկությունների որոշ ղեկավարներ, երբեմն նաև գեղարվեստական-կոնստրուկտորական ծառայության աշխատողներ, որոնց մի մասը սահմանափակվում է սոսկ եզակի իրերի, արտադրանքի շրջանակներով, նեղացնելով դիզայնի հնարավոր օբյեկտների շրջանակը։

Այս ամենի հետևանքով դժվարություններ են ծագում՝ կապված դիզայներական գործունեության պլանավորման հետ, ավելի տարբերային են դառնում տարբեր բնույթի պատվերները։ Հիշյալ թերությունների վերացման նպատակով անհրաժեշտ է որոնել դիզայնի զարգացման ու ծավալման նոր ուղիներ,



հաշվի առնելով տեղական յուրահատկությունները։ Այդպիսի ուղիներից մեկը դիզայնի կիրառման նոր ոլորտների, ինչպես և գեղարվեստական-կոնստրուկտորական մշակումների կարիք ունեցող արտադրական նոր օբյեկտների հայտաբերումն է։

Տեխնիկական էսթետիկայի հայկական մասնաճյուղի գործունեությունը հիմնականում պայմանավորված է հանրապետությունում գիտության ու տեխնիկայի զարգացման յուրահատկությամբ։ Հատկապես կարևորվում են հաստոցաշինությունն ու սարքաշինությունը, ճյուղեր, որոնցով առավելապես պայմանավորված են տեխնիկական առաջընթացը և ժողովրդական տնտեսության արդյունավետությունը։

Մեքենաշինության ու սարքաշինության մարզում մասնաճյուղն զբաղվում է հաստոցների, վերամբարձ-տրանսպորտային սարքավորումների, թեթև արդյունաբերության, գյուղատնտեսական մեքենաների, ձեռքի մեքենայացված գործիքների, տրանսպորտային, դիսպետչերական և կառավարակետի տարբեր միջոցների, բժշկական արդյունաբերության ապարատների, էլեկտրատեխնիկական ու օպտիկական, ռադիոտեխնիկական և կենցաղային էլեկտրոնիկայի սարքերի գեղարվեստական-կոնստրուկտորական ձևավորումների մշամամբ, որոնք ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեն։

Արդի գիտատեխնիկական հեղափոխության ըստ ամենայնի ծավալման պայմաններում ամբարված պրակտիկ փորձը ո՛չ միայն հաստատեց մեր աշխատանքների անհրաժեշտությունն ու հեռանկարայնությունը, այլև հարստացրեց դրանք նոր, կարևորագույն խնդիրներով։ Այսպես, մասնաճյուղի ողջ գործունեությունը վերակողմնորոշվեց, մեքենաշինության և սարքաշինության բնագավառում գիտահետազոտական աշխատանքների ու գեղարվեստական-կոնստրուկտորական մշակումների էքստենսիվ մեթոդները փոխարինվեցին ինտենսիվով, որի նպատակն է բարձրացնել աշխատանքների արդյունավետությունն ու որակը։ Այդ նոր ստրատեգիական դիրքորոշման նշանակությունն ընդհանրացված է «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» ծրագրային փաստաթղթում, որն արժանացավ ՍՄԿԿ XXVI համագումարի հավանությանը։ «Արտադրության հետ գիտության ինտեգրացումը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— արդի դարաշրջանի հրամայական պահանջն է։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն համոզված է, որ գիտության և տեխնիկայի գործիչները, ինժեներները և նախագծողները, ճյուղերի և արտադրությունների ղեկավարները ամեն ինչ կանեն այս պահանջի բարձրության վրա գտնվելու համար»։

Ընթացիկ հնգամյակում մասնաճյուղի աշխատակիցներն իրենց ուշադրությունը կենտրոնացրել են ժողովրդական տնտեսությանն անհրաժեշտ խոշոր ու կարևոր մշակումների վրա։ Դրանում մեզ մեծապես օգնում է նախորդ հնգամյակում ձեռք բերած փորձը։

Տասներորդ հնգամյակի ընթացքում մասնաճյուղը մշտական ստեղծագործական կապեր է պահպանել Չարենցավանի հաստոցաշինական գործարանի հետ։ Բեղմնավոր համագործակցության արգասիքը եղան հղկող, ուղղահայաց-ֆրեզերային հաստոցների նոր մոդելների գեղարվեստական-կոնստրուկտորական ձևավորումները, որոնք ներդրվել են արտադրության մեջ։ Գեղարվեստական-կոնստրուկտորական մի շարք մշակումներ են կատարվել նաև Երևանի ֆրեզերային հաստոցների, Մոսկվայի բժշկական ապարատների, Կիրովականի «Ավտոմատիկա» և «Ավտոգենմաշ» գործարանների ու այլ կազմակերպությունների համար։

Նախորդ հնգամյակում կատարված կարևոր մշակումներից են «էներգացանց» ինստիտուտի պատվերով Ուզբեկական հանրապետության էներգասիստեմի դիսպետչերի աշխատատեղի (ԴԱՏ) գեղարվեստական ձևավորումը։ Դրա նպատակն էր համեմատության օբյեկտիվ չափանիշների հիման վրա ընտրել Ուզբեկստանի էներգասիստեմի ԴԱՏ-ի լավագույն տարբերակը, ինչպես նաև միասնականացված հանգույցների ու դետալների օգտագործմամբ ստեղծել կառավարակետի այնպիսի կոնստրուկցիա, որը հնարավորություն ընձեռ

շեշտակի բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու ինքնաժեքը և նպատակային օգտագործման էլեկտրաէներգիայի բաշխումը հանրապետությունում: Կառավարակետը բաղկացած է վեց սեկցիաներից, որոնցից յուրաքանչյուրն ունի հաղորդիչ տարրերի շարժական, ինչպես և սնման ու կառավարման բլոկներ:

Մասնաճյուղի հետ կնքվում են գիտահետազոտական և գեղարվեստական-կոնստրուկտորական աշխատանքների կատարման երկարաժամկետ պայմանագրեր: Գիտահետազոտական աշխատանքներ են տարվում ռադիոարդյունաբերության բնագավառում մետաղամշակման արտադրամասերի կազմակերպման հագեցվածության լավագույն անվանակարգի սահմանման նպատակով, որը կիրականացվի կազմակերպչական տեխնիկայի ունիֆիկացման նոր սերիայի մշակմամբ: Մասնաճյուղը մեթոդական օգնություն է ցույց տալիս մեքենաշինության և սարքաշինության արտադրանքի գեղարվեստական նախագծման գործում՝ թե՛ հանրապետությունում և թե նրանից դուրս:

Այդուհանդերձ հանրապետության ձեռնարկությունների պահանջների հաշվառման առումով տակավին անբավարար են դիզայն-ծրագիր կազմելու գործը, ինչպես և մեքենաշինության արտադրանքների նախագծման մեթոդիկայի մշակումը:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Մասսայական սպառման ապրանքների արտադրության ծավալման և դրանց որակի բարձրացման մասին» որոշման համաձայն մասնաճյուղում հատուկ ուշադրություն է նվիրվել կուլտուր-կենցաղային ապրանքների ձևավորման մշակմանը, որը դիզայնի կարևորագույն խնդիրներից է:

Ժողովրդական սպառման ապրանքների գեղարվեստական կոնստրուկտավորման աշխատանքների ծավալը մասնաճյուղում 1978 թ. կազմել է ընդհանուր աշխատանքների 19,6, 1979-ին՝ 20,1, 1980-ին՝ 31,8 տոկոս: Ընթացիկ հնգամյակում մեր աշխատակիցները ջանում են առավելագույնս բարելավել լայն սպառման ապրանքների սպառողական և էսթետիկական հատկանիշները, նորացնել դրանք: Այդ նպատակով մեզ մոտ ուսումնասիրվում են հանրապետությունում թողարկվող արտադրանքի տեսականին ու որակը: Հետազոտվում են այդ արտադրատեսակների արտադրության պայմանները, առանձին ձեռնարկությունների տեխնոլոգիական հնարավորությունները:

Լուրջ ուշադրություն է նվիրվում հանրապետության ձեռնարկությունների, մասնավորապես ժամանակակից էլեկտրոնային և էլեկտրատեխնիկական սարքավորումների ձևավորման աշխատանքներին:

Վերջին տարիներս մասնաճյուղի նոր խնդիրը դարձավ նաև կոմպլեքսային աշխատանքների կատարման ընթացքում կուլտուր-կենցաղային իրերի գեղարվեստական-կոնստրուկտորական բաժնի և արդյունաբերական գրաֆիկայի ու փաթեթավորման բաժինների գործունեության սինթեզումը: Այժմ արդեն նման մշակումների զգալի փորձ է կուտակվել:

Մասնաճյուղի շատ մշակումներ անցյալ հնգամյակում արմատավորվել են պրակտիկայում և արժանացել բարձր գնահատականի: Դրանցից են БЭП—2У կենցաղային էլեկտրամանվածքային մեքենան, «Ուրալեց» փոշեծծիչը, ինչպես նաև ВМД—4882, КПД, КПП—I, КПМ—1, КПУ—I սարքերը Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանի համար, 6550 մոդելի ուղղահայաց ֆրեզերային հաստոցի գեղարվեստական-կոնստրուկտորական ձևավորումները: Պետական որականիշի են արժանացել Երևանի հաստոցաշինական արտադրամիավորման համար մշակված երեք տիպաչափի փականագործական աքցանը և «Պրուս—1» վայրկյանաչափի դիզայներական մշակումները:

Ժողովրդական լայն սպառման ապրանքների որակի բարձրացումն ունի համապետական նշանակություն և տեխնիկական էսթետիկայի բոլոր միջոցները պետք է ծառայեն այդ նպատակին: Էական նշանակություն ունեն մասնաճյուղում կատարվող աշխատանքները արտադրանքի սպառողական հատ-



կությունների փորձագիտության ասպարեզում: Նշված ձեռնարկումները կնպաստեն արտադրանքի որակի բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կենսագործմանը:

Մասնաճյուղում զգալի աշխատանք է տարվել մեր հանրապետության ձեռնարկություններում ու կազմակերպություններում աշխատանքային պայմանների ուսումնասիրման և դրա հիման վրա արտադրական միջավայրի գեղարվեստական ձևավորման նախագծեր կազմելու ասպարեզում: Այսպես, մեր նախագծերով է կատարվել Կիրովականի քիմիական, Երևանի տեխնոլոգիական սարքավորումների և Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանների արտադրական միջավայրի գեղարվեստական ձևավորումը: Արտադրության կուլտուրայի և տեխնիկական էսթետիկայի առումով այդ օբյեկտները հանրապետությունում համարվում են լավագույնները:

Արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական միջավայրի գեղարվեստական-կոնստրուկտորական աշխատանքներից բացի, 1977 թվականին փորձ արվեց մշակելու նաև այդ միջավայրի առանձին առարկաներ: Այսպես, մշակվեց լուսակառավարվող ծրագրավորման ռելեի գեղարվեստական-կոնստրուկտորական նախագիծը, որով հնարավոր դարձավ նշված գրաֆիկով աստիճանաբար երկարացնել անպատուհան թռչնանոցների ցերեկվա տևողությունը: Այդ մշակումը ևս արժանացել է պետական որականիշի: Մասնաճյուղում մեթոդական հանձնարարականներ են մշակվում ո՛չ միայն արտադրական միջավայրի գեղարվեստականացման, այլև էրգոնոմիկայի ու գեղարվեստական կոնստրուկտավորման ողջ սիստեմի համար:

Շատ երկարաժամկետ թեմաներ մշակվում են էրգոնոմիկայի լաբորատորիայի մասնագետների անմիջական մասնակցությամբ: Լաբորատորիայի գործունեության հիմնական ուղղություններն են՝ ինֆորմացիոն մոդելների կազմման սկզբունքների մշակում, տեսողական սիստեմի բանվորական ակտիվության կոմպլեքս ուսումնասիրություն, բանվորի դիրքի ու շարժումների հետազոտում, մեքենաների ու կառավարակետերի գեղարվեստական գծագրման ինժեներահոգեբանական երաշխավորությունների, կառավարման ավտոմատ համակարգերի մշակում և այլն:

Երկարաժամկետ թեմաները հնարավորություն են ընձեռում առավել լրիվ ու համակողմանի ընդգրկելու ուսումնասիրվող պրոբլեմը, խորապես վերլուծելու հետազոտման ընթացքում առաջացող հիմնական և ածանցյալ պրոբլեմներն ու հարցերը: Նման աշխատանքի օրինակ է ծառայում հեռագրային սարքերի համար նախատեսված շրիֆտի ընթեռնելիությունը (խճանկարային և նշանային), որը մշակվելու է 3 տարվա ընթացքում:

Նախատեսված է զգալիորեն մեծացնել այն մշակումների տեսակարար կշիռը, ուր հետազոտվում են տեխնիկական էսթետիկայի հիմնարար դրույթներն ու սկզբունքները: Դրանց նպատակն է բարձրացնել նկարիչ-կոնստրուկտորի պրոֆեսիոնալ պատրաստականությունը, ձևավորել էրգոնոմիկական նորմաներն ու պահանջները: Մշակված տեսական-մեթոդաբանական հետազոտությունների հիման վրա հնարավոր դարձավ ներկայացնել քաղաքի դիզայնի գիտահետազոտական փորձնական ծրագիր ու նախագծի առաջին փուլը:

Գեղարվեստական-կոնստրուկտորական ստորաբաժանումներին անհրաժեշտ և մշտական օգնություն ապահովելու նպատակով մեր մասնաճյուղում ստեղծված է մեթոդական ֆոնդ, ուր ամփոփված են մեթոդական մշակումներ, ցուցումներ, օպերատիվ նյութեր (թեմատիկ սեմինարների, խորհրդակցությունների հանձնարարականներ և ծրագրեր), դիտողական օժանդակ ձեռնարկներ, նյութեր (ալբոմներ, միկրոֆիլմեր, սլայդներ, կատալոգներ ու պրոսպեկտներ), մակետներ և փորձնական նմուշներ:

Մասնաճյուղը նկատելի աշխատանք է կատարում արտադրության մեջ տեխնիկական էսթետիկայի և էրգոնոմիկայի արդյունքների ներդրման համար մեթոդական հանձնարարականներ մշակելու նպատակով:

Գեղարվեստական-կոնստրուկտորական ստորաբաժանումներին ցույց տրվող մեթոդական օգնության ձևերից են սեմինարները, կոնֆերանսները: Անցած հնգամյակում կազմակերպվել է նման քսանհինգ միջոցառում: 1979

թվականին հրավիրվել է երկու կոնֆերանս՝ նվիրված տեխնիկական էսթետիկայի հրատապ պրոբլեմներին։ Ձեռնարկություններին ու կազմակերպություններին առավել օպերատիվ մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով վերլուծվել են 1975—1979 թթ. որոշ մշակումներ չներդնելու պատճառները։ Ինչպես ցույց են տալիս վերլուծման արդյունքները, այդ պատճառներից մեկը արտադրանքի ստեղծման գործում նկարիչ-կոնստրուկտորի մասնակցության գործոնի անտեսումն է գնագոյացման սիստեմում։ Այդ պարագան ստիպում է ձեռնարկությանը պարզունակ դարձնել և էժանացնել արտադրանքը՝ ի վնաս արտաքին տեսքի, օգտագործման և վերանորոգման հարմարավետության։ Մյուս պատճառներից է ձեռնարկությունների փոնդավորված նյութերը (գունավոր մետաղներ, պլաստմասսա և այլն) «տնտեսելու» ձգտումը։ Մասնաճյուղի առաջադրած լուծումները պատվիրատուն փոփոխում է նաև այն պատճառով, որ դրանց իրականացումը տեխնիկական ավելի մեծ հնարավորությունների առկայություն է ենթադրում։ Անդրադառնանք, օրինակ, կուլտուր-կենցաղային նշանակության ապրանքների արդյունաբերական ու գեղարվեստական-կոնստրուկտորական նմուշների տարբերությունների պատճառներին։ Համապատասխանության աստիճանը պայմանավորված է պատվիրատու ձեռնարկության տեխնոլոգիական, ինչպես և անհրաժեշտ նյութերի հայթայթման հնարավորություններով։ Կուլտուր-կենցաղային առարկաների գեղարվեստական-կոնստրուկտորական նախանմուշների ներդրումը առավել բարդ է և շատ գործոնների առումով՝ սահմանափակ։ Սահմանափակ են նման արտադրանք թողարկող տեղամասերի ու արտադրամասերի տեխնոլոգիական հնարավորությունները։ Եվ այդ առումով մեր մասնաճյուղի կանխագծումները պայմանավորված են պատվիրատու ձեռնարկության հիմնական արտադրաբազայի հզորությամբ ու հնարավորություններով։

Ստեղծագործական և տեխնիկական նախագծումներ կատարողների աշխատանքը, նրանց գիտելիքների, փորձի հարստացումը այս գործի բարելավման անհրաժեշտ նախապայմանն են։ Տեխնիկական էսթետիկայի կատարելագործման մարդում հիշարժան է Մոսկվայի, Լենինգրադի, Թբիլիսիի, Վիլնյուսի, Խաբարովսկի, Մինսկի, Սվերդլովսկի, Կիևի, Բաքվի տեխնիկական էսթետիկայի կենտրոնների արդյունավետ համագործակցությունը։

Արտադրության մեքենայացման, նոր տեխնոլոգիայի ներդրման թելադրանքով դիզայներների ուսուցման մեթոդիկան պետք է համապատասխանի ժամանակակից պահանջներին։ Նոր է դիզայների մասնագիտությունը, դրա ուսուցումն իսկ շատ կողմերով փորձարարական։ Ուստի և օգտակար կլինի արտասահմանյան, սոցիալիստական երկրների, հատկապես ԳԴՀ-ի փորձի ուսումնասիրությունն այս ասպարեզում։ Հիշենք, որ ԳԴՀ-ն առաջին սոցիալիստական երկիրն է, որտեղ ստեղծվել է «Գերազանց դիզայնի համար» մեդալը։ Մեզ մոտ դիզայների մասնագիտությունն ընտրում են հիմնականում հանրակրթական դպրոցների շրջանավարտները, որոնք ունեն տեխնիկական նվազագույն գիտելիքներ։ Մինչդեռ ԳԴՀ-ում գերադասությունը տրվում է միջնակարգ-տեխնիկական կրթություն ունեցողներին։

Տեխնիկական էսթետիկայի հայրենական և արտասահմանյան լավագույն կենտրոնների փորձի ստեղծագործական ուսումնասիրումը, այդ ասպարեզի մասնագետների պատրաստումը պատշաճ ձևով կազմակերպելու միջոցով մեր հանրապետությունում դիզայնի զարգացումը կհասնի նորանոր հաջողությունների։ Խորապես համոզված ենք՝ անչափ կարևոր է, որ մեզ շրջապատող ամեն ինչ իր վրա կրի գեղեցկի, լավ ճաշակի կնիքը։

---



# ԱԲԱՇԱՅԻ ԷՔՍՊԵՐԻՄԵՆՏԸ

**Ռ. Վ. ԱՆԴՂՈՒԼԱՁԵ**

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ԱԳՐԱՐԱՅԻՆ քաղաքականությունը, որը մշակվել է ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումում և հետագա զարգացում ստացել ՍՄԿԿ XXIII—XXVI համագումարներում, գյուղատնտեսության մասնագիտացման ուժեղացման, համակենտրոնացման խորացման և ինտենսիվացման մակարդակի բարձրացման հետ մեկտեղ առաջին պլան է մղում ագրոարդյունաբերական ողջ կոմպլեքսի կառավարման կատարելագործման խնդիրը։

Դեռևս 1974 թ. խամ և խոպան հողերի յուրացման 20-ամյակի տոնակատարության ժամանակ Ալմա-Աթայում արտասանած ճառում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ անհրաժեշտ է մշտապես հոգալ գյուղատնտեսության կառավարման կատարելագործման մասին, կառավարումն անմիջականորեն մոտեցնել գյուղատնտեսական արտադրությանը, վերացնել ավելորդ օղակները, առավելագույնս ավելացնել կառավարման վերջնական արդյունքը։ Այնուհետև կուսակցության Կենտկոմը բազմիցս անդրադարձել է արտադրության կառավարման հետագա զարգացման և կատարելագործման պրոբլեմին։

«Պետք է ընդհանրապես նշել,— ՍՄԿԿ XXVI համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ կառավարման կազմակերպական կառուցվածքի կատարելագործումը քարացածություն չի հանդուրժում։ Տնտեսության կառավարման կենդանի, զարգացող օրգանիզմը չի կարելի հարմարեցնել կայունացած, սովորական ձևերին։ Ընդհակառակն, ձևերը պետք է համապատասխանեցվեն փոփոխվող տնտեսական խնդիրներին. միայն այսպես կարող է դրվել հարցը»։ Այդ հարցը սրությամբ դրվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թ. նոյեմբերյան պլենումում, որտեղ մասնավորապես նշվեց, որ կարևոր տեղ պետք է հատկացնել այնպիսի խոշոր պրոբլեմներին, ինչպիսին են գյուղատնտեսության և ամբողջությամբ վերցրած ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման սիստեմի և տնտեսական մեխանիզմի կատարելագործումը։

Կուսակցության առաջադրած ծրագրային պահանջները վերաբերում են գյուղատնտեսական արտադրության կառավարման բոլոր մակարդակներին և օղակներին, և այդ մարզում վերջին շրջանում շատ բան է արված։ Այս առումով ուշագրավ է Վրացական ՍՍՀ Աբաշայի շրջանի փորձը։ Այստեղ դեռևս 1974 թվականին շրջանային գյուղվարչության բազայի վրա ստեղծվել է գյուղատնտեսության կառավարման շրջանային միավորում, որի ենթակայությանը, բացի կոլտնտեսություններից և սովխոզներից, հանձնված են նաև գյուղատնտեսության հետ առնչվող մյուս ձեռնարկություններն ու ծառայությունները։ Հետագայում արտադրության կառավարման նոր սիստեմին են փոխադրվել հանրապետության մի շարք այլ շրջաններ։

Ինչով է պայմանավորված այդպիսի վերակառուցումը։ Արդի պայմաններում առավել զգացնել է տալիս գյուղի արտադրաուժերի արագ զարգացման և գյուղատնտեսության կառավարման՝ իրենց սպառած ձևերի միջև առաջացած անհամապատասխանությունը և անհավասարակշռությունը։

թվականին հրավիրվել է երկու կոնֆերանս՝ նվիրված տեխնիկական էսթետիկայի հրատապ պրոբլեմներին։ Ձեռնարկություններին ու կազմակերպություններին առավել օպերատիվ մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով վերլուծվել են 1975—1979 թթ. որոշ մշակումներ չներդնելու պատճառները։ Ինչպես ցույց են տալիս վերլուծման արդյունքները, այդ պատճառներից մեկը արտադրանքի ստեղծման գործում նկարիչ-կոնստրուկտորի մասնակցության գործոնի անտեսումն է գնագոյացման սիստեմում։ Այդ պարագան ստիպում է ձեռնարկությանը պարզունակ դարձնել և էժանացնել արտադրանքը՝ ի վնաս արտաքին տեսքի, օգտագործման և վերանորոգման հարմարավետության։ Մյուս պատճառներից է ձեռնարկությունների ֆոնդավորված նյութերը (գունավոր մետաղներ, պլաստմասսա և այլն) «տնտեսելու» ձգտումը։ Մասնաճյուղի առաջադրած լուծումները պատվիրատուն փոփոխում է նաև այն պատճառով, որ դրանց իրականացումը տեխնիկական ավելի մեծ հնարավորությունների առկայություն է ենթադրում։ Անդրադառնանք, օրինակ, կուլտուր-կենցաղային նշանակության ապրանքների արդյունաբերական ու գեղարվեստական-կոնստրուկտորական նմուշների տարբերությունների պատճառներին։ Համապատասխանության աստիճանը պայմանավորված է պատվիրատու ձեռնարկության տեխնոլոգիական, ինչպես և անհրաժեշտ նյութերի հայթայթման հնարավորություններով։ Կուլտուր-կենցաղային առարկաների գեղարվեստական-կոնստրուկտորական նախանմուշների ներդրումը առավել բարդ է և շատ գործոնների առումով՝ սահմանափակ։ Սահմանափակ են նման արտադրանք թողարկող տեղամասերի ու արտադրամասերի տեխնոլոգիական հնարավորությունները։ Եվ այդ առումով մեր մասնաճյուղի կանխագծումները պայմանավորված են պատվիրատու ձեռնարկության հիմնական արտադրաբազայի հզորությամբ ու հնարավորություններով։

Ստեղծագործական և տեխնիկական նախագծումներ կատարողների աշխատանքը, նրանց գիտելիքների, փորձի հարստացումը այս գործի բարելավման անհրաժեշտ նախապայմանն են։ Տեխնիկական էսթետիկայի կատարելագործման մարզում հիշարժան է Մոսկվայի, Լենինգրադի, Թբիլիսիի, Վիլնյուսի, Խաբարովսկի, Մինսկի, Սվերդլովսկի, Կիևի, Բաքվի տեխնիկական էսթետիկայի կենտրոնների արդյունավետ համագործակցությունը։

Արտադրության մեքենայացման, նոր տեխնոլոգիայի ներդրման թելադրանքով դիզայներների ուսուցման մեթոդիկան պետք է համապատասխանի ժամանակակից պահանջներին։ Նոր է դիզայների մասնագիտությունը, դրա ուսուցումն իսկ շատ կողմերով փորձարարական։ Ուստի և օգտակար կլինի արտասահմանյան, սոցիալիստական երկրների, հատկապես ԳԴՀ-ի փորձի ուսումնասիրությունն այս ասպարեզում։ Հիշենք, որ ԳԴՀ-ն առաջին սոցիալիստական երկիրն է, որտեղ ստեղծվել է «Գերազանց դիզայնի համար» մեդալը։ Մեզ մոտ դիզայների մասնագիտությունն ընտրում են հիմնականում հանրակրթական դպրոցների շրջանավարտները, որոնք ունեն տեխնիկական նվազագույն գիտելիքներ։ Մինչդեռ ԳԴՀ-ում գերադասությունը տրվում է միջնակարգ-տեխնիկական կրթություն ունեցողներին։

Տեխնիկական էսթետիկայի հայրենական և արտասահմանյան լավագույն կենտրոնների փորձի ստեղծագործական ուսումնասիրումը, այդ ասպարեզի մասնագետների պատրաստումը պատշաճ ձևով կազմակերպելու միջոցով մեր հանրապետությունում դիզայնի զարգացումը կհասնի նորանոր հաջողությունների։ Խորապես համոզված ենք՝ անչափ կարևոր է, որ մեզ շրջապատող ամեն ինչ իր վրա կրի գեղեցկի, լավ ճաշակի կնիքը։

---



# ԱԲԱՇԱՅԻ ԷՔՍՊԵՐԻՄԵՆՏԸ

**Ռ. Վ. ԱՆԴՂՈՒԼԱՁԵ**

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ԱԳՐԱՐԱՅԻՆ քաղաքականությունը, որը մշակվել է ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումում և հետագա զարգացում ստացել ՍՄԿԿ XXIII—XXVI համագումարներում, գյուղատնտեսության մասնագիտացման, ուժեղացման, համակենտրոնացման խորացման և ինտենսիվացման մակարդակի բարձրացման հետ մեկտեղ առաջին պլան է մղում ագրոարդյունաբերական ողջ կոմպլեքսի կառավարման կատարելագործման խնդիրը։

Դեռևս 1974 թ. խամ և խոպան հողերի յուրացման 20-ամյակի տոնակատարության ժամանակ Ալմա-Աթայում արտասանած ճառում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ անհրաժեշտ է մշտապես հոգալ գյուղատնտեսության կառավարման կատարելագործման մասին, կառավարումն անմիջականորեն մոտեցնել գյուղատնտեսական արտադրությանը, վերացնել ավելորդ օղակները, առավելագույնս ավելացնել կառավարման վերջնական արդյունքը։ Այնուհետև կուսակցության Կենտկոմը բազմիցս անդրադարձել է արտադրության կառավարման հետագա զարգացման և կատարելագործման պրոբլեմին։

«Պետք է ընդհանրապես նշել,— ՍՄԿԿ XXVI համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ կառավարման կազմակերպական կառուցվածքի կատարելագործումը քարացածություն չի հանդուրժում։ Տնտեսության կառավարման կենդանի, զարգացող օրգանիզմը չի կարելի հարմարեցնել կայունացած, սովորական ձևերին։ Ընդհակառակն, ձևերը պետք է համապատասխանեցվեն փոփոխվող տնտեսական խնդիրներին. միայն այսպես կարող է դրվել հարցը»։ Այդ հարցը սրությամբ դրվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թ. նոյեմբերյան պլենումում, որտեղ մասնավորապես նշվեց, որ կարևոր տեղ պետք է հատկացնել այնպիսի խոշոր պրոբլեմներին, ինչպիսին են գյուղատնտեսության և ամբողջությամբ վերցրած ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման սիստեմի և տնտեսական մեխանիզմի կատարելագործումը։

Կուսակցության առաջադրած ծրագրային պահանջները վերաբերում են գյուղատնտեսական արտադրության կառավարման բոլոր մակարդակներին և օղակներին, և այդ մարզում վերջին շրջանում շատ բան է արված։ Այս առումով ուշագրավ է Վրացական ՍՍՀ Աբաշայի շրջանի փորձը։ Այստեղ դեռևս 1974 թվականին շրջանային գյուղվարչության բազայի վրա ստեղծվել է գյուղատնտեսության կառավարման շրջանային միավորում, որի ենթակայությանը, բացի կոլտնտեսություններից և սովխոզներից, հանձնված են նաև գյուղատնտեսության հետ առնչվող մյուս ձեռնարկություններն ու ծառայությունները։ Հետագայում արտադրության կառավարման նոր սիստեմին են փոխադրվել հանրապետության մի շարք այլ շրջաններ։

Ինչով է պայմանավորված այդպիսի վերակառուցումը։ Արդի պայմաններում առավել զգացնել է տալիս գյուղի արտադրաուժերի արագ զարգացման և գյուղատնտեսության կառավարման՝ իրենց սպառած ձևերի միջև առաջացած անհամապատասխանությունը և անհավասարակշռությունը։

Արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման բուռն պրոցեսում արդեն պարզ է դառնում, որ շրջանային գյուղվարչությունը ի վիճակի չէ կառավարելու գյուղատնտեսական արտադրությունը։ Վարչությունը փաստորեն իրականացնում է կոլտնտեսությունների ղեկավարման ֆունկցիան, այն էլ ոչ լրիվ ծավալով։ Ինչ վերաբերում է շրջանի սովխոզներին, գյուղատնտեսական պետական մյուս տնտեսություններին և կազմակերպություններին, ապա դրանց ղեկավարությունն իրականացնում են գյուղմինիստրությունը, սննդի արդյունաբերության և այլ գերատեսչությունները։ Այդպիսի պայմաններում հաճախ խախտվում է գյուղատնտեսության կառավարման ճյուղային և տերիտորիալ սկզբունքների զուգակցումը, միմյանց հետ չեն համաձայնեցվում կառավարման վարչական և տնտեսական մեթոդները, նպատակահարմար և արդյունավետ չեն օգտագործվում շրջանի տարածքում գտնվող կոլտնտեսությունների ու գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների նյութաֆինանսական և աշխատանքային ռեսուրսները։

Ուշադրությունից դուրս են մնում նաև սոցիալական շատ հարցեր։

Որո՞նք են Աբաշայի նորամուծության կոնկրետ արդյունքները։ Նոր ձևով աշխատելու անցած ժամանակամիջոցը գործնականում ապացուցել է դրա նպատակային և արդարացված լինելը։ Հատկանշական է, որ 1979 թ. օգոստոսին Աբաշայում կազմակերպված համամիութենական սեմինար-խորհրդակցությունում լրիվ հավանություն տրվեց գյուղատնտեսական արտադրության կառավարման կատարելագործման նպատակով իրականացվող էքսպերիմենտին։

Աբաշայի նորամուծության ամենակարևոր արդյունքն այն է, որ անհամեմատ ավելի հաջող են լուծվում ներշրջանային պլանավորման հարցերը։ Դա շրջանին հնարավորություն է տվել արագացնելու գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման պրոցեսը, կայուն հիմքեր ստեղծելու միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման համար։ Դրա վառ ապացույցն է շրջանի անասնաբուծության խորապես հիմնավորված մասնագիտացումն ու համակենտրոնացումը։ Հանրապետությունում առաջինն այստեղ ստեղծվեցին երեքհազարական գլխի համար խոշոր եղջերավոր անասունների և խոզերի բտման միջտնտեսային միավորումներ։ Շրջանում կառուցվել են խոզաբուծական վերարտադրության համալիր՝ 1200 մայր խոզի համար և 1200 գլխաքանակով կաթնային համալիր։ Այժմ կառուցվում է խոշոր եղջերավոր անասունների մատղաշի աճեցման համալիր՝ երեք հազար գլխի համար։

Մշակված են շրջանի գյուղատնտեսական արտադրության գիտականորեն հիմնավորված հեռանկարները՝ անասնաբուծության և կերարտադրության առաջընթաց զարգացմամբ։ Դա լրիվին համապատասխանում է Վրացական ՍՍՀ գյուղատնտեսության՝ ըստ գոտիների մասնագիտացման սկզբունքներին։

Միավորման կազմի մեջ մտնող օղակների փոխադարձ ֆունկցիոնալ կապը նպաստավոր պայմաններ է ստեղծում աշխատանքային, նյութական և դրամական միջոցների առավել արդյունավետ օգտագործման համար։ Կառավարման նոր կարգին նախորդած տարիների համեմատությամբ նկատելիորեն բարելավվել է կոլտնտեսությունների, սովխոզների, գյուղտեխնիկայի շրջանային միավորման, մելիորացիայի և ջրային տնտեսության վարչության, միջտնտեսային ձեռնարկությունների և միավորման կազմի մեջ մտնող մյուս ծառայությունների փոխգործողությունը։

Նոր սիստեմը որոշակիորեն նպաստում է գերատեսչական խոչընդոտների հաղթահարմանը, ձեռնարկությունների տնտեսական ցուցանիշների բարելավմանը, դրանց գործունեության համաչափությանն ու օպերատիվությանը։ Համեմատաբար առավել ճկուն ձևով է կատարվում կոլտնտեսությունների, սովխոզների և մյուս ձեռնարկությունների ու ծառայությունների նյութատեխնիկական մատակարարումը։

Միավորման պայմաններում առավել ակտիվորեն են ներդրվում առաջավոր փորձը և գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները։ Այսպես, շատ կարճ ժամանակամիջոցում Կոլխիդայի ցածրավայր բարդ պայմաններում



իրականացվեց եգիպտացորենի և սոյայի արտադրության կոմպլեքսային մեքենայացումը։

1980 թ. ավարտվեց գյուղատնտեսական տեխնիկայի համակենտրոնացումը։ Սովխոզները բոլոր մեքենաներն ու գործիքները բալանսից բալանս հանձնեցին «Գյուղտնտեխնիկայի» շրջանային միավորմանը։ Կոլտնտեսությունները տեխնիկան նրան տրամադրեցին վարձով։ Դա անվիճելիորեն բարձրացնում է տեխնիկայի օգտագործման և սպասարկման արդյունավետությունը, նպաստում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության աճին, և այսօր Աբաշայում մեխանիզատորը նույնքան շահագրգռված է գյուղատնտեսական աշխատանքների վերջնական արդյունքով, որքան կոլտնտեսականը և սովխոզի բանվորը։

Առավել հաջողությամբ է լուծվում կադրերի ընտրության և տեղաբաշխման խնդիրը։ Գլխավոր ուշադրությունը կենտրոնացվում է գյուղատնտեսական արտադրության վճռական տեղամասերում որակյալ մասնագետների տեղաբաշխմանը։

Գյուղատնտեսության կառավարման նոր սիստեմը անմիջականորեն ներգործում է արտադրության մասշտաբների ընդլայնման, շրջանի տնտեսական մի ամբողջ շարք ցուցանիշների բարելավման վրա։ 1974 թ. համեմատությամբ, շրջանի հիմնական և առաջատար կուլտուրայի՝ եգիպտացորենի բերքատվությունն ավելացել է կրկնակի չափով, հասնելով 48,9 ցենտների։ Բանջարեղենի բերքատվությունը համապատասխանաբար 46,7 ցենտներից հասել է 85-ի, կանաչ թեյատերևինը՝ 23,1-ից 41,8-ի։ Յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը նախկինում հազիվ էր հասնում մեկուկես հազար կիլոգրամի, այժմ այն անցնում է երկու հազարից, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 400-ով, այդ թվում կովերինը՝ մոտ 300-ով։ Բնական է, որ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների գլխաքանակի ու մթերատվության աճի շնորհիվ զգալիորեն ավելացել են մթերքների արտադրությունն ու մթերումները։

Ընդհանուր առմամբ, շրջանի հանրային տնտեսություններում գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրությունն ավելացել է 53 տոկոսով, 5,3-ից հասնելով 8,1 միլիոն ռուբլու։

Բարձրացել են նաև աշխատանքի որակական ցուցանիշները։ 100 հեկտար գյուղատնտեսական հանդակների հաշվով համախառն արտադրանքը 28 հազար ռուբլուց հասել է 40 հազար ռուբլու, իսկ արտադրության մեջ զբաղված մեկ աշխատողի հաշվով՝ 867-ից 1222 ռուբլու։ Եթե մեկ մարդ-օրում համախառն արտադրությունը 1971—1974 թթ. միջին հաշվով եղել է 5,71 ռուբ., ապա 1975—1978 թթ.՝ 7,03 ռուբլի։ Այլ կերպ ասած, աշխատանքի արտադրողականությունն աճել է 25,1 տոկոսով։

Հանրային արտադրության հետագա զարգացմանը մեծապես նպաստում է կառավարման սիստեմի այնպիսի օրգանական բաղկացուցիչ տարրը, ինչպիսին է արտադրության աշխատողների բարոյական և հատկապես նյութական խրախուսման կատարելագործումը։ Նախկինում, նյութական խրախուսման անտեսման պրակտիկան խիստ բացասաբար էր ազդում տնտեսական ողջ գործունեության, արտադրության արդյունավետության և որակի վրա։ Այժմ կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, մեխանիզատորների աշխատանքի նյութական խթանումը պայմանավորվում է արտադրության վերջնական արդյունքներով։ Առանձնապես կատարելագործվել է մեխանիզատորների աշխատանքի խթանման կարգը։

Նյութական խրախուսման նոր, ճկուն համակարգի ներդրումը նպաստում է տնտեսական ցուցանիշների բարելավմանը, գյուղատնտեսական արտադրության նոր վերելքին։ Արտադրության բարձր մակարդակը հնարավորություն է ընձեռում ավելացնելու հանրային տնտեսությունում զբաղվածների աշխատանքի վարձատրությունը։

Առանձնապես պետք է նշել մեխանիզատորների աշխատանքի խրախուսման նոր կարգը, որը տարեցտարի կատարելագործվում է։ Շրջանի բոլոր տրն-

տեսություններում գործում են եգիպտացորեն և սոյա աճեցնող կոմպլեքսային մեքենայացված օղակներ։ Տնտեսությունների և այդ օղակների միջև կնքվում են համապատասխան պայմանագրեր, որոնք սահմանում են երկուստեք պարտավորություններ։ Արտադրական պլանները կատարելու և գերակատարելու համար տրակտորիստ-մեքենավարները ստանում են համապատասխան պարգևներ։

Շրջանային գյուղատնտեսական արտադրամիավորման հաստիքներում կա մոտ 300 մեխանիզատոր, որոնք աշխատավարձ ստանում են «Գյուղտեխնիկայի» միավորումից, սակայն կոլտնտեսությունների և սովխոզների կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների անդամ են՝ այստեղից բխող բոլոր իրավունքներով, արտոնություններով, ինչպես նաև պարտականություններով։ Աշխատանքի և վարձատրության այսպիսի կարգը մեխանիզատորներին խորապես շահագրգռում է առավել բարձր վերջնական արդյունքների նկատմամբ։ Արտադրամիավորումն ամեն ամիս, կատարված աշխատանքի դիմաց վճարում է մեխանիզատորների աշխատավարձի 90 տոկոսը։ Տարեվերջին, արտադրական պլանները կատարելու դեպքում վճարվում է մնացած 10 տոկոսը, գերակատարելու դեպքում՝ տրվում է ևս 10 տոկոս։ Դրա հետ մեկտեղ, մեխանիզատորները, լավ աշխատանքի համար տարվա ընթացքում կարող են աշխատավարձի 40 տոկոսի չափով հավելյալ վարձատրություն ստանալ միավորման նյութական խրախուսման ֆոնդից։ Ցանքի և բերքահավաքի ժամանակ պարգևը կարող է հասնել մինչև 80 տոկոսի, միայն թե այդ դեպքում անհրաժեշտ է ստանալ այն կոլտնտեսության կամ սովխոզի համաձայնությունը, որտեղ աշխատել է մեխանիզատորը։ Բացի այդ ամենից, եթե մեխանիզատորը բարեխղճորեն է աշխատել և տնտեսությունը գերակատարել է սահմանված պարտավորությունները, նա ստանում է աճեցրած բերքի (եգիպտացորենի հատիկի) 10 տոկոսը, բայց ոչ ավելի 10 տոննայից։

Իրականացված միջոցառումների շնորհիվ առավել լրիվ են օգտագործվում աշխատառեսուրսները, տեղում ամրապնդվում է աշխատուժը, նկատելիորեն բարձրանում է աշխատավորների բարեկեցությունը և, որ շատ կարևոր է, շրջանում առողջացել է բարոյահոգեբանական մթնոլորտը։

Ուշադրության արժանի է հետևյալ փաստը։ Անմիջականորեն արտադրողներին, որպես պարգև, բնամթերքով տրվող եգիպտացորենի հատիկի քանակության կտրուկ ավելացումը հանգեցրել է տնամերձ անասնապահության հետագա զարգացմանը։ Այսպես, եթե 1972 թ. շրջանի բնակչությունը պետությանն էր վաճառել 441 տոննա միս, ապա 1979 թ.՝ 1121 տոննա։ Տնամերձ անասնապահության հետագա զարգացման և գյուղատնտեսական արտադրության մեջ հարգելի պատճառով չներգրավված աշխատանքային ռեսուրսների (անաշխատունակներ, թոշակառուներ, անչափահասներ, ոչ գյուղատնտեսական ձեռնարկություններում աշխատողներ) օգտագործումը բարելավելու, ինչպես նաև հանրային և տնամերձ տնտեսությունների կոոպերացման նպատակով, շրջանում իրականացվում է ևս մեկ հետաքրքրական էքսպերիմենտ։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում ստեղծվում են 100 խոզամայրի վերարտադրիչներ՝ խոճկորներ ստանալու և դրանք բնակչությանը վաճառելու համար։ Ձեռք բերելով խոճկորները, բնակիչներն աճեցնում են, բտում դրանք և հանձնում տնտեսության հաշվին։ Հանձնված յուրաքանչյուր կիլոգրամ մսի դիմաց տնտեսությունը տալիս է 4 կգ խտացրած կեր կամ եգիպտացորենի հատիկ՝ պետական գնման գներով, իսկ բնակչությունը մեկ կգ մսի համար ստանում է երկու ռուբլի։ Այսպիսի կոոպերացման վերջնական արդյունքը շահավետ է ինչպես բնակչությանը, այնպես էլ տնտեսությանը, շահում է ամբողջ հասարակությունը՝ ստանալով մսի լրացուցիչ ռեսուրսներ։

Գյուղատնտեսական արտադրության բարձր տեմպերը, որոնց հասնելու գործում մեծ նշանակություն ունեն կառավարման նոր համակարգի ներդրումը, նյութական խթանման գործուն միջոցների իրականացումը, հնարավորություն են ընձեռում բարձրացնելու արտադրության արդյունավետությունը և գերակատարելու պլանային ցուցանիշները։ Աբաշայի շրջանը ութ անգամ



անընդմեջ արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

Շրջանի գյուղատնտեսական արտադրության մեջ, այնուամենայնիվ, ոչ բոլոր հարցերն են լուծված։ Դեռևս անհրաժեշտ մակարդակի վրա չէ առանձին կուլտուրաների բերքատվությունը և հանրային հոտի մթերատվությունը, որի հետևանքով բարձր է արտադրանքի ինքնարժեքը և ցածր արտադրության շահութաբերությունը (3,7 տոկոս)։

Այսպիսով, էքսպերիմենտը համոզչորեն ապացուցել է իր կենսունակությունը և հեռանկարայնությունը, միաժամանակ բացահայտելով շրջանային միավորման իրավունքների, հատկապես կառավարման տնտեսական ֆունկցիայի ընդլայնման անհրաժեշտությունը։ Այդ կապակցությամբ Վրաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը 1978 թ. որոշում են ընդունել «Աբաշայի շրջանի գյուղատնտեսության կառավարման կազմակերպական ձևերի հետագա կատարելագործման մասին»։ Գյուղատնտեսության կառավարման շրջանային միավորումը վերակառուցվեց գյուղատնտեսական արտադրական միավորման, այն ստորադրելով ՎՍՍՀ գյուղատնտեսության մինիստրությանը և ժողովրդական դեպուտատների շրջսովետին։

Արտադրամիավորման (ագրոարդյունաբերական համալիրի կառավարման ֆունկցիաներով) ստեղծման նպատակն է կենտրոնացնել այնտեղ միավորված բոլոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների ջանքերը գյուղատնտեսական արտադրության զարգացումն արագացնելու, գյուղի սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային պրոբլեմները համատեղ լուծելու համար։ Հատկապես ուշադրության կենտրոնում են շրջանի ագրոարդյունաբերական կոմպլեքսի պլանաչափ, համամասնական զարգացման և տարբեր բնակլիմայական պայմաններ ունեցող կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական պայմանների համահավասարեցման հարցերը։

Որո՞նք են Աբաշայի շրջանային գյուղատնտեսական արտադրամիավորման կառուցվածքը և կազմակերպական սկզբունքները։ Միավորման մեջ մտնում են կոլտնտեսությունները, սովխոզները, միջտնտեսային ձեռնարկությունները և մյուս պետական գյուղատնտեսական կազմակերպությունները, սննդի արդյունաբերության ձեռնարկությունները, մելիորացիայի և ջրային տնտեսության, մթերումների, գյուղական շինարարության, գյուղտեխնիկայի մարմինները և այն բոլոր գերատեսչական կազմակերպությունները, որոնց գործունեությունը Աբաշայի շրջանում առնչվում է գյուղատնտեսության հետ։

«Գյուղտեխնիկայի» միավորման և մելիորացիայի ու ջրային տնտեսության վարչության գործունեությունն առավել սերտորեն է առնչվում ընդհանուր առմամբ շրջանի գյուղատնտեսության զարգացման շահերի հետ։ Այդ կազմակերպությունների ղեկավարները միաժամանակ միավորման նախագահի տեղակալներ են և մտնում են գյուղատնտեսական արտադրամիավորման հաստիքների մեջ։

Միավորման կանոնադրությամբ այլ մինիստրությունները և գերատեսչությունները իրենց ձեռնարկությունների նկատմամբ պլանային, ֆինանսական և մյուս կառավարչական ֆունկցիաներն իրականացնում են արտադրամիավորման միջոցով։ Դա նշանակում է, որ նշված ձեռնարկությունները գտնվում են կրկնակի ենթակայության ներքո։ Ինչ վերաբերում է միավորմանը, ապա նա կազմակերպությունների և ձեռնարկությունների նկատմամբ իրականացնում է կոորդինացնող ֆունկցիաներ։

Աբաշայի գյուղատնտեսական արտադրամիավորումը կազմակերպված է տերիտորիալ սկզբունքով։ Այն ինքնուրույն տնտհաշվարկային միավոր է։ Միավորման կառավարման մարմինը խորհուրդն է, որն ընտրվում է մասնակից տնտեսությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների լիազորների ու ներկայացուցիչների ժողովում։ Հարցերի լուծման կոլեգիալությունը և կառավարման օպերատիվությունն ապահովելու նպատակով խորհուրդը ընտրում է վարչություն՝ կազմված 11 մարդուց։ Այն կարգադրիչ-գործադիր մարմին է։

Միավորման վարչության և խորհրդի նախագահը (նույն ինքը միավոր-

վում է ավելի կոնկրետ և օպերատիվ, քան դա կատարվում էր մասնագիտացված տրեստների օրոք։

Արտադրամիավորումների ստեղծմամբ որոշակիորեն ավելի դյուրին է պետական քաղաքականություն իրականացնել գյուղատնտեսության ասպարեզում, ինչպես պլանավորման, ֆինանսավորման, այնպես էլ ագրո և զոոտեխնիկական միջոցառումների իրականացման նպատակով։ Վերանում են գերատեսչական խոչընդոտները սովխոզների կառավարման հարցում։

Այս ամենը նպաստում է գյուղատնտեսական ձեռնարկությունների նկատմամբ կուսակցական ղեկավարման արդյունավետության բարձրացմանը։

Թերևս, շրջանային գյուղատնտեսական արտադրամիավորումների ստեղծումը հարթ չի ընթանում և բոլոր հարցերը լուծված համարել չի կարելի։ Նույնիսկ նոր պայմաններում դանդաղ է բարելավվում կառավարչական ապարատի կառուցվածքը, միջոցառումներից շատերը դեռևս չեն ապահովված բարձրորակ կադրերով, հատկապես սովխոզային արտադրությունը՝ բանիմաց տնտեսագետներով, ֆինանսիստներով, հաշվային աշխատողներով։ Դա հիմնականում բացատրվում է այն հանգամանքով, որ մինչև այժմ լիովին լուծված չէ նրանց աշխատանքի վարձատրության և նյութական խրախուսման հարցը։

Տակավին չի հաջողվել իրականացնել միավորման մեջ ընդգրկված ձեռնարկությունների ու կազմակերպությունների գործունեության լիակատար կոորդինացումը։ Միավորումների խորհուրդները փաստորեն չեն մասնակցում պլանավորմանը, եռամսյակային, կիսամյակային և տարեկան հաշվետվությունների քննարկմանը։ Ուստի շրջանի գյուղատնտեսությանը և ագրոարդյունաբերական ամբողջ համակարգին՝ միասնական ղեկավար մարմին բովանդակությունը դեռևս մինչև վերջ չի իրականացված։ Ինչպես Աբաշայի, այնպես էլ նոր սիստեմին անցած մյուս շրջաններում դեռևս առկա են որոշակի քանակությամբ տնտեսություններ, որոնց կառավարում են տարբեր գերատեսչություններ, տրեստներ ու միավորումներ, և դրանք օրգանական կապի մեջ չեն գյուղարտադրամիավորման հետ։ Հիշատակենք թեկուզ հետևյալ օրինակը։ Վրաստանի մերձնափորձնական կայանի խաղողագործական տնտեսությունը վերադաս միութենական մարմնից («Պետկոմգյուղտնտտեխնիկա») ստացել էր 2900 տոննա խաղողի մթերման պլան։ Հանրապետության պետպլանի սահմանած պլանը 3200 տոննա էր։ Փաստորեն տնտեսությունը պետությանը հանձնեց 2.950 տոննա խաղող՝ գերակատարելով միութենական վերադաս մարմնի սահմանած պլանը, որի համար և պարգևատրվեց ու խրախուսանքի արժանացավ։ Մինչդեռ ՎԿԿ Մախարաձեի շրջկոմը քննադատեց այդ տնտեսությանը՝ պլանը չկատարելու համար։

Հրատապ անհրաժեշտություն է այն խնդիրը, որ շրջանի գյուղատնտեսական, վերամշակող և գյուղատնտեսությանը սպասարկող բոլոր ձեռնարկությունները ստորադրվեն շրջանային միավորմանը, իսկ վերադաս գերատեսչությունները դրանց նկատմամբ ղեկավարությունը իրականացնեն միմիայն արտադրամիավորման միջոցով։

Կառավարման շրջանային օղակի կատարելագործմանը զուգընթաց կարևոր նշանակություն ունի նաև մյուս մակարդակներում գյուղատնտեսության կառավարման կարգավորման խնդիրը։ Կուսակցության արդի ագրարային քաղաքականության պահանջներին համապատասխան, 70-ական թվականներին հանրապետությունում ստեղծվեցին գյուղատնտեսական մի շարք խոշոր միավորումներ։ Դեռևս 1975 թ. գերատեսչական արգելքները վերացնելու և Թբիլիսի ու Ռուսթավի քաղաքները բանջարեղենով, պտուղներով, կարտոֆիլով և գյուղատնտեսական այլ մթերքներով ապահովելու նպատակով «Դաշտ-խանութ» սկզբունքով ստեղծվեց ագրոարդյունաբերական-առևտրական միավորում, որտեղ ընդգրկվեցին 52 սովխոզ, պահածոների գործարաններ, պտուղբանջարեղենի խանութներ, ավտոբազա, բանջարեղենի պահպանման և սպասարկող այլ ձեռնարկություններ։ Նշված ձեռնարկություններից յուրաքանչյուրը իրավաբանական անձ է և ունի իր ինքնուրույն հաշվեկշիռը։ Միավորումը տարեցտարի ընդլայնվեց և այսօր արդեն ներառում է 59 սովխոզ, 335 առևտրական կետ (այդ թվում 5 ունիվերսամ), բանջարեղենի պահպանության կենտրոնական բազան (քաղ. Թբիլիսի—Լիլո)՝ 72 հազար տոննա տարողությամբ, բանջարեղենի բազաներ այլ քաղաքներում՝ 18 հազար տոննա տարողությամբ, պահածոների գործարաններ՝ 20 միլիոն պայմանական տուփ ընդհանուր հզորությամբ։ Այժմ միավորումը սպասարկում է ոչ միայն հանրապետության քաղաքներին, այլև առողջարաններին։ Հատկանշական է, որ քաղաքների բնակչության մատակարարման բարելավման շնորհիվ կոլտնտեսային շուկաներում բանջարեղենի իրացումը պակասել է 30 տոկոսով։

Ագրոարդյունաբերական միավորման ղեկավար մարմինը դիրեկտորների խորհուրդն է, որն օժտված է մեծ իրավունքներով։ Այն քննարկում և լուծում է կառավարման, պլանավորման, ֆինանսավորման բոլոր հիմնական հարցերը։

Էքսպերիմենտի կարգով հանրապետությունում ստեղծվել է գյուղատնտեսական մթերքների մթերումների նոր համակարգ («Վրացգյուղտնտմթերում»), որի հիմնական խնդիրներն են՝ մթերքների մթերումը, վերամշակումը, պահպանումը և դրանք սպառողին հասցնելը, ստորադաս ձեռնարկությունների ու կազմակերպությունների ֆինանսավորումը, նյութատեխնիկական ռեսուրսների և կապիտալ ներդրումների պլանավորումն ու բաշխումը, մթերող կազմակերպությունների օբյեկտների տեխնիկական վիճակի պետական հսկողության իրականացումը և այլն։

Այդ միավորումն ստեղծելուց հետո մշտապես ավելանում է գյուղատնտեսական մթերքների մթերումը։ Այսպես, 1976 թ. մթերվել է 886 հազար տոննա, իսկ 1980 թ. 1.225 հազար տոննա արտադրանք։ Մթերումների միջին տարեկան աճը 10—12 տոկոսից հասել է 17—19 տոկոսի։

Հանրապետության գյուղատնտեսության կառավարման համակարգում անհրաժեշտ է նշել նաև այն օղակները, որոնք բնորոշում են ճյուղային քաղաքականությունը։ Դրանցից են՝ «Վրացսերմարդը», «Վրացջերմոցը», բուծային տնտեսությունների տրեստը և այլն։ Դրանցից յուրաքանչյուրի կազմակերպական կառուցվածքի և գործունեության մասին հնարավոր չէ սույն հոդվածում անդրադառնալ, միայն նշենք, որ առկա հասումները և հեռանկարները միանգամայն հուսադրող են։

Պարզ է, որ ճյուղի կառավարման համակարգի կատարելագործումը վերաբերում է նաև բարձրագույն օղակին՝ հանրապետության գյուղատնտեսության մինիստրությանը։ Մինչև 1975 թ. հանրապետությունում կար երկու մինիստրություն՝ գյուղատնտեսության և սովխոզների։ Այդպիսի կառուցվածքը քիչ էր համապատասխանում Վրաստանի բազմաճյուղ գյուղատնտեսության զարգացման շահերին, և նշված երկու մինիստրությունները միավորվեցին։ Այժմ գյուղատնտեսության մինիստրության ֆունկցիաները բազմազան են և բազմակողմանի՝ մթերքների արտադրությունը, մթերումները, առևտուրը, վերամշակումը, գյուղատնտեսական գիտությունը և միջնակարգ մասնագիտական կրթությունը։ Այդպիսի պայմաններում, բնական է, որ նա պետք է օժտված լինի պլանավորման, նյութատեխնիկական և ֆինանսական միջոցներով մանևրելու, այլ գերատեսչությունների հետ առնչությունների լիարժեք լիազորություններով։ Ցավոք, այս հարցերը դեռ քիչ են ուսումնասիրված։ Կյանքը թելադրում է նաև իր իսկ մինիստրության և նրա ստորաբաժանումների կառուցվածքի, դրանց ֆունկցիաների, իրավունքների, պարտականությունների և մի ամբողջ շարք այլ հարցերի խորացված ուսումնասիրություն։

Որպեսզի գյուղատնտեսության մինիստրությունն իրականացնի ճյուղային-տերիտորիալ կառավարման իր ֆունկցիան, նպատակահարմար է ստեղծել կառավարչական ճյուղային-տերիտորիալ խոշոր ստորաբաժանումներ՝ ի դեմս հանրապետական միավորումների։

Ելնելով մեր հանրապետության գյուղատնտեսության առանձնահատկություններից, նպատակահարմար է ունենալ ճյուղային-տերիտորիալ չորս միավորում. թեյաբուծության և ցիտրուսաբուծության, խաղողագործության, պտղաբուծության և անասնապահության՝ կերարտադրության հետ մեկտեղ։

Այդ կապակցությամբ, հանրապետության առանձին շրջաններում, նպա-

տակահարմար է ստեղծել Աբաշայի միավորմանը համանման շրջանային գյուղատնտեսական մասնագիտացված արտադրամիավորումներ, որոնք կլինեն համապատասխան հանրապետական միավորման ենթակայության ներքո։

Գյուղատնտեսության մինիստրության կենտրոնական ապարատում նպատակահարմար է պահպանել ֆունկցիոնալ վարչությունները, որոնք իրականացնում են ճյուղային քաղաքականությունը։

Այսպիսով, բոլոր մակարդակներով գյուղատնտեսական արտադրության կառավարման կատարելագործման և նոր ձևերի ներդրման նպատակով Վրացական հանրապետությունում զգալի աշխատանք է կատարված։ Սակայն դեռևս շատ անելիքներ կան, բազմաթիվ հարցեր հարկ է ճշտել, ուղղել, ստուգել։ Դա բխում է Աբաշայի, մյուս շրջանների, ինչպես գործող, այնպես էլ նոր կազմակերպվող արտադրամիավորումների, ընդհուպ մինչև մինիստրության ֆունկցիաների, հատկապես գյուղատնտեսության կառավարման տնտեսական մեխանիզմի կատարելագործման անհրաժեշտությունից։

Նոր պայմաններում ճշգրտման, խոր ուսումնասիրության կարիք ունեն պլանավորման, հաշվետվության, աշխատանքների կոորդինացման, մասնագիտացման խորացման, համակենտրոնացման մակարդակի բարձրացման, միջտնտեսային կոոպերացման, ագրոարդյունաբերական ինտեգրացման, տնտեսական պայմանների համահավասարեցման պրոբլեմները։ Օրակարգի հարց է դառնում այնպիսի մի հրատապ և բարդ խնդիր, ինչպիսին հանրապետության գյուղատնտեսության և ամբողջությամբ վերցրած ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման գլխավոր սխեմայի կազմումն է։ Դա բխում է ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թթ. և մինչև 1990 թ. ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների պահանջներից։ «Հիմնական ուղղություններում» որոշակիորեն ասված է. «Պարենային ծրագրի հաջող իրականացման նպատակով ապահովել ագրոարդյունաբերական կոմպլեքսի ճյուղերի միասնական պլանավորումը, համամասնական և հաշվեկշռված զարգացումը, նրա նյութատեխնիկական բազայի զգալի ամրապնդումը, ճյուղերի միջև տնտեսական կապերի կատարելագործումը, գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու, նրա պահպանումը, փոխադրումը, վերամշակումը և սպառողին դրանց առաքումը բարելավելու բնագավառում նրանց փոխգործողության հստակ կազմակերպումը»։

Ժամանակն է ապահովել ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսի նկատմամբ միասնական ժողովրդատնտեսական մոտեցումը։ Մինչդեռ այսօրվա դրությամբ կոմպլեքսի յուրաքանչյուր ճյուղային օղակ ինքնուրույն է, այն առաջին հերթին լուծում է իր ճյուղի, հաճախ ներգերատեսչական խնդիրները, որոնք միշտ չէ, որ համընկնում են կոմպլեքսի վերջնական նպատակների հետ։ Այսպիսի պայմաններում դժվարանում է կոմպլեքսի ճյուղերի միջև կապիտալ ներդրումների և նյութատեխնիկական ռեսուրսների բաշխումը, որը հանգեցնում է ընդհանուր զարգացման պասսիվության, խոչընդոտում է կոմպլեքսի կառուցվածքում առկա թերությունների հաղթահարմանը։

Հայտնի է, որ հանրապետության ագրոարդյունաբերական կոմպլեքսը ներառում է գյուղատնտեսության մինիստրությունը, «Վրացպետկոմգյուղտնտտեխնիկայի» միավորումը, մելիորացիայի և ջրային տնտեսության, մթերումների, գյուղական շինարարության, մսեղենի և կաթնեղենի, սննդի արդյունաբերության մինիստրությունները, խտացված կերերի արդյունաբերությունը, նոր ստեղծված պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությունը և այլ գերատեսչություններ։ Բոլոր այդ գերատեսչությունները, բացառությամբ գյուղատնտեսության մինիստրությունը, ֆինանսավորվում և պլանավորվում են միութենական համապատասխան կազմակերպությունների կողմից։ Միայն գյուղատնտեսության մինիստրությունն է միջոցներ ստանում հանրապետական մարմիններից և ենթակա է դրանց։ Մինչդեռ գյուղատնտեսությունը կարիք ունի մելիորացիայի, շինարարության, սակայն հարակից այդ ճյուղերը պլանավորվում են ուղղահայաց սկզբունքով, որը ոչ միշտ է համընկնում կոլտնտեսությունների ու սովխոզների պահանջմունքներին։ Այդպես էլ ստացվում է՝ կարծես թե բոլորի խնդիրն էլ մեկն է, իսկ պլանը՝ առանձին-առանձին։ Միասնական համակարգը փաստորեն մասնատված է, բաժանված իրարից մեկուսացված ինքնուրույն միավորումների։

Կյանքը ինքնին թելադրում է հետևությունը. բոլոր այդ ֆինանսական միջոցները և նյութական ռեսուրսները հարկ է կենտրոնացնել հանրապետության Մինիստրների խորհրդում, և միայն նա կարող է այդ միջոցները համամասնաբար բաշխել գյուղատնտեսության հետ առնչվող ճյուղերի միջև, որպեսզի բոլորի գործունեությունն ուղղվի մեկ նպատակի՝ վերջնական արդյունքին։ Անշուշտ, դրա հետ մեկտեղ, արտադրանքի որոշակի մասը, ըստ պլանի, պետք է հատկացնել ընդհանուր միութենական ֆոնդերին։

Այսպիսով, ագրոարդյունաբերական կոմպլեքսը հարկ է դիտել ոչ թե իբրև առանձին, իրարից մեկուսացված ճյուղեր, այլ սոցիալիստական էկոնոմիկայի միասնական, փոխկապակցված հատված։ Միայն կոմպլեքսի բոլոր ճյուղերի զարգացման նպատակային կառավարումը հնարավորություն կընձեռի խուսափել դրա բաղկացուցիչ մասերի անհամամասնությունից, բոլոր ջանքերը կենտրոնացնել վերջնական նպատակին հասնելու, պարենի նկատմամբ՝ բնակչության և հումքի նկատմամբ՝ արդյունաբերության պահանջմունքների առավել լրիվ բավարարման համար։

Այդ նույն նպատակին են ծառայում նաև արտադրությունում մասնագիտացման և համակենտրոնացման խորացումը, տնտեսական լծակների և խթանների, ագրոարդյունաբերական կոմպլեքսի օղակների միջև տնտհաշվարկային հարաբերությունների կատարելագործումը, կոմպլեքսի բոլոր ճյուղերում գիտատեխնիկական առաջընթացի արագացումը։ Կասկածից վեր է, որ միայն վերոհիշյալ բոլոր պրոբլեմների կոմպլեքսային լուծումը կապահովի ագրոարդյունաբերական համալիրի հետագա վերելքը, սոցիալիստական գյուղատնտեսության առջև ծառացած խնդիրների հաջող լուծումը։

---

Գաղափարախոսական պայքարի

ճակատներում

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱՆ

**Վ. Ա. ՄԻՐԶՈՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ արդի բուրժուական տեսությունների քննադատական վերլուծությունը մարքս-լենինյան տեսության հրատապ խնդիրներից է։ Գիտատեխնիկական հեղափոխության ծավալումը, սոցիալական կյանքի նոր երևույթները առավել շեշտում են այդ խնդրի կարևորությունը։

Մարքսիստական քննադատական գրականության մեջ որպես կանոն առանձնացվում են բուրժուական մտքի երկու հիմնական ուղղություններ՝ տեխնոկրատական-լավատեսական, որի ներկայացուցիչներն ուղղակի հուշակում են սոցիալական անխտիր բոլոր պրոբլեմների լուծում՝ բացառապես շնորհիվ գիտատեխնիկական հետագա առաջընթացի, և հակատեխնոկրատական-հոռետեսական, որը գիտության և տեխնիկայի հետագա զարգացումը հանգեցնում է մարդու կործանման, սուր քննադատության ենթարկում տեխնոկրատներին, գուշակում մռայլ ապագա։ Գրականության մեջ մանրամասն ուսումնասիրված են այս ուղղությունների մեթոդաբանական հիմքերը և հիմնական դրույթները։ Ավելի պակաս է ուսումնասիրված «երրորդ»՝ այսպես կոչված «տեխնոլոգիական խոհեմության» ուղղությունը, որի ներկայացուցիչները փորձում են խուսափել նշված երկու ուղղությունների ծայրահեղություններից։

«Տեխնոլոգիական խոհեմության» կողմնակիցները փաստորեն հարում են չափավոր լավատեսությանը, քանի որ դրական են գնահատում գիտատեխնիկական առաջընթացի հեռանկարները սոցիալական զարգացման առումով։ Այնուամենայնիվ, նրանց դիրքորոշումը շատ ավելի գնահատելի է ընդհանուր մեթոդաբանական տեսակետից։ Մի կողմից, եթե «տեխնոլոգիական լավատեսության» կողմնակիցները ապագայի տեխնոլոգիացված դրախտի մասին իրենց կանխագուշակումներով, ինչպես դա անում է, օրինակ, Օդրիան Բերին իր Հաջորդ տասը հազար տարին (Նյու-Յորք, 1974) գրքում, ի վերջո բթացնում են մարդու զգոնությունը, ապա «տեխնոլոգիական խոհեմության» կողմնակիցները ձգտում են սթափ կերպով գնահատել իրավիճակը, զերծ պահել մարդուն տեխնոկրատական պատրանքներից։ Մյուս կողմից, եթե «տեխնոլոգիական հոռետեսները»՝ Հերբերտ Մարկուզեն, Ժակ Էլյուլը, Լուիս Մեմֆորդը և ուրիշներ, նկարագրելով տեխնիկական առաջընթացից բխող բացասական երևույթները, մռայլ հեռանկար են հրամցնում մարդուն և հուսահատ անում, ապա «տեխնոլոգիական խոհեմության» ներկայացուցիչները այդ բացասական երևույթները համարում են անցողիկ, եղած և գալիք պրոբլեմները՝ լուծելի, պայմանով, որ մարդը գիտակցի և ձգտի լուծել դրանք։



Գիտատեխնիկական հեղափոխության ծավալմանը զուգընթաց Արևմուտքի հասարակական միտքը ավելի հաճախ է զբաղվում գլոբալ, համապարփակ սոցիոլոգիական տեսությունների կառուցման փորձերով։ Պատահական չէ, որ 60-ական թվականներից ասպարեզ եկան նման հավակնություն ունեցող «տեխնոտրոնային հասարակության», «հետինդուստրիալ հասարակության», «գերինդուստրիալ հասարակության» վերաբերյալ տեսությունները։ Դրանցից նորագույնը ամերիկացի հայտնի սոցիոլոգ Օլվին Թոֆլերի «երրորդ ալիքի քաղաքակրթության» տեսությունն է։

Առհասարակ, համապարփակ պատմասոցիոլոգիական տեսությունների ստեղծման փորձերի աշխուժացումն արդի բուրժուական սոցիոլոգիայում առաջին հայացքից զարմանալի է թվում։ Բանն այն է, որ նման փորձերը շատ ավելի բնութագրական էին բուրժուական սոցիոլոգիային նրա ձևավորման պրոցեսում՝ անցյալ դարի վերջին։ Բուրժուական սոցիոլոգիական մտքի դասականներ Օգյուստ Կոնտը, Հերբերտ Սպենսերը, Մաքս Վեբերը, Էմիլ Դյուրկհեյմը առաջին հերթին ձգտում էին համընդհանուր տեսական կառույցների։ Դրանք հետագայում փլուզում ապրեցին։

XX դարի 20-ական թվականներից բուռն զարգացում ապրեց էմպիրիկ սոցիոլոգիան, էմպիրիզմի հորձանքը ստվերարկեց ընդհանուր սոցիոլոգիական տեսությունների կառուցման միտումները։

Արդի բուրժուական սոցիոլոգիայում էական դեր են կատարում հետևյալ երեք գործոնները։ Նախ, բուն գիտատեխնիկական հեղափոխության համապարփակ, համընդհանուր բնույթը։ Գիտատեխնիկական հեղափոխության փիլիսոփայական և սոցիոլոգիական իմաստավորումը անխուսափելիորեն պահանջում է համընդհանուր ազդեցության ընդգրկում։ Երկրորդ կարևոր գործոնը կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումն է գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, հատկապես այնպիսի նոր երևույթների առաջացումը, ինչպիսիք են էներգետիկական ճգնաժամը, էկոլոգիական պրոբլեմները, բուրժուական հասարակության քաղաքական կառուցվածքի ճգնաժամը և այլն։ Ակներև է, որ նման երևույթների իմաստավորման, հիմնական պատճառների մեկնաբանման փորձերն արևմտյան գիտնականներին պարտադրում են համապարփակ բացատրություն։ Ի վերջո երրորդ գործոնը գաղափարախոսական պայքարի սրումն է։ Բուրժուական տեսաբանները, կամա թե ակամա կատարելով իրենց ներկայացվող սոցիալական պատվերը, փորձում են հակադրվել մարքսիզմին, մասնավորապես գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական դերի մարքսիստական գնահատականին, առաջադրում են «սոցիալիզմի մոդելի» նորանոր տարբերակներ։

Արդի սոցիոլոգիական մտքի կենտրոնական պրոբլեմը մարդկային քաղաքակրթության զարգացման ներկա փուլի առանձնահատկություններն են, գիտատեխնիկական հեղափոխության նշանակության գնահատումը մարդկության ներկա պրոբլեմների ու ապագայի ձևավորման տեսակետից։ Ի՞նչ են բերում մարդկությանը գիտության և տեխնիկայի այսօրվա աննախընթաց զարգացումը, վաղվա առավել զարմանահրաշ գիտատեխնիկական հասումները, հասարակական ու անձնական կյանքի հարաճուն տեխնիկացումը։ Ինչպե՞ս են դրանք անդրադառնում մարդու հոգևոր և ֆիզիկական զարգացման, մարդկանց միջև փոխհարաբերությունների, բարոյական նորմերի, իդեալների վրա և այլն։ Նմանօրինակ հարցերը դարձել են հույժ կարևոր և լրջորեն հուզում են ժամանակակից մարդուն։ Զարմանալի չէ, որ այդ հարցադրումները բնութագրական են նաև արդի բուրժուական սոցիոլոգիայի համար։

«Տեխնոլոգիական խոհեմության» ներկայացուցիչները, ինչպես արդեն նշվեց, զերծ են տեխնոկրատական պատրանքներից և ձգտում են սթափ գնահատել գիտության և տեխնիկայի ո՛չ միայն դրական հնարավորությունները, այլև բացասական, անցանկալի հետևանքները։ Այսօր դժվար չէ համոզվել, որ, իրոք, գիտությունը և տեխնիկան ունեն պոտենցիալ մեծ վտանգավորություն, հատկապես ռազմական տեխնիկայի, մասսայական ոչնչացման զենքի նորանոր տեսակների արտադրության առումով։ Գիտության, տեխնիկայի, արտա-

դրաուժերի առաջընթացը ընդլայնել է մարդու ո՛չ միայն ստեղծարար, այլ նաև ավերիչ գործունեության հնարավորությունները: Արևմտյան շատ փիլիսոփաներ, սոցիոլոգներ, բնագետներ, հասարակական գործիչներ գիտակցում են այս վիճակը և ահազանգում են մարդկության սպառնալիքի մասին:

Ամերիկյան սոցիոլոգ և հոգեբան Էրիխ Ֆրոմը իր Բանական հասարակություն գրքում այդ տագնապն արտահայտել է համարյա աֆորիզմի սեղմությամբ. «Այսօր մարդկությունը մի ճամփաբաժնում է կանգնած, որտեղ սխալ քայլը կարող է վերջինը լինել... Մարդն օժտված է մեծագույն տեխնիկական հզորությամբ՝ առանց այն տնօրինել կարողանալու իմաստության» (E. Fromm. The sane society, Greenwich (Conn.), *1966*, p. *309, 312*): «Հզորության վտանգների» մասին է նախազգուշացնում ֆրանսիացի սոցիոլոգ Ժորժ Ֆրիդմանն իր Հզորություն և իմաստություն գրքում, մատնանշելով տեխնիկական զարգացման շնորհիվ մարդու ձեռք բերած կարողությունների և նրա բարոյական զարգացման միջև օրեցօր սպառնալիորեն խորացող անհամաչափությունը: «Ճշմարիտն այն է, սակայն,— գրում է նա,— որ մեր օրերի մարդը շատ հաճախ կարծես «տեխնիկայի մոլագար է» և դժվար է այսօր կանխատեսել, թե իր այդ մոլության մեջ նա որտեղ կանգ կառնի» (G. Friedman, La puissance et la sagesse. Paris, *1972*, p. *346*): Ֆրիդմանը հեռու է տեխնոֆոբիական մտայնությունից, չի առաջարկում կասեցնել գիտատեխնիկական առաջընթացը: Ընդհակառակը, միայն գիտության և տեխնիկայի հետագա առաջընթացն է, ըստ նրա, հնարավորություն ընձեռում լուծել ներկայիս սուր սոցիալական պրոբլեմները: Սակայն Ֆրիդմանը իրավացիորեն դեմ է նաև տեխնոկրատական և սցիենտիստական պատրանքներին: «XX դարի գիտատեխնիկական հեղափոխությունը,— շեշտում է նա,— մարդկության այն մեծագույն բարեբախտությունն է, որպիսին նա երբեք չի ունեցել: Միջուկային էներգիայի հայտնագործումը, ավտոմատացումը, մոլորակի ազգաբնակչության աճի կարգավորման ու առատության ապահովման հնարավորությունը— պատմության մեջ առաջին անգամ մարդուն տրամադրում են իր սեփական բախտը տնօրինելու միջոցներ: Սակայն նրան կործանել սպառնացող վտանգը հավասարազոր է իր հզորությանը» (էջ 352): «Հզորությունն առանց իմաստության,— գրում է Աուրելիո Պեչեին,— մարդուն դարձրել է ժամանակակից բարբարոս, որը տիրապետում է ահռելի ուժի, սակայն նվազագույն պատկերացում իսկ չունի, թե ինչպես այն կիրառել» (А. Печчеи. Человеческие качества, пер. с англ., М., 1980, стр. 44):

Իրոք, մարդկությունն այսօր հրեշավոր քանակի ու որակի ռազմատեխնիկական հզորություն ունի և քաղաքական անխոհեմությունը կարող է նրան հասցնել բնաջնջման: Այս ցավալի եղելությունը չի կարելի անտեսել: Աշխարհի առաջադեմ հասարակայնությունը, ոչ միայն գիտնականներն ու սոցիոլոգները, այլև շարքային մարդիկ այսօր ահազանգում են այդ մասին և քաղաքական զգոնության կոչ են անում: Սակայն ինչո՞ւ է այդպես ստացվել և ո՞վ է մեղավոր ստեղծված դրամատիկ վիճակի համար: Մի՞թե մարդկությունն իրոք ընդամենը հեգելյան «համաշխարհային կամքի» ձեռքին կույր գործիք է: Մի՞թե իսկապես տեխնիկան օժտված է մի հրեշավոր դեմոնիզմով և կործանելու է մարդուն: Պատասխանել, թե մարդն ինքն է մեղավոր, թե նա չի գիտակցում իր դերն ու պատասխանատվությունն այնպես, ինչպես պատասխանում են արևմտյան որոշ հեղինակներ, նշանակում է չտեսնել իրական պատճառները: «Մարդը» վերացական չէ, այլ կոնկրետ հասարակական պայմանների ծնունդ: Վերջին հաշվով այս պայմաններն են ծնում մարդու կարողությունն ու անկարողությունը, նրա կուտակած հզորությունը չարի կամ բարու նպատակով կիրառելը: Եվ եթե այսօր որոշ արևմտյան քաղաքական գործիչներ դեմ չեն «լոկալ միջուկային պատերազմին» և արդեն իսկ դրա պատրաստությունն են տեսնում, ապա «մեղավորը» միանգամայն կոնկրետ է՝ իմպերիալիզմի ագրեսիվ էությունը, ամերիկյան ռազմաարդյունաբերական կոմպլեքսի խելագար նկրտումները, իր դարն ապրող կապիտալիզմի բուն գոյությունը: ՍՄԿԿ XXVI համագումարը շեշտեց պատերազմի սպառնալիքի թուլացման, սպառազինություն-



ների մրցավազքի սանձահարման համար պայքարի բացառիկ նշանակությունը և հրատապությունն արդի փուլում. «Բանն այն է, որ ռազմական տեխնիկայի զարգացման մեջ արագ և խոր փոփոխություններ են տեղի ունենում: Մշակվում են զենքի, և առաջին հերթին մասսայական ոչնչացման զենքի, որակապես նոր տեսակներ: Այնպիսի տեսակներ, որոնք կարող են դրանց վերահսկումը, ուրեմն և դրանց համաձայնեցված սահմանափակումը բացառիկ դժվարին, գուցե և անհնարին գործ դարձնել: Սպառազինությունների մրցավազքի նոր փուլը կխախտի միջազգային կայունությունը, մեծապես կուժեղացնի պատերազմի առաջացման վտանգը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 42): Նման սթափ գնահատականին, մեր պետության բազմաթիվ կոնկրետ առաջարկներին՝ դադարեցնել միջուկային զենքի արտադրությունը, կրճատել արդեն եղած պաշարները մինչև դրանց իսպառ վերացումը, միջուկային զենքի կիրառումը որակել իբրև մարդկության հանդեպ ծանրագույն ոճիր և այլն, ԱՄՆ-ի կառավարությունը պատասխանում է զենքի նորանոր տեսակների արտադրությամբ, մարդկությանը ուղղակի հրելով նեյտրոնային արհավիրքի անդունդը:

Անշուշտ, գիտատեխնիկական հեղափոխության հարուցած պրոբլեմների լուծումը ժամանակակից մարդուց պահանջում է համապատասխան աշխարհայացքային դիրքորոշում: Եվ հասկանալի է «գլոբալ պրոբլեմների փիլիսոփայությունը» ձևակերպելու արևմտյան փիլիսոփաների և սոցիոլոգների ձգտումը: Համաձայն ամերիկացի սոցիոլոգ Վիկտոր Ֆերկիսի, այն պետք է հիմնըված լինի երեք սկզբունքների՝ նատուրալիզմի, հոլիզմի, իմանենտիզմի վրա. «Նոր փիլիսոփայությունը նատուրալիստական է, քանի որ հիմնվում է այն դրույթի վրա, որ մարդը բնության մասն է, և մարդու փրկությունն այս փաստի հետ համաձայնեցված գործելն է: Նոր փիլիսոփայությունը հոլիստական է, քանի որ հաշվի է առնում այն փաստը, որ մարդու աշխարհում ամեն ինչ՝ երկրագունդը, որի վրա նա բնակվում է, հասարակությունը, որում նա ապրում է և հենց ինքը մարդը կազմում են մեկ միասնական համակարգ: Վերջապես, նոր փիլիսոփայությունը իմանենտիստական է, քանի որ ելնում է այն բանի ըմբռնումից, որ մարդկային հասարակության և մարդու բնույթի վերակերտումը երբեք չի կարող տրվել դրսից կամ «ի վերուստ», այլ կարող է ծագել այն բանից, ինչը արդեն գոյություն ունի» (V. Ferkiss. The future of technological civilization. N. Y., *1974*, p. *89*):

Իրոք, այսօր ակնհայտ է, որ բնության՝ իբրև սոսկ հումքի անսպառելի շտեմարանի մասին նախկին պատկերացումները սխալ են, ապակողմնորոշող: Շրջապատող միջավայրի համընդհանուր ապականումը, հումքի, էներգետիկ պաշարների սպառման վտանգը վկայում են բնության նկատմամբ նախկին վերաբերմունքի շարունակման արատավորությունը: Դժվար է, իրոք, գերագնահատել գլոբալ պրոբլեմների ողջ լրջության գիտակցման կարևորությունը, գիտնականների, քաղաքական ղեկավարների և առհասարակ մարդկանց մոտ բարձր պատասխանատվության ձևավորման նշանակությունը: Սակայն այդ ամենը չի հիմնավորում Ֆերկիսի հետևյալ եզրակացությունը. «Հաջորդ հարյուրամյակին անհրաժեշտ նոր փիլիսոփայությունը պետք է լինի հավասարապես ընդունելի և հասկանալի թե՛ Արևելքի և թե Արևմուտքի համար, թե՛ զարգացած և թե զարգացող երկրների համար: Մենք մուտք ենք գործում համաշխարհային ընդհանրության դարաշրջանը, մի դարաշրջան, ուր բովանդակ քաղաքական և փիլիսոփայական համաձայնեցվածությունը և՛ հնարավոր է, և՛ անհրաժեշտ» (էջ 99): Թեև Ֆերկիսն իր առաջարկներն անվանում է «ուտոպիա առանց ուտոպիզմի», սակայն դրանով թերևս ավելի ցայտուն է դառնում մեկ միասնական, ունիվերսալ փիլիսոփայության ձևավորման փորձերի սնանկությունը:

Վ. Ֆերկիսը գիտակցաբար նվազեցնում է այն էական տարբերությունները, որոնք կան գլոբալ պրոբլեմների լուծման սոցիալիստական և կապիտալիստական երկրների մոտեցման մեջ: Անշուշտ, գիտության և տեխնիկայի հարուցած պրոբլեմները սոցիալիզմի և կապիտալիզմի պայմաններում ունեն որոշ ընդհանրություն: Եվ ավելին, շատ պրոբլեմների լուծումը անհրաժեշտաբար

պարտադրում է տարբեր երկրների ջանքերի միավորում։ Այնուամենայնիվ, դա չի վերացնում աշխարհայացքային, փիլիսոփայական սկզբունքային տարաձայնությունները տարբեր սոցիալական սիստեմներին պատկանող երկրների, տարբեր գաղափարախոսությունների միջև։ Բացի այդ, զարգացող երկրներում մի շարք պրոբլեմներ՝ տնտեսական անհամաչափ զարգացումը, գործազրկությունը, սննդամթերքի պակասը, քաղաքական անկայունությունը և այլն, ուղղակի հետևանք են զարգացած կապիտալիստական երկրների նեոգաղութատիրական քաղաքականության։ Ներկայումս զարգացող երկրներն իրավամբ պահանջում են նոր միջազգային կարգի հաստատում, ձգտելով տնտեսական և քաղաքական իրավահավասարության։ Նման պայմաններում ընդհանուր և բոլորի կողմից ընդունելի փիլիսոփայությունը կասկածելի է, քանի որ իմպերիալիզմը չի փոխել իր գիշատչական էությունը, իսկ միջիմպերիալիստական հակասությունները առավել են սրվում գիտատեխնիկական հեղափոխության հետևանքով։

Սոցիալական զարգացման առանձնահատկությունները, ապագա հասարակության ձևավորման ուղիները կազմում են մյուս խումբ պրոբլեմները, որոնք արդի սոցիոլոգիական մտքի տեսադաշտում են։ «Տեխնոլոգիական խոհեմության» ներկայացուցիչները սուր քննադատում են «ինդուստրիալ հասարակության» ջատագովներին, բուն ինդուստրիալիզմի գաղափարախոսությունը, հասարակական կյանքի կազմակերպման և կառավարման տեխնոկրատական սկզբունքները։ Իբրև ինդուստրիալիզմի քննադատություն Արևմուտքում լայնորեն տարածվել են «հետինդուստրիալ հասարակության» տարբեր մոդելները ,«հանուն սոցիալական ինդիկատորների» շարժումը, «տեխնիկայի գնահատման», «էկզիստենցիալ պլանավորման» և այլ տեսությունները։ Դրանք վկայում են բուրժուական սոցիոլոգների ձգտումը՝ ըմբռնել տեխնիկայի հարաճուն դերը հասարակության և մարդու այսօրվա կյանքում, վերագնահատել տեխնիկական զարգացումը սոցիալական զարգացման տեսակետից, առաջարկել ծրագրեր, որոնք հնարավորություն կընձեռեն գիտատեխնիկական և տնտեսական առաջընթացը ենթարկել մարդու զարգացմանը։ Արևմտյան շատ գիտնականներ չեն թաքցնում, որ տեխնոկրատական տրամադրությունները տարածված են բուրժուական հասարակությունում, մարդկային զարգացումը ենթարկված է տեխնիկական առաջընթացին, փորձում են ձևակերպել տեխնիկայի հասարակական ֆունկցիաների նոր գնահատական։

«Տեխնիկայի գնահատման փորձերի մեծագույն մասը,— վկայում է ամերիկացի սոցիոլոգ Հենրիկ Սկոլիմովսկին,— ապակողմնորոշող են, քանի որ դրանք բավարար լրջությամբ չեն մոտենում բուն գնահատման գաղափարին։ Այլ կերպ ասած, տեխնիկայի ճշմարիտ գնահատականը պետք է լինի առավելապես քննադատական և ոչ թե ջատագովական... Թերևս սխալված չենք լինի, ասելով, որ շատ հաճախ տեխնիկայի գնահատումները խաբուսիկ են սոցիալական և մարդկային տեսակետից, քանի որ, չնայած «սոցիալական ասպեկտների» հասցեին փքուն խոսքերին, դրանք իրենց ողջ բովանդակությամբ, մեթոդաբանությամբ և եզրակացություններով տեխնիցիստական են։ Տեխնոկրատական ձեռնարկում, իրագործված տեխնոկրատների կողմից»։

Հ. Սկոլիմովսկին միանգամայն համոզված է, որ «տեխնիկայի գնահատումը ամբողջովին պետք է լինի տեխնիկայի սոցիալական-քննադատությունը», ինդուստրիալ հասարակության ապագայի համար բախտորոշ մի ձեռնարկում։ Ուստի «այս քննադատությունը չի կարելի թողնել նրանց ձեռքում, ովքեր իրենք են պատասխանատու հզոր, սակայն երբեմն մահաբեր տեխնիկայի համար»։

Ամերիկյան սոցիոլոգի այս քննադատությունը միանգամայն բնութագրական է արդի բուրժուական սոցիոլոգիայում տեխնիկայի և տեխնիկական զարգացման նպատակների դեմ ուղղված տեսական հոսանքի համար։ Ինդուստրիալիզմի քննադատները արձանագրում են կապիտալիստական հասարակարգի բազում արատները. բյուրոկրատական հսկայական մեքենան, որն անզոր է դարձնում մարդուն. «ուղեղ լվացող» ռեկլամը, որ մարդուն վերածում է



անառողջ սպառման զոհի, անկուշտ և ամենակուլ «սպառող արարածի». ծայրահեղ շռայլությունը, ցոփ կյանքը, այլասերող զբաղմունքները մի կողմում, ծայրահեղ չքավորությունը, գործազրկությունը, հուսակտուր գոյությունը մյուս կողմում։ Ինդուստրիալիզմի դարաշրջանի գրավիչ խոստումները չիրականացան, արձանագրում է Է. Ֆրոմը, «և ավելի ու ավելի մեծ թվով մարդիկ սկսում են գիտակցել, որ բոլոր ցանկությունների անսանձ բավարարումը ամենևին էլ բարեկեցություն կամ երջանկություն չէ և ոչ էլ անգամ հաճույքի գագաթնակետը։ Մեր բախտը ազատ տնօրինելու երազանքն ի դերև ելավ, երբ մենք գիտակցեցինք, որ վերածվել ենք բյուրոկրատական մեքենայի պտուտակի, մեր մտքերով, զգացմունքներով և ճաշակներով հանդերձ, որոնք մանիպուլյացիայի են ենթարկվում պետության, արդյունաբերության և մասսայական հաղորդակցման միջոցների կողմից» (E. Fromm. To have or to be? N. Y., *1976*, p. *2*)։ «Տեխնոկրատական ֆաշիզմը անխուսափելիորեն դեպի կործանում է տանում,— զգուշացնում է Ֆրոմը։— Ապահումանիզացված մարդը կդառնա այն աստիճանի անպատասխանատու, որ ի վերջո անկարող կլինի ապահովել հասարակության կենսունակությունը, իսկ ավելի վաղ նա անկարող կլինի ձեռնպահ մնալ միջուկային կամ կենսաբանական զենքի մահացու կիրառումից» (էջ 197)։

Ի՞նչ են առաջարկում ինդուստրիալիզմի այս քննադատները։ Նրանց բազմաթիվ ծրագրերում հանդիպում են առաջարկություններ, երաշխավորություններ, որոնք իբր ապահովելու են «նոր մարդու», «նոր հասարակության», «հետինդուստրիալ հասարակության», «նոր բարոյականության» ձևավորումը։ Սակայն ոչ մի մեղադրանք չկա կապիտալիստական արտադրահարաբերությունների դերի, մասնավոր սեփականատիրության և բուրժուական հոգեբանության հասցեին այն արատների համար, որոնք այդպես վառ կերպով արձանագրվում են։ Զարմանալի չէ, որ այդ ծրագրերը, թեպետ պարունակում են առանձին հետաքրքրական դիտողություններ, սկզբունքորեն ուտոպիստական են, անիրագործելի կապիտալիզմի պայմաններում։ «Նոր մարդու» ձևավորումը, ինչի մասին շատ են գրում Է. Ֆրոմը, Ա. Պեչեին, Ժ. Ֆուրաստիեն, Ժ. Ֆրիդմանը և «մարդաբանական հեղափոխության» մյուս կողմնակիցները, անհնարին է առանց կապիտալիստական հասարակարգի հեղափոխական վերափոխման։

Ֆրանսիացի սոցիոլոգ Ժան Ֆուրաստիեն, շարադրելով «հետինդուստրիալ հասարակության» անցման իր ծրագիրը, Բաց նամակ չորս միլիարդ մարդու գրքում առանձնացնում է կուլտուրայի այն չորս արտատեխնիկական տարրերը, «մտքի չորս մեծ բնագավառները», որոնք կարող են հզոր պատնեշ լինել ինդուստրիալիզմի ամենակուլ տարերքի դեմ։ Դրանք են, նախ՝ արվեստը, առհասարակ մարդու զգայական-հուզական կյանքը, որը ենթակա չէ տեխնիկատնտեսական հաշվարկների, ապա՝ բարոյականությունը, որը զորավիգ է մարդուն հարաճուն անտեղյակության և աներաշխավորվածության պայմաններում, օգնում է նրան հաղթահարել «կամքի կաթվածը», երրորդ՝ փիլիսոփայությունը, որն ստեղծում է աշխարհի ամբողջական պատկերը, սինթեզում առանձին գիտությունների գիտելիքը, չորրորդ՝ կրոնը, որը ոգևորում, հուսադրում է մարդուն անիմանալիի դեմհանդիման։ Ըստ Ֆուրաստիեի, փիլիսոփայությունը և կրոնը կողմնորոշում են մարդուն, պատասխանում են մարդկային կեցության հավիտենական հարցերին՝ հանուն ինչի, ի սեր ինչի։ Չմերժելով արվեստի, բարոյականության և փիլիսոփայության իսկապես կարևոր կարգավորիչ դերը մարդու անձնական և հասարակական կյանքում, մենք լիովին հիմք ունենք հարցնելու, թե արդյո՞ք հնարավոր է սոսկ հոգևոր կյանքի այդ դրսևորումներով հաղթահարել ինդուստրիալիզմի գաղափարախոսությունը, երբ անձեռնմխելի է մնում այն օբյեկտիվ իրականությունը, որի ծնունդն է այն։

Ինչպե՞ս է պատասխանում այդ հարցերին Օլվին Թոֆլերն իր Երրորդ ալիքը գրքում, որ Արևմուտքում ներկայումս լայն հետաքրքրություն է հարուցել։ Ստվարածավալ այս գրքի հենց առաջին տողերից Թոֆլերը հակադրվում է աշխարհի կործանման, մոտալուտ ահեղ դատաստանի մասին գուշակումներին,

քայքայվում են»: «Առավել հիմնարար քաղաքական հարցը ոչ թե այն է, թե ով է վերահսկելու ինդուստրիալ հասարակության վերջին օրերը, այլ այն, թե ով է ձևավորելու նոր քաղաքակրթությունը, որն արագորեն գալիս է փոխարինելու ինդուստրիալ հասարակությանը» (էջ 32, 33):

Սա, իհարկե, կարևորագույն հարցերից է: Ո՞վ, հասարակական ո՞ր շերտը, քաղաքական ո՞ր ուժն է իրագործելու անցումը դեպի նոր քաղաքակրթություն: Թոֆլերից պարզորոշ պատասխան դժվար է ստանալ: Եթե ապագայի համար «գերպայքարը» մղվում է հին, իր դարն ապրող ինդուստրիալիզմի ջատագովների և դրա հակառակորդների միջև, ապա ի՞նչ դեր են խաղում այստեղ դասակարգային շահերը, աշխարհայացքային դիրքորոշումները: Եթե Թոֆլերի միտքն այն մասին, թե կուսակցությունների մրցակցությունը հանուն պետական իշխանության «նման է խորտակվող «Տիտանիկի» վրա երևակայական տախտակամածային ավագների լեզվակռվին», դիպուկ է, ասենք, հենց ԱՄՆ-ի պետական ղեկի մոտ հերթագայվող կուսակցությունների համար, ապա պարզ չէ՞, որ դա առաջին հերթին հետևանք է նրանց դասակարգային շահերի նույնության: Եվ, առհասարակ, ինչո՞ւ է ինդուստրիալիզմը կենսունակ, ինչպե՞ս է, որ դեռ կան ինդուստրիալիզմի կողմնակիցներ, եթե Թոֆլերի «երրորդ ալիքը» իր հետ բարիք է բերում անխտիր բոլորի համար:

Այս նոր տեսությունը ևս մնում է ընդամենը որպես կապիտալիստական հասարակությունը գիտության և տեխնիկայի նվաճումների շնորհիվ բարենորոգելու բուրժուական սոցիոլոգների սին հույսերի վկան:

Դա է էականը, ամենագլխավորը նման տեսություններում, եթե կարողանանք վերանալ դրանց քննադատական պաթոսի պաճուճանքից և գերլավատեսական պատրանքներից: Այդ հիմնական նպատակն է թաքնված թե՛ «ինդուստրիալիզմի» արատների խարազանման և թե «նոր» հասարակության բարեմասնությունների գովերգման հիմքում: Նման «բուրժուա-սոցիալիստներին» դիպուկ գնահատել են Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը դեռևս Կոմունիստական կուսակցության մանիֆեստում. «Բուրժուազիայի որոշ մասը ցանկանում է հասարակական ախտերը բուժել նրա համար, որպեսզի ամրապնդի բուրժուական հասարակության գոյությունը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, Երևան, 1972, էջ 172):

Բուրժուական սոցիոլոգիական միտքը ընդհանուր առմամբ ճիշտ է արձանագրում այն անցումային շրջանը, որ ներկայումս ապրում է մարդկությունը: Անշուշտ ինքնին իրավացի է այն դատողությունը, թե գիտատեխնիկական առաջընթացի պատճառած բացասական երևույթներն անցողիկ են, և գիտությունն ու տեխնիկան սկզբունքորեն բարենպաստ են մարդու զարգացմանը: Սակայն բուրժուական հեղինակները չեն կարողանում և չեն ցանկանում ըմբռնել մարդկության ներկայիս անցումային շրջանի գլխավոր էությունը, ամենաէականը՝ անցումը հին, իր ապագայից զուրկ կապիտալիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայից դեպի հասարակական կյանքի կազմակերպման ավելի բարձր ձևը՝ կոմունիստական ֆորմացիան: Միայն այս փաստն ըմբռնելով մենք կարող ենք ճիշտ հասկանալ արդի գիտատեխնիկական հեղափոխության պատմական դերը, գնահատել այն իբրև օրինաչափ պատմական երևույթ, իբրև կոմունիստական հասարակությանը մարդկության համընդհանուր անցման գրավական:



# ՏԱՂԱՆԴԱՎՈՐ ՂԵԿԱՎԱՐԸ

ԱՇՈՏ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

**«Իվան Ֆեոդորովիչի հետ մենք ծանոթացել ենք ռազմաճակատում, հարավի արդյունաբերական կենտրոնների ազատագրման օրերին: Նա դեռ այն ժամանակ խոսում էր դոմնաների, մարտենների, գլանման արտադրամասերի վերականգնման մասին: Հիմա, գալով մեզ մոտ, Իվան Ֆեոդորովիչը շարունակ մասնակցում էր առավոտյան հանդիպումներին և տեղում լուծում ծագող պրոբլեմները: Նա հեղինակավոր, գործիմաց, խոշոր ղեկավար էր»:**

**Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ, «Վերածնունդ»**

Անցյալի փորձը դառնում է ներկայի սեփականությունը, ներծծվում այդ ներկայի մեջ, դառնում միս ու արյուն ոչ թե որպես սոսկ նախորդ աստիճան, այլ որպես Մեծ հոկտեմբերի, սոցիալիստական ապրելակերպի նվաճումների ամրակայման և հետագա զարգացման ընթացքում ստեղծված ու ամրապնդված միասնական ամբողջի բաղադրամաս:



Նոր մարդու կերպավորման ինչպիսի ռեալ հնարավորություններ էլ ընձեռի հասուն սոցիալիստական հասարակությունը, մենք միշտ պետք է հիշենք անցյալի և այն մարդկանց փորձը, ովքեր սոցիալիստական շինարարության առաջին տարիների ծանր պայմաններում նվիրաբերեցին իրենց կյանքը երկրի բարգավաճման գործին: Նրանց հիշատակը երբեք չի խամրի գալիք սերունդների սրտում:

Ավագ սերնդի ներկայացուցիչների պայծառ կերպարները ո՛չ միայն պետք է պահպանել հիշողության մեջ, այլև կրել հոգում, սրտում: Հիշատակը ներգործում է այն ժամանակ, երբ լավագույն ավանդույթները փոխանցվում են սերնդից սերունդ: Ռեալ պատմական իրադրությունն ուսումնասիրելով միայն կարելի է խոսել հիշատակի դաստիարակչական հարատևող նշանակության մասին:

Անցյալի փորձի շնորհիվ մարդը ոտք է դնում հասարակայնորեն նշանակալի բարոյական դիրքորոշման, իդեալների ձևավորման ոլորտի սոցիալական ակտիվության ավելի բարձր աստիճանի վրա: Խոսքը համակողմանի զարգացած, ներդաշնակ անձնավորության, մարդու կատարելագործման մարքսիստական գաղափարի մասին է, մարդ, որի համար թանկ պետք է լինի աշխարհի առաջին սոցիալիս-

վի տարվա ձմռանը դրանք մեծ հարստություն էին կոմունայի համար...

Իսկ Թևոսյանը դասախոսությունների էր վազում պիջակի գրպանները խցկած տետրակներով և լրջորեն հավատացնում էր, թե թուղթը տաքացնում է:

Հեշտ չէր սովորել և ձեռնարկություններում պրոպագանդիստական աշխատանք տանել: Բայց մի կողմ քաշվել կուսակցության կյանքից, Թևոսյանն այդ հնարավոր չէր համարում: Շուտով ավելի դժվար դարձավ. սկզբում նրան նշանակեցին շրջանի կազմակերպական բաժնի վարիչի տեղակալ, ապա ընտրեցին կուսակցության Զամոսկվորեցկի շրջկոմի անդամության թեկնածու, իսկ հետո՝ անդամ: Իր կյանքի այս շրջանի մասին Թևոսյանը ինքնակենսագրության մեջ գրել է. «...ժամանակի մեծ մասն անցկացնում էի կուսակցական աշխատանքում»:

Ռոզալիա Սամոյլովնա Զեմլյաչկան, որ այնպե՞ս ժլատ էր գովասանքում, այն ժամանակ բազմիցս խոսել է Թևոսյանի մասին որպես գերազանց կուսկազմակերպչի ու պրոպագանդիստի: Եվ միայն մերձավոր ընկերները գիտեին, թե որքան երկար էր Թևոսյանը նստում դասախոսությունների գրառումների և գրքերի առաջ. ողջ գիշեր առանց շաքարի մուգ թեյ էր խմում՝ դիմանալու, չքնելու համար...

Ակադեմիական դասընթացը Թևոսյանն ավարտեց 1927 թ. հունիսին: Առջևում դիպլոմային աշխատանքն էր: Նրան հուզում էին մետաղագործության հարցերը:

— Ուղարկեք ինձ «Էլեկտրոստալ» գործարան,— խնդրեց նա տեղաբաշխող հանձնաժողովին,— ցանկանում եմ պողպատ ձուլել սովորել:

Եվ նրան ուղարկեցին «Էլեկտրոստալ»: Երկու շաբաթ նա աշխատեց ձուլման կանավում, կես տարի որպես էլեկտրապողպատաձուլական արտադրամասի վարպետի օգնական և տարի ու կես՝ նույն արտադրամասի վարպետ:

Ավարտելով աշխատանքային օրը՝ նա լըվացվում էր, սառը ցնցուղ ընդունում, փակվում էր սենյակում և գրում էր: Դիպլոմային նախագծի պաշտպանությունը տեղի ունեցավ 1929 թ. փետրվարին: Մոսկվայի լեռնային ակադեմիայի դիպլոմանտ Ի. Ֆ. Թևոսյանը որակավորման պետական հանձնաժողովին էր ներկայացրել «Դնեպրի վրա, Եկատերինոսլավ քաղաքի մոտ գտնվող մետալուրգիական գործարանի հաշվարկն ու սարքավորումը» թեմայի ծավալուն մշակումը:

— Լուրջ նախագիծ է,— ասաց որակավորման հանձնաժողովի նախագահ Միխայիլ Ալեքսանդրովիչ Պավլովը,— համակողմանի հիմնավորված:

Հանձնաժողովը դրվատական կարծիք տվեց և որոշեց այդ մասին հայտնել Մոսկվայի լեռնային ակադեմիային:

...Նասումենկոն, որ 30 թվականի սկզբին էլեկտրապողպատաձուլական արտադրամասի հերթափոխի պետ էր, մի գավաթ գարեջրի շուրջ հավաքված ընկերների հետ հիշում է.

— Չէ՛ որ նա միայն գարնանը հայտնվեց: Բեդվինն էր (այդպես էին սիրով կոչում գործարանի այն ժամանակվա դիրեկտորին, որ եղել էր Աֆրիկայում) նրան ուղարկել: Որպես օգնական... Իսկ նա հայտնվեց, ուրեմն, և ասում է. «Ուղարկել են ձեզ մոտ սովորելու». «Արի,— ասում եմ,— տեսնենք ի՞նչ ինժեներ ես»: «Ինժեները՝ ինժեներ եմ,— պատասխանում է,— իսկ գործարաններում քիչ եմ աշխատել: Դրա համար էլ խնդրեցի, որ կրկին «Էլեկտրոստալ» ուղարկեն»:

Նասումենկոն խմեց, բերանը սրբեց.

— Հաշտ էինք իրար հետ... Ասեմ նաև, ամեն ինչ խելոքն ըմբռնում էր: Ասա միայն, անմիջապես կանի: Այո՜... բայց նրա գլխում միշտ մի նոր բան կար: «Իսկ ի՞նչ կլինի, եթե այսպես», «իսկ եթե այսպե՞ս» և միշտ ձգտում էր ինքը տնօրինել, կարգադրել: Տեսնո՞ւմ ես, բոյը կարճ է, իսկ բնավորությո՞ւնը: Կարողանում էր պահանջել ըստ ծառայության: Կարողանո՞ւմ էր: Եվ ոչ թե ուրիշ ջահելների պես՝ աղմկում, աղմկում, հրամայում է և միշտ առանց փորձի... ո՛չ: Նա գիտե՞ր... և երբ կես տարի անց նրան գլխավոր ինժեներ նշանակեցին, ես անմիջապես ասացի՝ արժանի՜ է... Ի դեպ, վարպետանալու համար նա ինձ շնորհակալություն հայտնեց:

Սեղանի մոտ նստեց ուշացած մի բանվոր:

— Թևոսյանի՞ մասին է խոսքը:

— Նրա մասին:

— Ահա՜: Իսկ դու նորությունն լսե՞լ ես, Նասումե՛նկո:

— Ի՞նչ նորություն:

— Թևոսյանն արդեն գլխավոր չէ.

— Ինչպե՞ս թե գլխավոր չէ: Ի՞նչ ես ասում: Հապա ի՞նչ է նա հիմա:

— Այդ չեմ ասի: Գիտեմ, որ գլխավոր չէ: Եվ կարծես թե մեկնում է ինչ-որ տեղ:

Նասումենկոն այլայլված, մեծ-մեծ ձեռքերում շուռ ու մուռ էր տալիս դատարկ գավաթը:

— Եվ իզո՞ւր,— վերջապես ասաց նա խուլ ձայնով:— Այո՛: Իզուր:

— Բայց ի՞նչ իմանաս, զո՞ւր է, թե զուր չէ: Մարդը գուցե գործով է մեկնում...

Թևոսյանը մեկնեց գործով:

Շքեղ վագոնի պատուհաններից արդեն երևում էին Նեգորելոյե կայարանը և սահմանադիր սյունը, կողքին՝ սրածայր սաղավարտով կարմիրբանակայինը:

Հարևան կուպեներից լսվում էր օտարալեզու աշխույժ խոսակցություն: Դիվանագետները՝ ճամփորդական կոստյումներով, կիսազինվորական տեսքով դիվանագիտական սուրհանդակները, թուխ, զուսպ տրանզիտային ուղևորները Հեռավոր Արևելքի երկրներից ըզգում էին իրենց ինչպես տանը այդ ոսկեզօծ կարմիր փայտյա վագոններում՝ ալ կարմիր թավշապատ դիվաններով: Նրանք հետաքրքրասիրությամբ նայում էին սովետական ինժեներներին: Հեգնանքով ժպտում էին: Անվայելչատես էին երևում «նոր աշխարհի քաղաքացիները». կոստյումը՝ պատրաստի հագուստեղենի խանութից, պլաշչը՝ նույնպես, և ի լրումն այդ ամենի՝ կեպկան:

Այն տարիներին դեռևս տեղի չէին ունենում ո՛չ գիտատեխնիկական մասնագետների փոխանակումներ, ո՛չ սպորտային փոխայցելություններ, ո՛չ տուրիստական էքսկուրսիաներ: Նեգորելոյեի վրայով արևմուտք էին ուղևորվում միայն սովետական երկրի սակավաթիվ դեսպանորդները: «Ոչի՞նչ, ոչինչ, ժպտացե՛ք,— զայրացած մտածում էր Թևոսյանը՝ նկատելով պճնազարդ օտարերկրացիների հեգնանքը,— ծիծաղում է նա, ով վերջինն է ծիծաղում»:

Եվ կրկին խոնարհվում էր գերմաներենի դասագրքի վրա: Թարմացնում էր ակադեմիայում ստացած գիտելիքները, թերթում ժամանակակից մետալուրգիային, Էսսենում գտնվող Կրուպի գործարանին վերաբերող գերմաներեն գրքերը: Նշումներ էր կատարում ընդհանուր տետրում, որ նախատեսված էր ճամփորդական տպավորությունների և արտասահմանյան փորձի մասին գրառումներ կատարելու համար:

Թևոսյանը գնում էր Գերմանիա:

Կուսակցությունը ձեռնարկել էր երկրի ինդուստրացմանը: Երիտասարդ պետության վառելիքաէներգետիկ արդյունաբերությանն անհրաժեշտ էին մետալուրգներ, բանիմաց, նորն ընկալելու ունակ մասնագետներ:

Խնդիր էր դրված յուրացնել արտասահմանյան ամենաառաջավոր ձեռնարկությունների փորձը, արագաթափ առաջ տանել մեր երկրի տեխնիկական պրոգրեսը, ապահովել այդպիսով ողջ տնտեսության թռիչքը: Վիթխարի, առաջնահերթ խնդիր:

Այս խնդիրը լուծելու նպատակով կուսակցության Կենտրոնական կոմիտեն արտասահման էր գործուղել երկու հարյուր երիտասարդ մասնագետների: Նրանցից թվում էր Իվան Ֆեոդորովիչ Թևոսյանը:

Ռուր և Էսսենը— գերմանական ռազմական հզորության միջնաբերդը, թնդանոթային արքա Կրուպի նստավայրը: Այն նույն Կրուպի, որի նախահայրերը, հաշվի առնելով Ղրիմի կամպանիայի դասերը, հասկացել էին, որ բրոնզե թնդանոթների ժամանակն անցել է, հասել է պողպատե զենքերի ժամանակը:

Կրուպի ինժեներները իր ժամանակին ակնդետ հետևում էին պողպատի ռուս հետազոտող Անոսովի որոնումներին ու փորձերին: Հավանաբար Անոսովի նման նրանք նույնպես այն կարծիքին էին, որ ռուսական պողպատյա թնդանոթը կարող էր փրկել Սևաստոպոլը: Բայց Անոսովին թույլ չէին տալիս կատարելագործել իր երախայրիքը: Իսկ Կրուպը հայտնվեց հենց այդտեղ: Նա ձեռքն առավ պողպատի բոլոր արտոնագրերն ու պատվերները:

Շուտով ցարական ձախավեր կառավարությունն ստիպված եղավ Կրուպից գնել պողպատյա թնդանոթներ և զրահահարական պողպատ...

Ծխապատ, վիթխարի Էսսենը փռված էր երկաթուղու շուրջը, ամենուր գործարանների, պահեստների, ապրանքատների աղյուսե գորշ շենքեր էին: Դրանց բարձր խողովակներից ելնում էր թանձր ծուխը: Թվում էր, թե ողջ քաղաքի կյանքը ենթարկված է դոմնային վառարաններին, ձուլարաններին, կաղապարման արտադրամասերին...

«Տպավորիչ է,— մտածում էր Թևոսյանը,— Կրուպը ինչ էլ լինի, բայց դու էլ հիմար մի լինի: Եթե պողպատի համար մղվող մենամարտում ցարական Ռուսաստանը առաջնությունը զիջեց, եթե դրա պատճառով մենք մինչև օրս ետ ենք մնում արտասահմանից, ապա եզրակացությունը մեկն է— պետք է, ինչպես հարկն է, թևքերը քշտած աշխատել»:

Ընդունելությունը Կրուպի գործարանի դիրեկտորի մոտ քաղաքավարի էր, ճոխ: Տանտերերը հոգացել էին, որ սովետական մասնագետների վրա ազդեցություն գործեն պատվավոր դիպլոմների կույտերով, տասնյակ մեդալներով, որ ստացել էր ֆիրման ամեն տեսակ ցուցահանդեսներում:

Թևոսյանն անհամբերությամբ կամենում էր անցնել գործին: Հարմար պահ ընտրելով՝ նա սկսեց խոսել գործարանային պրակտիկայից: Կրուպի մոտ նա մնալու էր մոտ մեկ տարի: Թևոսյանը մտադիր էր մեկ ու կեսից երկու ամիս կանգնել ձուլարանային կանավում, վեց ամիս ստաժավորվել որպես պողպատաէլեկտրաձուլման արտադրամասի վարպետի օգնական, իսկ մնացած ժամանակը օգտագործել ձեռնարկության աշխատանքի կազմակերպման ու մեքենայացման ուսումնասիրման համար:

— Դուք լավ գիտեք լեզուն,— հանոյախոսեց Թևոսյանին ֆիրմայի ներկայացուցիչը:

— Դուք շոյում եք իմ ինքնասիրությունը: Բայց ես կաշխատեմ ընդհանուր լեզու գտնել ձեր վարպետների ու բանվորների հետ,— ժպտալով պատասխանեց Թևոսյանը:

Արտասահմանյան ուղևորությունից վերադառնալուց հետո, 1931 թվականին, Թևոսյանին հանձնարարում են ղեկավարել «Սպեցստալ» միավորումը: Որակյալ պողպատի և երկաթաթերթերի գործարանների միավորման առաջին կառավարիչը վճռական պայքար է ծավալում հնամոլության, քարացած ավանդույթների դեմ: Նրա նախաձեռնությամբ և անմիջական ղեկավարությամբ արդյունաբերությունն ստանում է ածխաջրածնային, լեգիրացված, կոնստրուկցիոն պողպատներ: Պողպատի նոր մակնիշների համար մղվող պայքարը շարունակվում է չթուլացող տեմպերով: Ջերմակայուն, չժանգոտող մագնիսական և հակամագնիսական պողպատների յուրացումն ու արտադրությունը կապված են Թևոսյանի ակտիվ գործունեության հետ: Որակյալ մետալուրգիայի նախաձեռնողի, եռանդուն ղեկավարի՝ Թևոսյանի անունը հպարտությամբ արտասանեց Սերգո Օրջոնիկիձեն 1934 թվականին, կուսակցության XVII համագումարում:

Բուռն զարգացող բազմատեսակ մեքենաշինությունը նորանոր խնդիրներ է առաջադրում մետալուրգներին: Անհրաժեշտ է ինչ գնով լինի ձերբազատվել արտասահմանյան այնքան թանկ նստող մատակարարումներից, հաճախ ասում էր Թևոսյանը պողպատագործների հետ զրուցելիս: Հինգ տարիների ընթացքում «Սպեցստալ» միավորման մետալուրգների բանակը հիանալի հաջողությունների հասավ:

Բավական է ասել, որ 1934 թվականին արդյունաբերությունն ստացավ հնն անգամ ավելի շատ որակյալ պողպատ, քան 1929-ին: Այդ ժամանակվանից հայրենական մեքենաշինությունը խարսխվեց որակյալ պողպատի սեփական արտադրության վրա: Մե՜ծ հաղթանակ էր այդ:

Ողջ երկրով մեկ հնչեցին ՍՍՀՄ արդյունաբերության սիրելի հրամանատարի՝ Սերգո Օրջոնիկիձեի խոսքերը. «Չկա այնպիսի մետաղ, չկա այնպիսի մետաղատեսակ, որը մենք չկարողանանք գլանել, չկա մետաղի այնպիսի մակնիշ, որը մենք չկարողանանք ձուլել»:

Ո՞րն է Թևոսյանի՝ իբրև «Սպեցստալի» կառավարչի հաջողության գաղտնիքը: Ինչպե՞ս նա կարողացավ միավորել իրարից այնքան հեռու գտնվող այնպիսի գործարանների ջանքերը, ինչպիսին են՝ «Սերպ ի մոլոտը», «Կրասնի Օկտյաբրը», Զլատոուստովսկի, Վերխ-Իսետսկի, Նադեժդինսկի, Մարիուպոլի և այլ վայրերի գործարանները:

Թևոսյանը լավ էր հասկանում, որ որակյալ մետալուրգիայի բնագավառում հաջողությունների կարելի է հասնել գործիմաց վարպետների, ինժեներների, բանվորների օգնությամբ, որոնց համար որակյալ պողպատի ստացման տեխնիկային տիրապետելը պատվի, կյանքի գործ էր: Մասնագետների հետ միասին նա հաճախ էր լինում գործարաններում, արտադրամասերում, հանգամանորեն հետաքրքրվում էր, թե ինչպիսի խստությամբ է պահպանվում տեխնոլոգիական կարգապահությունը: Անձամբ գիտեր տարբեր գործարաններում աշխատող հմուտ վարպետներին, տաղանդավոր ինժեներներին: Տեխնիկական առաջավոր նոր մեթոդների համար մղվող պայքարի բովով անցած աշխատողներին Թևոսյանը համարձակ առաջ էր քաշում ինժեներական և վարչական ղեկավար պոստերի: Հին, փորձված մասնագետների և բուհերը նոր ավարտած ինժեներների համատեղ աշխատանքը Թևոսյանը համարում էր երիտասարդ կադրերի տեխնիկական ուսումնառության լավագույն դպրոցը: «Սպեցստալ» միավորման գործարաններում նա ստեղծեց ինժեներատեխնիկական և բանվորական կադրերի ամուր ու հուսալի բջիջ, որոնց համար տեխնոլոգիայի խիստ պահպանումը վարքի նորմ էր, սիրած գործին նվիրվածության չափանիշ:

Այդպես, որակյալ պողպատի համար ծավալված պայքարում ձևավորվեց ու աճեց նաև ինքը՝ Թևոսյանը: 1936 թվականի վերջին Թևոսյանը պաշտպանական արդյունաբերության ժողկոմի առաջին տեղակալն է: Շուտով նրան նշանակում են ՍՍՀՄ նավաշինական արդյունաբերության ժողկոմ: Նոր աշխատատեղում ցայտուն դրսևորվեցին նրա կազմակերպչական ունակությունները:

1940 թվականին Թևոսյանը կրկին վերադառնում է իր հարազատ բնագավառը, նշանակվում սև մետալուրգիայի ժողովրդական կոմիսար: Ժողովրդական տնտեսության այս բնագավառի տարիներ շարունակ ետ մնալը այլևս չէր կարելի հանդուրժել:

Հանդիպել, զրուցել եմ ես հայրենական մետալուրգների շատ վետերանների հետ: Նրանք պատմում էին, թե ինչպիսի ուրախությամբ են դիմավորել 1940 թվականի մայիսյան այն օրը, երբ իմացել են, որ մետալուրգների բանակը ղեկավարելու է մետաղի քաջ գիտակ, մետալուրգիայի էնտուզիաստ, արտադրության համարձակ ու հմուտ, բանիմաց կազմակերպիչ Թևոսյանը:



Ժողկոմը մտահոգ նայում էր իր առջև դրված ամփոփագիրը:

— Տխուր պատկեր է,— մտածում էր նա,— պլանը կատարված է ընդամենը 60 տոկոսով: Դոմնաները թերակատարել են չուգունի արտադրանքը: Այն չի բավականացրել պողպատի արտադրությանը: Գլանող հաստոցները պարապության են մատնված: Աչքաթող են արվել մետալուրգիայի թիկունքամասերը— հանքանյութի, կրաքարի հանույթը, կոքսի արտադրությունը, մետալուրգիական մեքենաշինությունը: Նման դրությունն անհանդուրժելի է: Պետք էր ձեռք առնել ամենաարդյունավետ միջոցները սև մետալուրգիայի ետ մնալը հաղթահարելու համար:

Այս բնագավառի գործունեության ղեկավարման խթան հանդիսացավ ՍՍՀՄ ժողկոմխորհի՝ 1940 թվականի հունիսի 2-ի որոշումը «Չուգունի, պողպատի ձուլման, գլանվածքի արտադրության նախատեսված պլանի կատարումն ապահովող միջոցառումների մասին»:

Այդ ժամանակամիջոցում Իվան Ֆեոդորովիչն արդեն նախանշել էր առանձին օղակների և այդ ողջ բնագավառի արտադրանքի կառավարման բարելավման հիմնական դրույթները: 1940 թվականի հունիսի 8—9-ը տեղի ունեցավ ժողովրդական կոմիսարիատի կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովը: Ժողովականները համակ ուշադրությամբ լսեցին Թևոսյանի՝ այդ մեծ կուլտուրայի տեր, արտադրության տեխնոլոգիայի և կազմակերպման հարցերում արագ ու խորությամբ կողմնորոշվող մարդու ելույթը: Նա համառոտակի վերլուծեց իրավիճակը և հստակորեն ներկայացրեց ապագա անելիքները: Անհետաձգելի շատ խնդիրների հետ մեկտեղ ժողկոմը հատկապես անդրադարձավ ամենագլխավորին՝ կադրերի ընտրությանը:

— Այս հարցը,— ասաց Թևոսյանը,— կապված է այն բոլոր մեծ ու փոքր խնդիրների հետ, որպիսին մենք պետք է համատեղ լուծենք. ինչո՞ւ մեզ մոտ թույլ է տեխնիկական ղեկավարությունը, ինչո՞ւ չի բավականացնում հումքը, ինչո՞ւ այդպես վատ է կազմակերպված նյութատեխնիկական մատակարարումը: Աչքաթող է արվել կադրերի դաստիարակության հարցը: Բոլոր տեղամասերի համար մենք պետք է ընտրենք նվիրված, ազնիվ, գործն իմացող մարդկանց... Պակասել է մի բան ևս: Այս տարիներին տարբեր տեղամասեր ղեկավարելու են եկել հազարավոր երիտասարդ մասնագետներ: Այդ ճիշտ է, բայց այս նոր կադրերին պետք է ղեկավարել, լրջորեն օգնել, սովորեցնել: Ցավոք, բանը հասել է այնտեղ, որ սահմանափակվել են մարդկանց անընդհատ տեղաշարժելով, տեղափոխելով...

— Մյուս հարցը,— շարունակեց Թևոսյանը,— այդ տեխնիկական ղեկավարման ոճն է... Ինձ թվում է, որ գործարանները վարչություններից, ժողկոմատից տեխնիկական օգնություն չեն ստացել, որովհետև գլխավոր ինժեները, վարչության ինժեները զբաղված են եղել առօրյա գործերով, ուղարկել են բազմաթիվ թղթեր, սակայն մոռացել են իրենց զավակին՝ գործարանը... Կենտրոնական ապարատը հարկ է այնպես վերակառուցել, որ բանվորները զգան, որ գործ ունեն ռազմաճակատի հետ, ուր տեղի են ունենում ռազմական գործողություններ:

Հուզող շատ հարցերի մասին խոսեց ժողկոմը, ուրվագծելով սև մետալուրգիայի արտադրության վերելքի ուղիները, հաստատ հավատալով, որ մետալուրգների՝ կրակե մասնագիտության մարդկանց, երբեմնի փառքը նորեն կվերականգնվի:

Շուտով հրապարակվեց ժողկոմի № 393 հրամանը, որը խթանեց սև մետալուրգիայի վերելքը: Դրանում նշված են սարքավորումների ստուգումների ու վերանորոգման գրաֆիկի անթերի պահպանման, հումքի, վառելիքի, նյութերի ու կիսաֆաբրիկատների չնվազող պաշարի ստեղծման, տեխնոլոգիական հրահանգների մշակման, դրանց ուսումնասիրման ու կատարման, արտադրության գրաֆիկների ըստ պատվերի կատարման, արտադրության ընթացքի օպերատիվ վերահսկողության անհրաժեշտությունը: Ղեկավար կադրերի հաճախակի փոփոխումներից խուսափելու նպատակով հատկապես արված էր հետևյալ վերապահումը՝ պաշտոնից ազատել կարելի է միայն ժողկոմի անձնական թույլտվությամբ:

Պրպտելով իր հիշողության ծալքերը՝ Թևոսյանն ամեն տեղից խնամքով ընտրում էր գործիմաց մարդկանց և նրանց օգնությամբ առաջ էր մղում գործը:

— Դե՜, կարծես թե ուղին ճիշտ է նշված,— ասաց Թևոսյանն իր տեղակալներ Ի. Բարդինին և Պ. Կորոբովին:— Արձակված է № 393 հրամանը, հրահանգավորումն անցկացված է: Մեր խնդիրն է հետևել, որ պլանավորվեն, ներդրվեն նոր տեխնիկան, աշխատանքի նոր մեթոդները:

...Ժամանակը բանում էր հօգուտ մետալուրգների: Նրանք ցույց տվին, թե ինչի են ընդունակ իրենք: Սովետական պետական ու կուսակցական ականավոր գործչի, ծանր արդյունաբերության, ընդ որում պաշտպանական արդյունաբերության խոշորագույն ինժեների՝ Թևոսյանի շնորհիվ ժողկոմատի ձեռնարկությունները 1941 թվականի մայիսին, Հայրենական մեծ պատերազմի նախօրյակին, վերջին

երեք տարիներում առաջին անգամ կատարեցին մետալուրգիական ամբողջ ցիկլի ծրագիրը:

Եվ, այնուամենայնիվ, մետալուրգները դեռ հեռու էին պատերազմի տարիներին իրենց առաջադրված խնդիրների լուծումից— ապահովել ռազմական արդյունաբերությունը մետաղների այնպիսի քանակությամբ, որը հնարավորություն ընձեռեր վերացնելու ուխտադրուժ թշնամու զենքի բոլոր տեսակների քանակական գերազանցությունը: Ի՞նչ ասել կուզի, խնդիրը դժվարին էր: Մանավանդ որ հարավային, ապա նաև կենտրոնական մետալուրգիական շրջանների ժամանակավոր օկուպացիայի պատճառով երկիրը զրկվել էր մետաղի արտադրության բոլոր կարողությունների ավելի քան կեսից:

Արյունահեղ պատերազմ էր, որի ընթացքում Ուրալի և Սիբիրի մետալուրգիական գործարանները, արտադրամասերը և հանքավայրերը դարձել էին մետաղի համար մղվող պայքարի մի իրական ռազմաճակատ:

Հայրենիքը բարձր գնահատեց մետալուրգների ծառայությունները: Բազմաթիվ առաջավորներ՝ բանվորներ, ինժեներներ, տեխնիկներ, կուսակցական ու տնտեսական աշխատողներ արժանացան կառավարական պարգևների:

Գերմանական լրագրերից մեկը Կուրսկի ճակատամարտն անվանեց «նյութերի վիթխարի ճակատամարտ»: Կատաղի և դաժան մենամարտում բախվեցին սովետական՝ թնդանոթների և Կրուպի պողպատները: Միայն Պրոխորովկայի շրջանում մղված մարտին մասնակցում էին մոտ 1200 տանկ և ինքնագնաց հրետանային սարքեր: Կուրսկի ճակատամարտում հաղթեց սովետական ռազմիկների կամքը, սովետական տեխնիկան: Կրուպի գովաբանված պողպատը «կորցրեց իր դեմքը». հաղթեց սովետական պողպատը, թնդանոթային պողպատը: Խորհրդանշական չէ՞ միթե, որ հենց նույն՝ 1943 թվականին ՍՍՀՄ սև մետալուրգիայի ժողկոմը զենքի բոլոր տեսակների, տանկերի, օդագնացության և ռազմամթերքի համար որակյալ և բարձրորակ մետաղի արտադրության կազմակերպման բնագավառում, ռազմական ծանր ժամանակներում մատուցած ծառայությունների համար արժանացավ սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման:

...Մետաղի համար մղվող ճակատամարտը շարունակվում էր և հետպատերազմյան շրջանում: Սովետական մետալուրգները, Թևոսյանի փորձված ղեկավարությամբ, նոր հարձակում ծավալեցին մետաղի վրա: Սեղմ ժամկետում նրանք լուծեցին հույժ բարդ մի խնդիր. սովետների երկրի բուռն ծաղկող արդյունաբերության համար ստեղծեցին նոր մակնիշների մետաղներ:

Հինգերորդ հնգամյակում պողպատի և գլանվածքի արտադրությունն ավելացավ 67, իսկ չուգունի ձուլվածքը՝ 74 տոկոսով: Զգալիորեն ավելացավ գործարանների թիվը: Ներդրվում էր ավտոմատիկան, մեքենայացվում էին աշխատատար պրոցեսները: Յուրացվել էին պողպատի 150 նոր, գլխավորապես լեգիրացված մակնիշներ: Շատ ցուցանիշներով, օրինակ, մարտենյան խոշոր վառարանների (200 և ավելի տոննանոց) տեսակարար կշռով սովետական մետալուրգիան գրավեց աշխարհում առաջին տեղերից մեկը:

1953 թվականի մարտին Ի. Ֆ. Թևոսյանը նշանակվեց մետալուրգիական արդյունաբերության մինիստր, ազատվելով ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալի պարտականություններից: Նա ամբողջովին նվիրվեց հետպատերազմյան զարգացման փուլն ավարտող մետալուրգիային:

Ձուլվածքի ու գլանվածքի վերաբերյալ ամփոփագիրն առաջվա պես ամեն օր լինում էր մինիստրի սեղանին և հանգամանորեն ուսումնասիրվում: Թևոսյանը հաճախ էր հանդիպում գիտնական մետալուրգների, ինժեներատեխնիկական աշխատողների, պրոեկտանտների, ֆինանսիստների, պլանավիկների հետ: Զգացվում էր, որ գիտակ մարդկանց հետ զրուցելիս նա ստուգում էր ինչ-որ բան, մտահղանում նոր գաղափարներ:

Այդպես էլ կար. Թևոսյանը փորձում էր պատկերացնել ապագան: Այդ մտավոր էքսկուրս էր դեպի հեռավոր, գալիք տարիները, խոհեր այն մասին, թե ինչպիսի տեղ կգրավի մետաղն այն ժամանակ, երբ մարդկությունը ոտք կդնի կոմունիզմի լուսապայծառ շենքի շեմին: Անշուշտ նրա առաջին հոգսը մնում է ամենամերձավոր փուլը— խորհրդածություններ 70—80-ական թվականների մետալուրգիայի մասին, երբ երկրում արդեն ստեղծված կլինի անհրաժեշտ ամեն բան միկրոաշխարհի (միջուկային, ատոմային էներգիայի) և մակրոաշխարհի (տիեզերական հեռուների) գաղտնիքներին տիրապետելու առաջին քայլերի համար. անհրաժեշտ ամեն բան արբանյակների, հրթիռակիրների, «երկնային եղբայրների» առասպելական նավերի սարքավորման համար: Փառաբանված գործարանները մեծ տրամաչափի խողովակներ էին տալիս գազի, նավթի և ջրի փոխադրման համար: Տալիս էին նոր մետաղներ, որոնք օգտագործվում են նոր, հիանալի մեքենաների ու սարքերի համար, ավտոմատիկայի և ռադիոէլեկտրոնիկայի սարքերեզներ. տալիս էին մետաղ, որը զարդարում է հասարակական շենքերը, մետաղ նրբարվեստ աշխատանքների, զարդարական (դեկորատիվ), փորագրական արվեստի համար, ժողովրդական գեղարվեստական արվեստի և գեղարվեստական արդյունաբերության համար:

Թևոսյանը հիշեց մետաղի անցած ողջ ճանապարհը օդաքարային երկաթից օգտվող առաջին դարբիններից մինչև մեր օրերի բարդագույն համաձուլվածքները: Հազարամյակներ պետք եղան, որպեսզի մարդկությունն անցներ մետաղագործության նախնական դպրոցը: Երկու դար առաջ ողջ Եվրոպայում ձուլվել էր ընդամենը հարյուր հազար տոննա չուգուն: 1763 թվականին Լոմոնոսովը գրել է... մետաղ է կոչվում այն նյութը, որը կարելի է կռել: Այդպիսի վեց նյութ գիտենք— ոսկին, արծաթը, պղինձը, անագը, երկաթը, կապարը: Մինչև XIX դարը մարդկանց ծանոթ էին միայն 16 մետաղներ՝ զուտ տեսքով, և միայն XIX դարում հայտնաբերվեց նաև պլատինը: Իսկ XX դարում մարդկանց հայտնի էին արդեն 70 մետաղներ:

Ժամանակակից քաղաքակրթության «մետաղյա նեցուկները» հավատարմորեն ծառայել են նրան և այսուհետ ևս կծառայեն: Բացի այդ երևան են գալիս նոր նյութեր, որ ստեղծում է մեզ համար քիմիան— պլաստմասսաներ, թաղանթներ, հաղորդիչներ: Տեղի են ունենում ապակու, ձյութերի, սիլիկատների հրաշալի կերպափոխություններ: Այդ ամենը լրացնում են մետաղին, բայց նրան փոխարինել չեն կարող. մետաղը հավատարմորեն կծառայի մեզ նաև ապագայում: Ե՛վ մեզ, և՛ մեր սերունդներին դեռ կմտահոգեն հանքի հանույթի հոգսերը, հրամետաղագործության (պիրոմետալուրգիայի) հարցերը, հիդրոմետաղագործության բնագավառի և լուծույթներից, ծովերի ու օվկիանոսների ջրերից մետաղներ կորզելու նոր հնարավորությունները, փոշեմետաղագործության, արտադրվող ապրանքների մակերեսը մետաղապատելու, դիֆուզիոն ծածկերի նորանոր մեթոդների պրոբլեմները:

Ո՞վ գիտե, ինչպիսի՜ մոլորակներ կհասցնեն երկրային մետաղը մեր տիեզերական հսկաները: Եվ գուցե այլ աշխարհների բնական էակները զարմանքով կհաստատեն, որ իրենց մոտ ևս մետաղները ճիշտ նույնպիսին են, ինչպես մեզ մոտ, չնայած այլ կերպ են կոչվում ու գնահատվում:

Ակնբախ էր, որ ականավոր պետական գործչին հուզում էին սովետական էկոնոմիկայի հոգսերը. նա հրապուրված, ոգևորված էր դրա հեռանկարներով: Նա կարողանում էր տեսնել հե․ավոր ապագա․ն:

Իվան Թևոսյանը՝ արհեստավոր դերձակի որդին, որ երեք տարեկանում հրաշքով էր փրկվել 1905 թվականի Ելիզավետպոլի նահանգի Շուշի քաղաքում տեղի ունեցած ողբերգությունից, վաղ տարիքից է հաղորդակցվել մարդկային վշտին, Լեռնային Ղարաբաղում, հայրենի հողի վրա:

...1921 թվականին, Մոսկվայում ՌԿ(բ)Կ X համագումարի տասնիննամյա պատգամավորը՝ լուսապայծառ երազանքներով տոգորված, լսել է Լենինին:

...Պայքարի, ավերումների, համաճարակների ու սովի տարիներ էին, խաղաղ, ապա պատերազմի բոցեղեն տարիներ: Այդ ճակատամարտում Լենինի կուսակցությունը, ողջ ժողովուրդը ոտքի ելան պաշտպանելու Հոկտեմբերի նվաճումները: Հզորանում էր երկիրը, առնանում էին մարդիկ, հմտանում, իրենց գիտելիքներն էին հարստացնում մասնագետ կադրերը, աննախընթաց վերելք էր ապրում գիտատեխնիկական պրոգրեսը:

Ավարտվում է իմ պատումը սոցիալիստական աշխատանքի հերոս, նավաշինական արդյունաբերության ժողկոմ, սև մետալուրգիայի ժողկոմ-մինիստր, մետալուրգիական արդյունաբերության մինիստր, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ... Իվան Ֆեդորովիչ (Թևադորոսովիչ) Թևոսյանի մասին:

Գերմանական ֆաշիզմի դեմ մղված դաժան պատերազմում Թևոսյանի ղեկավարությամբ սովետական մետալուրգների գործած սխրանքները խաղաղ տարիներին բազմապատկվեցին մետաղների նոր մակնիշների որոնումներով, մետաղներ ռեակտիվ օդագնացության, ատոմային արդյունաբերության ու նավերի համար, որոնք առաջինն աշխարհում պատուհան բացեցին դեպի տիեզերք:

Հե՜տք թողնել:

Թևոսյանը խոր հետք է թողել մեր երկրի գործերում և սերունդների հիշողության մեջ:

# ԼԻԲԱՆԱՆԻ ԵՎ ՍԻՐԻԱՅԻ ՀԱՅՈՒԹՅՈՒՆԸ ՖԱՇԻԶՄԻ ԴԵՄ ՄՂԱԾ ՊԱՅՔԱՐՈՒՄ

**Մ. Ս. ՀՈՎՍԵՓՅԱՆ**

**ԱՇԽԱՐՀԱՅՈՒՆՑ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ** հաղթանակը պատմական վիթխարի տեղաշարժեր առաջ բերեց բովանդակ աշխարհում: «Ավրորայի» համազարկերը ո՛չ միայն փշրեցին Ռուսաստանի կազմի մեջ մտնող ժողովուրդների կապանքները, այլև նոր, լուսավոր ուղի հարթեցին Արևմուտքի բանվոր դասակարգի և Արևելքի ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարում: Մեծ Հոկտեմբերի գաղափարները խոր արմատներ գցեցին նաև դարերով ճնշված ու հարստահարված արաբ ժողովուրդների քաղաքական ու սոցիալական պայքարի ընդերքում: Սկսած մեր դարի 20-ական թվականներից արաբ ժողովուրդներն իրենց ազգային-ազատագրական, հակագաղութատիրական պայքարին զուգակցում են նաև սոցիալական, դասակարգային պայքարը՝ հագեցված մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարներով: Լենինյան գաղափարների ներթափանցումը արաբական երկրներ, հատկապես Լիբանան և Սիրիա, որտեղ առաջին համաշխարհային պատերազմի ընթացքում աստանդական հայերի հոծ համայնքներ էին ստեղծվել, չէր կարող արաբական կոմունիստական շարժման ոլորտը չընդգրկել նաև տեղի հայերին:

**1970** թ. ապրիլին, Բեյրութում Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված հոբելյանական հավաքում հանդես եկած Լիբանանի կոմկուսակցության Կենտկոմի քաղբյուրոյի անդամ և քարտուղար Ժորժ Հաուին, նշելով լիբանանահայերի ակտիվ դերը արաբական ազգային-ազատագրական շարժման գործում, ասել է. «...Քսանական թվականներին խիկական լենինյան գաղափարները մուտք գործեցին Լիբանան* երիտասարդ հայ առաջադեմ մտավորականների ու բանվորների միջոցով և, միաձուլվելով արաբական բանվորական շարժման հետ, ստեղծեցին պատմական միասնական պայքարի հիմք՝ մարքս-լենինյան գաղափարների ամրապնդման, տարածման և մարքս-լենինյան կազմակերպության ստեղծման համար»:

Կոմունիստական գաղափարների ներթափանցումը արաբական երկրներ, հատկապես Լիբանան և Սիրիա, անշուշտ, կապված է եղել բանվոր դասակարգի հանդես գալու հետ, իսկ կոմունիստական կուսակցության կազմավորումը պայմանավորված էր վերոհիշյալ երկրներում բանվորական շարժման վերելքով: Հայ և արաբ կոմունիստները իրենց ողջ գործունեության ընթացքում մշտապես շեշտել են այն հսկայական դերը, որ ունեցել են առաջին սոցիալիստական երկրի՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության ազդեցությունն ու օրինակը Լիբանանի և Սիրիայի կոմունիստական կուսակցության ստեղծման գործում:

**Մինչև 1938**, ապա **1939—41** թթ. Լիբանանի և Սիրիայի կոմունիստական կուսակցությունը գործել է անլեգալ, ոստիկանության խիստ հալածանքների պայմաններում: Սակայն սա չի նշանակում, թե փոքր է եղել կոմունիստական կուսակցության դերը (որի շարքերում արաբներից հետո երկրորդ մեծամասնությունը կազմել են հայերը) աշխատավորական ուժերի համախմբման և հակաիմպերիալիստական պայքարում:

---

* *Մինչև 1944 թ. հունվարի սկիզբը Լիբանանի և Սիրիայի կոմունիստական կուսակցությունը գործել է որպես մեկ միասնական կազմակերպություն:*



Հայ կոմունիստները, արաբ կոմունիստների օրինակով և օգնությամբ, Լիբանանում և Սիրիայում ստեղծել են հայերեն լեզվով մամուլի օրգաններ: Տարբեր ժամանակներում լույս են տեսել «Նոր փարոս», «Սպարտակ», «Կարմիր արշալույս» և այլ հայատառ կոմունիստական թերթեր: Չնայած հիշատակված բոլոր թերթերն էլ ունեցել են կարճ կյանք, բայց մեծ է եղել նրանց դերը Լիբանանի և Սիրիայի հայ զանգվածների դասակարգային և ազգային շահերի պաշտպանության գործում:

Լիբանանի և Սիրիայի կոմունիստական կուսակցության պատմության մեջ առավել բեղուն գործունեության փուլ էին նախապատերազմյան վերջին երկու տարիները: Ֆրանսիայում իշխանության գլուխ անցած ժողովրդական ճակատի կառավարությունը, դեմոկրատական այլ ազատությունների հետ միասին, հանդուրժողական վերաբերմունք է ցուցաբերել նաև կոմունիստների նկատմամբ: Կուսակցության օրգան «Սաութ ալ-Շաաբ» (Ժողովրդի ձայն) թերթը, որն անլեգալ պայմաններում լույս էր տեսնում 1935 թվականից, 1937 թ. հրատարակվել է լեգալ կերպով: 1938 թ. փետրվարի 6-ից Բեյրութում հրատարակվում է «Սաութ ալ-Շաաբի» հայերեն հավելվածը՝ «Ժողովրդի ձայն» անունով: Այն մինչև փակվելը՝ 1939 թ. սեպտեմբերի 29-ը, լույս է տեսել շաբաթը մեկ անգամ: Թերթի հրատարակությունը գլխավորում էր Լիբանանի և Սիրիայի կոմունիստական կուսակցության հիմնադիր գործիչներից մեկը՝ Հարություն Մադոյանը*:

Արաբական երկրներում հայերեն լեզվով կոմունիստական լրագրի հանդես գալը դեմոկրատական ուժերի նոր հաղթանակն էր: Դա սփյուռքահայության համար ամենանախատագրական պահին դաշնակցական մամուլի ստի ու զրպարտանքի դեմ պայքարող առաջին օրգանն էր:

**1920**-ական, ինչպես նաև **1930**-ական թվականների առաջին կեսին արաբական երկրների հայկական գաղթօջախներում, հատկապես Լիբանանում և Սիրիայում, որպես հակադիր քաղաքական ուժեր, գործում էին հնչակյան և դաշնակցություն կուսակցությունները: Հայ աշխատավորական զանգվածներին այս կամ այն ազդեցության ոլորտն ընդգրկելու համար մղված պայքարը հիմնականում ընթանում էր այս երկու կուսակցությունների միջև: Իբրև քաղաքական կուսակցություն կար նաև ռամկավար-ազատական կուսակցությունը, որի գոյությունն այս երկրներում միայն ձևական էր և իրականում աննկատելի:

Հնագույն ռամկավար գործիչ, ռամկավար-ազատական կուսակցության առաջին դեմքերից մեկը՝ պրոֆեսոր Բարունակ Թովմասյանը, «Արև» օրաթերթի այն շրջանի խմբագիր Հովհաննես Պողոսյանին ուղղված 1937 թ. ապրիլի 13-ի նամակում գրում է. «Ռ. Ա. կուսակցությունը գրեթե գոյություն չունի Լիբանանի մեջ. Սուրիոյ մեջ ալ հեռու է գոհացուցիչ ըլլալե: Մինչդեռ ռամկավար կուսակցությունը իր անունով ու վարկով կրնա օգտակար գործ կատարել տիրող այս պայմաններուն տակ և խնայել մեր ժողովուրդին այն արկածախնդրական գործունեությունը, որուն կը մղվի» («Զարթոնք», բացառիկ, 1962, էջ 11):

Լիբանանում և Սիրիայում ռամկավար-ազատական կուսակցության գործունեության ուժեղացման առաջին պայմանը Բեյրութում ռամկավարական օրգան «Զարթոնք» օրաթերթի լույսընծայումն էր: «Զարթոնքի» առաջին համարը լույս է տեսել 1937 թ. սեպտեմբերի 26-ին: Հանձին «Զարթոնքի», Լիբանանի և Սիրիայի հայահոծ գաղթօջախներում հանդես է գալիս մամուլի մի նոր օրգան, որը կանգնեց Սովետական Հայաստանի պաշտպանության դիրքերում:

Սփյուռքի բոլոր գաղթօջախներում գերիշխանության հասնելու դաշնակցության բոլոր ձգտումները հանդիպում են մյուս քաղաքական կուսակցությունների և կազմակերպությունների հակազդեցությանը: Հայ կոմունիստների հետ միևնույն ճակատում դաշնակցության, ինչպես նաև ֆաշիզմի ու իմպերիալիզմի ռեակցիոն գաղափարախոսության դեմ պայքարել են և՛ հնչակյան, և՛ ռամկավար-ազատական կուսակցությունները: Գնահատելով վերջին երկու կուսակցությունների քաղաքական դիրքորոշումը, պատերազմի և խաղաղության հարցերում նրանց որդեգրած քաղաքականությունը, պրոֆ. Լ. Խուրշուդյանը գրում է. «Հնչակյան և ռամկավար-ազատական կուսակցությունների պրակտիկ և տեսական գործունեության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այդ կուսակցությունները գտնվում են խաղաղության, դեմոկրատիայի և առաջադիմության համար մղվող պայքարի մարտիկների շարքերում» (**Լ. Ա. Խուրշուդյան**, Սփյուռքահայ կուսակցությունները ժամանակակից էտապում, Երևան, **1964**, էջ **31**):

Վերոհիշյալ կուսակցությունները մամուլի իրենց օրգաններում լայնորեն պրոպագանդում են Սովետական Միության խաղաղասիրական ձգտումների էությունը՝ մերկացնելով այդ հարցի կապակցությամբ դաշնակցականների զրպարտչական գործունեությունը:

---

* *Հ. Մադոյանը այժմ Լիբանանի կոմունիստական կուսակցության հայերեն օրգան «Կանչ» թերթի խմբագիրն է: Նա պարգևատրվել է «Ժողովուրդների բարեկամության» շքանշանով:*

Հետևողական պայքար մղելով գաղութահայ շրջաններում ֆաշիզմի գաղափարախոսության ներթափանցման դեմ, հարելով խաղաղասեր ուժերի հակապատերազմական ջանքերին, հայ կոմունիստները, հնչակյանները և ռամկավարները կանգնում են Սովետական Միության ու Սովետական Հայաստանի պաշտպանության դիրքերում:

Անվիճելի է, որ հայ ժողովրդի և նրա սփյուռքահայ զանգվածների համար ցանկալի չէր նոր պատերազմը, որը բազմաթիվ ու բազմապիսի նոր զոհողությունների դուռ կարող էր բանալ: Այդ պատերազմում օրակարգում կարող էր դրվել նրա լինել-չլինելու հարցը:

Կար մեկ հանգամանք ևս, որն ըստ էության շատ ավելի տագնապալի և իր բնույթով առավել բացասական կարող էր լինել սփյուռքահայ հատվածի տնտեսական, ազգային ու քաղաքական կյանքում: Այն իրողությունը, որ սփյուռքում հայությունը ցրված է զանազան երկրներում, կամա թե ակամա յուրաքանչյուր գաղթօջախի բախտը կապվում է տեղի ժողովուրդների բախտին: Շատ երկրներում քաղաքացիություն ընդունած հայերից զատ, բնակվում էին զգալի թվով «անհայրենիք» համարված հայեր, որոնց ճակատագիրը ստեղծված թոհ ու բոհի մեջ խիստ անորոշ ու անհեռանկար կարող էր լինել:

Երեսունական թվականներին ֆաշիստական գաղափարները թևածում էին ո՛չ միայն Գերմանիայում ու Իտալիայում, այլև հող էին գտել արաբական երկրներում: Արաբական շրջանում այս գաղափարախոսության անմիջական կրողն ու պրոպագանդողն էր Սիրիայի ազգայնական կուսակցությունը (Հիզբ ալ-Ղովմի) (տե՛ս Ֆայեզ Յարդ, Իմպերիալիզմի և ֆաշիզմի ձեռքը մեր երկրում՝ սիրիական ազգային կուսակցությունը (արաբերեն), Բեյրութ, 1936 թ.): Այս կուսակցությունը, որի ծրագիրն ամբողջապես ներծծված էր ֆաշիզմի գաղափարախոսությամբ, իր տեղական կազմակերպություններն էր ստեղծել Սիրիայի և Լիբանանի բոլոր մեծ քաղաքներում: Քաղաքական նման բարդ ու ծանր պայմաններում անհրաժեշտ էր հեռատեսություն և ազգային գործունեության կոորդինացում արաբ ժողովրդի դեմոկրատական ուժերի հետ: Անհրաժեշտ էր շահել տեղի ժողովուրդների վստահությունը և, աշխատավորների ինտերնացիոնալ բարեկամության հիման վրա, պայքարի սլաքն ուղղել թշնամական պրոպագանդայի սերմանած ժողովուրդների ռասայական խտրականության դեմ: Ժողովուրդների միջև բարեկամությունն ամրապնդելու և ֆաշիզմի դեմ անհաշտ պայքարի կուրս էին վարում սփյուռքահայ կոմունիստները: Իրենց ապրած երկրների կոմունիստական կուսակցությունների շարքերում նրանք նախ աշխատում էին ապահովել տեղի ժողովուրդների վստահությունը հայերի նկատմամբ և ապա՝ կանգնել խաղաղության ու դեմոկրատիայի դիրքերում, որովհետև «դեմոկրատիայի պարտությունը և ֆաշիզմի հաղթանակը միայն մեծագույն աղետ կլիներ հայ ժողովրդի համար» (Կ. Դալլաքյան, Լիբանանահայ դեմոկրատական մամուլի պատմությունից, Երևան, 1964, էջ 28):

Հայ կոմունիստները բազմիցս դնում էին սփյուռքահայության միության հարցը: 1938 թ. կոմունիստների օրգան «Ժողովուրդի ձայն» թերթը գրում էր. «...Հիմիկվընե պետք է պատրաստ ըլլանք: Պատրաստ ըլլանք որևէ մեկ աղետի ընթացքին հանկարծակիի չի գալու համար: Պատրաստ ըլլանք մեր ժողովուրդը ավելի լավ կազմակերպելու, անոր հացն ու ազատությունը, ազգային բարգավաճումը լավագույնս ապահովելու համար... Մենք կը հավատանք, որ այս բոլորին հաջողությունը մեր ժողովրդի միության իրականացման հետ կապված է» (նույն տեղը, էջ 29):

Դեմոկրատական ուժերի միասնական ճակատ ստեղծելու (գոնե հնչակյանների և կոմունիստների միջև) բոլոր հնարավորությունները կային: Սակայն այդ տեղի չունեցավ ոչ նախապատերազմյան վերջին և ոչ էլ պատերազմի առաջին տարիներին: Հնչակյանները գործակցում էին միայն առանձին հարցերում, հատկապես այն դեպքում, երբ խնդիրը վերաբերում էր դաշնակցության հակաազգային որևէ գործարքին: Սփյուռքահայ դեմոկրատական ուժերի միասնական ճակատ ստեղծվեց ավելի ուշ՝ սկսած 1943 թվականից, որը, իհարկե, տվեց իր դրական արդյունքը և հիմք հանդիսացավ այդ ուժերի հետագա համագործակցության համար:

1939 թ. սեպտեմբերի 1-ի վաղ առավոտյան, Լեհաստանի վրա ֆաշիստական Գերմանիայի հարձակմամբ, սկսվեց երկրորդ համաշխարհային պատերազմը:

Սփյուռքահայ առաջադիմական կազմակերպություններն ու նրանց ղեկավարները զգուշացնում էին սփյուռքի աշխատավորական զանգվածներին, որ սփյուռքահայությունն իր ազգային և բարոյական պարտքը պետք է համարի համախմբվելու խաղաղասեր ուժերի շուրջը և ամեն ջանք գործադրի, որպեսզի հայ ժողովրդի համար նորից չկրկնվեն այն բոլոր սարսափներն ու արհավիրքները, ինչ տեղի էին ունեցել առաջին համաշխարհային պատերազմի տարիներին:

Հայության հետագա ճակատագրի համար առավել մտահոգություն դրսևորվեց Արաբական արևելքի երկրներում, հատկապես Լիբա-



նանում և Սիրիայում, որտեղ կենտրոնացված էին շուրջ 300.000 հայեր, և սահմանակիցն էին այն պետության, որն ընդամենը երկու տասնամյակ առաջ իրագործում էր հայ ժողովրդին բնաջնջելու իր հրեշավոր ծրագիրը: Դա ուներ նաև իր հոգեբանական կողմը: Թուրքական սարսափներն ապրած և յաթաղանից հազիվ մազապուրծ Լիբանանում և Սիրիայում ապաստան գտած գրեթե ողջ հայությունն իրավացիորեն գտնում էր, որ նոր պատերազմը վերստին գործողությունների ազատություն կարող էր ընձեռել թուրքական ռեակցիային: Հետևապես հայ քաղաքական կուսակցությունների (բացի դաշնակցությունից) և առաջադիմական կազմակերպությունների առաջ նոր բարդ խնդիրներ են ծառանում. ապահովել հայ և արաբ ժողովուրդների փոխադարձ բարեկամությունն ու վստահությունը և կանգնել արաբ առաջադիմականների կողքին՝ ընդդեմ ֆաշիզմի ու ռեակցիայի:

Սփյուռքահայ կոմունիստների առաջամարտիկներից մեկը՝ Հարություն Մադոյանը, այդ օրերին «Ժողովուրդի ձայն» թերթում գրել է. «Մենք՝ Լիբանանի ու Սուրիայի հայերս, մեր ճակատագիրը, հանգիստը, ապահովությունը և ազատությունն անքակտելիորեն կապված կը նկատենք Սուրիո և Լիբանանի արաբ ժողովուրդի ճակատագրին: Մենք Լիբանանի մեջ լիբանանյան ընտանիքի մասը կը կազմենք, Սուրիո մեջ՝ սուրիական ընտանիքի: Ինչպես անցյալի մեջ, սուլթաններու տիրապետության տակ, մեր ճակատագիրը կապված էր ձերին, նույնպես պիտի ըլլա և ապագային: Ահա թե ինչու ազգային սրբազան պարտականություն կը նկատենք ձեր կողքին կռվիլ ընդդեմ ֆաշիզմի և այն ամեն թշնամու, որը հակառակ է Սուրիո և Լիբանանի բարգավաճման, ազատության և ազգային միության» («Ժողովուրդի ձայն», 1939, № 64):

Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին սփյուռքահայ առաջադիմական ուժերը վերախմբավորվեցին, տեղի ժողովուրդների դեմոկրատական շրջանների հետ սերտորեն միավորվեցին ֆաշիզմի դեմ պայքարելու համար:

Հայ-արաբական առաջադեմ ուժերի համագործակցության, գաղափարների միասնության և հայրենասիրության փայլուն ապացույց է այն պատրաստակամությունը, որ հայտնվել է ֆրանսիական գերագույն կոմիսարին՝ պատերազմն սկսվելու հենց առաջին օրերին: Հարություն Մադոյանը Լիբանանի և Սիրիայի հայության, հայ կոմունիստների անունից, Խալեդ Բագդաշի, Ֆարաժալլա Հելուի և Նիկոլա Շաուիի հետ միասին, ֆրանսիական գերագույն կոմիսարին ուղղած հեռագրում հայտնում է. «Պատրաստ ենք առաջին գծի վրա կռվիլ հանուն ազատության, արդարության և փոքր ազգերու իրավանց» («Ժողովուրդի ձայն», 1939, № 81):

Սկսված համաշխարհային պատերազմը քաղաքական նոր կացություն ստեղծեց Արաբական արևելքի երկրներում: Եթե ֆաշիստական նվաճման վտանգն ինչ-որ չափով կարող էր թելադրել Լիբանանի և Սիրիայի ժողովուրդներին ժամանակավորապես հավատարիմ մնալ ֆրանսիական իշխանություններին և նույնիսկ չափավորել ազգային-ազատագրական պայքարը, ապա ֆրանսիական գաղութարարները, օգտագործելով պատերազմական իրավիճակը, աշխատեցին, վերացնելով դեմոկրատական ամեն մի ազատություն, ավելի ամրապնդել իրենց դիրքերն այդ երկրներում:

Երբ սկսվեց պատերազմը, Ֆրանսիայի լիազոր պատվիրակ Պյուոն Լիբանանում և Սիրիայում մտցրեց արտակարգ դրություն և բացահայտ հալածանք սկսեց տեղի դեմոկրատական ուժերի դեմ: 1939 թ. սեպտեմբերի 29-ին արգելվում է Լիբանանի և Սիրիայի կոմունիստական կուսակցությունը, փակվում է նրա օրգան «Սաութ ալ-Շաաբը», ձերբակալվում են կուսակցության ղեկավար գործիչներ Խալեդ Բագդաշը, Ֆարաժալլա Հելուն, Մուստաֆա Արիսը, Նիկոլա Շաուին, հայերից՝ Հարություն Մադոյանը, Փանոս Արամայիսյանը, Մովսես Ղազարյանը և ուրիշներ: Ֆրանսիական իշխանությունները ցրում են Լիբանանի պառլամենտը, արձակում բոլոր մինիստրներին և կառավարության փոխարեն պահում պետական մի քարտուղարություն (տե՛ս Ն. Հ. Հովհաննիսյան, Ազգային-ազատագրական պայքարը Լիբանանում (1939—1958 թթ.), Երևան, 1967, էջ 96): Գրեթե նույն կերպ վարվեցին նաև Սիրիայի հետ: Այս ամենից բացի, ֆրանսիական իշխանությունները բոլոր միջոցներով աշխատում էին խեղդել երկրում առաջացած հակաֆաշիստական շարժումը: 1939 թ. դեկտեմբերի սկզբներին կատարվում են մասսայական ձերբակալություններ: Ֆրանսիայի կառավարությունն այսպես էր վարվում հակաֆաշիստական, առաջադիմական ուժերի նկատմամբ, որովհետև դեռևս հույսեր ուներ, որ կարող էին հարթվել ֆաշիստական Գերմանիայի հակամարտությունները Արևմտյան պետությունների հետ ի հաշիվ Սովետական Միության (տե՛ս Германия во второй мировой войне (1939—1945), перевод с немецкого, Москва, 1971, стр. 30—31):

Արևմտյան տերությունների հակասովետական բոլոր քայլերն անհեռատես դուրս եկան, և պատերազմը Ֆրանսիայի համար աղետալի վախճան ունեցավ:

Արաբ ժողովրդի վտանգված ազգային ու քաղաքական կյանքը, անշուշտ, սպառնալիք էր ստեղծել նաև տեղի հայ զանգվածների համար:

Այդ մղձավանջային օրերին դաշնակցության առավել խավարամոլ, հակասովետական տենդով համակված տարրերը բացեիբաց շանտաժի ու ճնշումների էին ենթարկում բոլոր նրանց, ովքեր փորձում էին ինչ-որ ձևով պաշտպանել Սովետական Միությունն ու Սովետական Հայաստանը: «Երբ վիշիական սարսափի օրերում,— գրում է Կարապետ Փաշայեզյանը,— մեր ժողովրդի կամքը կը ոտնակոխվեր և մեր սիրելի Սովետական Հայաստանի դեմ հրապարակով դավեր կը սարքվեին... դժբախտաբար գտնվեցան մարդիկ, որոնք մըրցումի ելան իրենց ծառայությունը ֆաշիզմի գործակալ վիշիականներու սպասարկության տակ դնելու և իրենց քաղաքականությունը օրվան իշխանությանց քաղաքականության համմարեցնելու համար» («Ժողովուրդի ձայն», 1944, № 686):

Այդ օրերին հայրենիքից սփյուռք են հասնում անվանի մտավորականների, ինչպես նաև Ամենայն Հայոց Հայրապետության կոչերը, որոնք սփյուռքահայերին հորդորում էին ստեղծել կարմիր բանակին և տուժած բնակչությանն օգնելու կոմիտեներ: Կոչերին առաջինն արձագանքում են Լիբանանի և Սիրիայի հայ կոմունիստները, որոնց ջանքերով էլ ստեղծվում է Հայաստանի պաշտպանության Լիբանանի և Սիրիայի հայկական լիգա՝ Հարություն Մադեյանի գլխավորությամբ: Լիգայի նախաձեռնությամբ կազմվում է հայրենիքի պաշտպան մարտիկների օգնության հանձնախումբ, որը կազմակերպելու էր հանգանակությունների և այլ միջոցներով օգնության գործը: Բացի այս, Հայաստանի պաշտպանության Լիբանանի և Սիրիայի հայկական լիգան կազմակերպում է հակաֆաշիստական ցույցեր և հրապարակային մեծ հավաքույթներ, որոնք հայ զանգվածներին համախմբող և մոբիլիզացնող կարևոր ազդակներից էին: Այս հայրենանվեր գործի ամենաակտիվ պրոպագանդիստը դառնում է 1942 թ. փետրվարին իր հրատարակումը վերսկսած հայ կոմունիստների օրգան «Ժողովուրդի ձայն» օրաթերթը: Հայ զանգվածների շրջանում հակաֆաշիստական պայքարին համընդհանուր և կազմակերպված բնույթ տալու նպատակով Լիբանանի և Սիրիայի բոլոր քաղաքներում ու հայաշատ այլ վայրերում ստեղծվում են Հայաստանի պաշտպանության լիգայի մասնաճյուղեր և նրանց կից՝ հայրենիքի պաշտպան մարտիկների օգնության հանձնախմբեր: Լրացվելով նոր հեղինակավոր անդամներով, Բեյրութի հանձնախումբը վերածվում է Կենտրոնական հանձնախմբի: Կենտրոնական հանգանակիչ հանձնախմբի առաջին իսկ կոչում, որտեղ նույն թվականի մարտ ամիսը հայտարարվում է «Հայրենիքի պաշտպան մարտիկներու օգնության ամիս», ասված է. «...Գաղթահայերս, ի տես հայ զինվորի այս հերոսական կեցվածքին, չենք կրնար անտարբեր մնալ ու մեր բաժինը չբերել հայրենիքի պաշտպանության գործին: Երբ Հայաստանի մեր եղբայրները իրենց արյունով կնվիրագործեն հայրենի հողը, մեր վրա բարոյական ու ազգային պարտականություն կիյնա. կարելի բոլոր միջոցները ի գործ դնել, իբրև հայ մեր հայրենասիրական պարտականությունը կատարել հայրենիքին և անոր պաշտպան զինվորին հանդեպ» («Ժողովուրդի ձայն», 1942, № 102):

Նույն օրերին, հայ կոմունիստների օրգան «Ժողովուրդի ձայն» օրաթերթի խմբագրական հոդվածներից մեկում, Հարություն Մադեյանը գրում է. «...Հայրենի մարտիկը կը կռվի, արյուն կթափե Հայաստանի պաշտպանության համար, իսկ մեզմե կը պահանջվի եղբայրական նվեր մը, հայրենասիրական ժեստ մը միայն:

...Այսպիսով, ավելի արժանի կըլլանք մեր պանծալի նախնիքներուն, մեր բյուրավոր նահատակներու արյունով ներկված սրբազան հայրենիք՝ Հայաստանին» (նույն տեղը, № 110): Մարտ ամսին տեղի ունեցած ընդհանուր շարժման հաջողությունը նպաստում է հանգանակությունը շարունակել նաև ապրիլ ամսին:

Սկսված համընդհանուր շարժման ծավալը ստիպում է վերանայել Հայաստանի պաշտպանության Լիբանանի և Սիրիայի հայկական լիգայի ղեկավար կազմը: Լիգայի նորընտիր Կենտրոնական գործադիր մարմինն իր դիվանը կազմում է հետևյալ անդամներից. նախագահ՝ Հարություն Մադեյան, փոխնախագահ՝ Ադամ Մանվելյան, ընդհանուր քարտուղար՝ Հարություն Մախյան, քարտուղար՝ Վարդան Գնդունի, գանձապահ՝ Կարպիս Արզումանյան: Կենտրոնական գործադիր մարմինը որոշում է Սովետական Միության վրա ֆաշիստական Գերմանիայի հարձակման տարելիցի առթիվ նույն թվականի հունիսի 28-ին կազմակերպել մասսայական մեծ հավաքույթ:

1942 թ. մայիսի 26-ին Լոնդոնում ստորագրվեց անգլո-սովետական նոր դաշնագիրը, իսկ նույն թվականի հունիսի 11-ին՝ համաձայնագիր ԱՄՆ-ի և Սովետական Միության միջև, որոնք ջերմությամբ ընդունեցին արաբական երկրների հայ բնակչության առաջավոր խավերը: Այս առթիվ Հայաստանի պաշտպանության լիգան, առանձին կազմակերպություններ



և անհատներ բազմաթիվ հեռագրեր հղեցին Անգլիայի և ԱՄՆ-ի ներկայացուցիչներին: Հայաստանի պաշտպանության լիգայի Հալեպի մասնաճյուղի՝ Սիրիայում և Լիբանանում Անգլիայի լիազոր ներկայացուցիչ Էդուարդ Սպիրսին ուղղած հեռագրում Հովհաննես Գանթարճյանը և Կարապետ Գլճյանը գրում են. «Հալեպի Հայաստանի պաշտպանության լիգայի անունով մեր մեծ ուրախությունը կհայտնենք Անգլո-Սովետ դաշնագրի կնքման համար: Այդ դաշնագիրը կնկատենք ամենաապահով երաշխիքը՝ ջախջախելու համար նացիզմը, որուն դեմ կկռվին մեր հայրենիք Հայաստանը և հարյուրներով հայեր Լիպիո ճակատին վրա» («Ժողովուրդի ձայն», 1942, № 181):

Միջազգային հարաբերությունների բարենպաստ ընթացքը, ֆաշիզմի դեմ պայքարող ուժերի նոր հաղթանակը միանգամայն ռեալ հիմքեր են տալիս քաղաքական մեծ վերելքով նշելու կարմիր բանակի հերոսական կռվի առաջին տարելիցը: Դաշնակիցների դրոշներով զարդարված Սահակյան մարզադաշտում հավաքվում են 5000-ից ավելի հայեր, որոնք իրենց մարտական կամքն են արտահայտում շարունակելու կռիվը մինչև վերջ՝ «Դաշնակիցներու կողքին, արաբ ժողովրդին հետ, ընդդեմ ժողովուրդներու դահիճ նացիզմին և ֆաշիզմին»: Հայ ղեկավարների հետ ամբիոն են բարձրանում նաև Լիբանանի ժողովրդական շարժման ղեկավար Ֆարաժալլա Հելուն, Սիրիայի և Լիբանանի հակաֆաշիստական լիգայի ընդհանուր քարտուղար Անտուան Տաբեթը, որոնք եկել էին իրենց համերաշխությունը հայտնելու հայ ժողովրդի սույն ձեռնարկին:

Իր ելույթում Հարություն Մադեյանը նշում է. «...Մենք՝ հայերս, առանձին ուշադրությամբ, խանդավառությամբ և ազգային մեծ հպարտությամբ կը տոնենք այս օրը, որովհետև սովետական սրբազան հողն ներս խուժող նացի հորդաները պատերազմի մեջ են նաև մեր հայրենիքին, մեր ժողովուրդին դարավոր մաքառումներուն և ազգային լավագույն երազներուն իրականացումն եղող Սովետ Հայաստանի հետ, որովհետև հիտլերական Գերմանիո պարտությամբ միայն կործանման ստույգ վտանգե մը կը փրկվի մեր ծաղկեալ հայրենիքը...» («Ժողովուրդի ձայն», 1942, № 183):

Նույն օրը Հայաստանի պաշտպանության լիգայի տարբեր քաղաքների մասնաճյուղերի նախաձեռնությամբ կազմակերպվում են ժողովներ ու հավաքույթներ Դամասկոսում, Հալեպում, Զահլեում, Տրիպոլիում և հայաշատ այլ վայրերում:

Սովետական ժողովուրդների համար այն ծանր օրերին, երբ դեռ Ստալինգրադի տակ թշնամին ձգնում էր կտրել Կովկասը ՍՍՀՄ մյուս շրջաններից, Բեյրութում ստեղծվում է «Սովետական Հայաստանի բարեկամների ընկերություն» նոր կազմակերպությունը, որի առաջին հայտարարության մեջ նշված է, թե «Հայրենական պատերազմի այս օրերուն, երբ Հայաստանի մեր եղբայրները իրենց արյունը կթափեն... Սուրիո և Լիբանանի հայության վրա սրբազան պարտականություն կ'իյնա՝ հետևիլ մայր հայրենիքի մեր եղբայրներու օրինակին և միասնականության դրոշի տակ համախմբվելով ցույց տալ, թե Սուրիո և Լիբանանի հայությունն ալ պատրաստ է իր բաժինը բերելու հաղթանակի համար մեր սիրելի հայրենիքին մեջ թափված ջանքերուն» (նույն տեղը, 1942, № 301):

Բեյրութի հայ աշխատավորության հայրենասիրական այս շարժումը լայն արձագանք է գտնում Սիրիայի և Լիբանանի բոլոր մեծ քաղաքներում: Սովետական Հայաստանի բարեկամների ընկերության մասնաճյուղեր են ստեղծվում Հալեպում, Դամասկոսում, Զահլեում, Տրիպոլիում և այլ հայաշատ վայրերում:

Սովետական Հայաստանի բարեկամների ընկերությունը, որի անդամները միայն հայեր էին, սերտ կապերի մեջ էր Սիրիայի և Լիբանանի Սովետական Միության բարեկամների արաբական ընկերության հետ և վայելում էր նրա ամենալայն հովանավորությունը:

Գործակցելով արաբ հակաֆաշիստական խմբավորումների հետ և ամենաեռանդուն կերպով մասնակցելով սովետական բանակի ռազմիկներին ու զոհված մարտիկների ընտանիքներին օգնություն կազմակերպելու գործին, Լիբանանի և Սիրիայի հայ կոմունիստները միշտ հեռու են եղել ազգային նեղ մտայնությունից և պայքարն ընդհանուր թշնամու դեմ համարել են ինտերնացիոնալ գերագույն պարտք: «Ժողովուրդի ձայն» թերթը Լիբանանի և Սիրիայի բոլոր հայրենասեր հայերի անունից գրում է. «Մենք պատրաստ ենք մինչև վերջ հարատևել ֆաշիզմի դեմ մեր պայքարին մեջ. պատրաստ ենք այս ուղղությամբ մեր ամեն տեսակ պարտականությունները կատարելու, մինչև իսկ զինյալ կռվի ելնելու հիտլերիզմի դեմ...» («Սովետական Հայաստան», 1943, № 167): Հայ առաջադիմական խմբավորումները, կոմունիստների գլխավորությամբ, հանդիսավորությամբ և քաղաքական կազմակերպվածությամբ են նշում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 25-րդ տարեդարձը, միտինգներում պահանջում երկրորդ ճակատի շուտափույթ բացում: Հայկական միջավայրում արտակարգ շուքով է տոնվում Սովետական Հայաստանի տարեդարձը:

Գաղութահայ աշխատավորության հայրենասիրական այս շարժումը ծավալվում էր դաշնակների և նրանց հովանավորողների դեմ մղվող սուր պայքարի պայմաններում:

Ի պատասխան հայրենիքի կոչի, սփյուռքահայ կոմունիստների, առաջադիմական կազմակերպությունների գլխավորությամբ սկսվում է համաժողովրդական մի շարժում, որի նպատակն էր հայ աշխատավորների միջոցներով կառուցել տանկային շարասյուն և նվիրել սովետական բանակին: 1943 թ. գարնանից ընկըրսվեց միջոցների հավաքումը տանկային շարասյան ֆոնդի համար: Դեմոկրատական մամուլում տպագրվեցին սփյուռքի հայ աշխատավորներին ուղղված կոչեր ու հայրենասիրական հոդվածներ:

Լիբանանի և Սիրիայի հայ կոմունիստները 1943—1944 թթ. ողջ ընթացքում կազմակերպչական ու պրոպագանդիստական անդուլ գործունեությամբ հասան այն բանին, որ միայն Արաբական արևելքի երկրներում բնակվող հայերը հանգանակեցին և մինչև 1944 թ. մարտ ամիսը «Սասունցի Դավիթ» տանկային շարասյան ֆոնդը մուծեցին 214.248 անգլիական ֆունտ ստեռլինգ, 395.831 անգլիական ոսկի (անգլիական վալյուտայով ապահովագրված տեղական թղթադրամ) և 150.000 ոսկի դինար*: Հավաքված և սովետական դրամատուն մուծված գումարներով կաթողիկոսական տեղապահ Գևորգ Չորեքչյանը սովետական ռազմական գործարաններում պատվիրում է տանկեր, որոնք, համաձայն նրան հասցեագրած ՍՍՀՄ տանկային արդյունաբերության ժողովրդական կոմիսար Մազիմենի հեռագրի, արդեն պատրաստ էին 1943 թ. հոկտեմբեր ամսին:

Սասունցի Դավթի անունը կրող տանկային առաջին շարասյունը սովետական գործող բանակին է հանձնվել 1944 թ. հունվարի 29-ին: «Սասունցի Դավիթ» տանկային շարասյան համար կատարվող հանգանակությունը դարձավ Լիբանանի և Սիրիայի հայության բոլոր խավերն ու խմբավորումները հայրենասիրության դրոշի տակ միավորելու բարոյական ազդակ:

Հայրենասիրական այս նոր վերելքի առաջամարտիկները դարձյալ հայ կոմունիստներն էին, որոնց օրգան «Ժողովուրդի ձայն» օրաթերթն ամեն օր տպագրում է հաղորդագրություններ սովետական բանակի հաջողությունների ու ֆաշիստական բարոյալքված բանակների հաջորդական պարտությունների մասին: Ընդհանուր ոգևորության և գաղափարական վերելքի արգասիք էր նաև այն, որ այս նույն շրջանում բազմաթիվ հայեր դիմում են ընդունվելու կոմկուսի շարքերը: Իրենց դիմումներում նրանք բոլորն էլ բարձր են գնահատում կոմունիստական կուսակցության դերը Լիբանանի և Սիրիայի ժողովուրդների հակաֆաշիստական պայքարում:

Նյութական միջոցների նոր հանգանակությունը հնարավորություն է ընձեռում պատվիրելու նոր տանկեր, որոնցով պետք է կազմվեր «Սասունցի Դավիթ» տանկային երկրորդ շարասյունը: Այս կապակցությամբ 1944 թ. մայիսին Գևորգ Չորեքչյանը հեռագրում է ՍՍՀՄ պետական պաշտպանության կոմիտեին, որտեղ հայտնում է, որ նոր տանկային շարասյան համար ՍՍՀՄ պետբանկ մուծված գումարն արդեն անցնում է 40.000 դոլարից և 10.000 անգլիական ֆունտ ստեռլինգ*:

1944 թ. հունիսի 15-ին ստացվում է բանակի զրահատանկային զորքերի հրամանատար, զրահատանկային զորքերի մարշալ Ֆեդորենկոյի և կարմիր բանակի զրահատանկային զորքերի գեներալ-գնդապետ Բիրյուկովի հեռագիրը՝ «Սասունցի Դավիթ» տանկային երկրորդ շարասյան մարտի մեջ մտնելու մասին (նույն տեղը):

Պատերազմի հաղթական ավարտը ոգևորության նոր ալիք բարձրացրեց սփյուռքում: Սկսվեց նոր ծավալուն աշխատանք՝ հայրենադարձության ոչ հեշտ գործի կազմակերպումը, որտեղ ավանգարդային դերը դարձյալ պատկանում էր սփյուռքահայ կոմունիստներին:

Լիբանանից և Սիրիայից մեծ թվով հայեր հայրենիք ներգաղթելուց հետո էլ այս գաղթօջախները շարունակեցին ներգործուն մասնակցություն ցուցաբերել տեղի ժողովուրդների ազգային-սոցիալական պայքարին: Գնահատելով լիբանանահայ համայնքի կարևոր դերը արաբ առաջադիմական խմբավորումների հակասիոնիստական, հակաիմպերիալիստական պայքարում, Լիբանանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հայտարարության մեջ ասված է. «...Հայ կոմունիստներն ու բոլոր հայ հայրենասերները ապաստանելով մեր երկիրը՝ իրենց մասնակցությունը բերին յեղափոխական, ազգային և ընկերային պայքարին՝ ի խնդիր Լիբանանի անկախութեան և ի պաշտպանություն անոր գերիշխանութեան, յանուն ընկերային յառաջդիմութեան և դեմոկրատիայի: Հայ կոմունիստներն ու հայրենասերները, իրենց զոհողություններով և պայքարով տվին ապացոյցը իրենց պատասխանատուութեան գիտակցութեան բարձր ոգիին՝ ինչ կը վերաբերի լիբանանեան հայրենիքի և լիբանանցի ժողովուրդի ճակատագրին և ապագային» («Կանչ», 1981 թ., № 526 (6959)):

* Տե՛ս «էջմիածին» ամսագրի 1944 թվականի №№ 2—3-ում և «Սովետական Հայաստան» օրաթերթի 1944 թ. № 250-ում բերված տվյալները, տե՛ս նաև ՀՍՍՀ ՊԿՊԱ, ֆոնդ 409, ցուցակ 1, գործ 2000, թուղթ 3։

* ՀՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 409, ցուցակ 1, գործ 1992, թուղթ 1։



Եթե հայրենիքի վտանգված տարիներին սփյուռքում հակաֆաշիստական պայքարի ու հայրենիքին օգնելու գործի կազմակերպման առաջամարտիկները սփյուռքահայ կոմունիստներն էին, ապա այսօր էլ նրանք քայլում են արաբ կոմունիստների ու արաբական առաջադիմական խմբավորումների շարքերում:

Միջազգային ռեակցիան բարդ իրավիճակ է ստեղծել Արաբական արևելքում: Լիբանանում սանձազերծված է եղբայրասպան պատերազմ: Այս վճռորոշ պահին, երբ հարցականի տակ կարող է դրվել լիբանանահայ ամբողջ գաղթօջախի գոյությունը, Լիբանանի մեր հայ եղբայրներին բարոյական ու նյութական ձեռք մեկնեց Սովետական Միությունը: Սովետական Միության վճռական հայտարարությունը և ապա նյութական օգնությունը պատերազմից տուժած մեր հայրենակիցներին այն կարևոր ազդակները հանդիսացան, որոնք վիժեցրին արաբական ռեակցիայի խնամքով մշակված ծրագրերը: Սովետական Միությունը միշտ էլ եղել և մնում է արաբ ժողովուրդների հուսալի և անշահախնդիր բարեկամը: Այս բանի ճշգրիտ գիտակցումով էլ Մոսկվայում ՍՄԿԿ XXVI համագումարը ողջունեց Սիրիայի կոմունիստական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար Խալեդ Բագդաշը: Համագումարի օրերին, Միությունների տան սյունազարդ դահլիճում, որտեղ կազմակերպվել էր Մոսկվայի կուսակցական ակտիվի հանդիպում համագումարի արտասահմանյան պատվիրակությունների անդամների հետ, գնահատանքի ջերմ խոսքեր ասաց Լիբանանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար Ժորժ Հաուին:

Այս օրերին, երբ առավել տագնապալի է դարձել միջազգային իրադրությունը, առաջնահերթ խնդիրը խաղաղության պաշտպանությունն է: «Պաշտպանել խաղաղությունը,— ՍՄԿԿ XXVI համագումարում հայտարարեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— միջազգային տեսակետից այժմ մեր կուսակցության, մեր ժողովրդի, ինչպես նաև մոլորակի բոլոր ժողովուրդների համար չկա ավելի կարևոր խնդիր» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 49—50):

Այս խնդրի իրագործման մտահոգությամբ են տոգորված նաև Լիբանանի և Սիրիայի կոմունիստական կուսակցությունները, որոնց շարքերում իրենց կարևոր ավանդն են ներդնում հայ կոմունիստները:

# ՊԱՀՊԱՆԵՆՔ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ

**ՄԱՐԳԱՐԻՏ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆ**
**Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

**ԺԱՄԱՆԱԿՆ Է ԳԻՏԱԿՑԵԼՈՒ,** նշված է Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարին ներկայացված ՀԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, որ շրջակա միջավայրի, ընդերքի հարստությունների ու բնության պահպանության ասպարեզում մենք պետք է լինենք առավելագույնս հեռատես, դրանց հետ վարվենք ավելի նրբանկատությամբ:

Բնության վրա մարդու ունեցած ազդեցության մեծացումը փոխում է մեր մոլորակի բնությունը, հետևապես և նրա բուսական ու կենդանական աշխարհը: Այդ է պատճառը, որ պրոգրեսիվ աշխարհայացքի տեր մարդիկ ապագայի և գալիք սերունդների նկատմամբ համակված են մեծ պատասխանատվությամբ:

ՍՍՀՄ սահմանադրության մեջ (հոդված 18) նշվում է, որ անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկվում հողի և դրա ընդերքի, ջրային ռեսուրսների, բուսական ու կենդանական աշխարհի պահպանման և գիտականորեն հիմնավորված, ռացիոնալ օգտագործման համար, օդի և ջրի մաքրության պահպանման, բնական միջոցների վերարտադրության ապահովման և մարդու շրջակա միջավայրի բարելավման համար: Կենդանիների ու բույսերի պահպանման պրոբլեմն առանձնապես կենսական է այժմ, գիտատեխնիկական հեղափոխության շրջանում, երբ մարդիկ վիթխարի հնարավորություններ ունեն բնության վրա ներգործելու: Մեր երկրում հատուկ ուշադրություն է նվիրվում այդ խնդրին: Այս առնչությամբ ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության բնության պահպանության, արգելանոցների, անտառային և որսորդական տնտեսության գլխավոր վարչության բնության պահպանության գիտահետազոտական լաբորատորիան 1978 թ. հրատարակել է Կարմիր գիրք, որը պարունակում է խստիվ պահպանման ենթակա կենդանիների ու բույսերի ցուցակը: Կարմիր գրքում նախատեսված է պահպանման ենթակա երկու կատեգորիա. 1. ոչնչացման վտանգի տակ գտնվող տեսակներ, 2. հազվագյուտ տեսակներ:

Կարմիր գրքի հրատարակությունը կողմնորոշիչ դեր խաղաց կենդանական ու բուսական աշխարհների պահպանման գիտական ուսումնասիրության գործում, ակտիվացնելով պետական ու հասարակական կազմակերպությունների գործունեությունը երկրի բնական ռեսուրսների պահպանման ոլորտում:

Բնության պահպանությունը սերտորեն կապված է մի շարք գիտությունների հետ և կարող է իրագործվել միայն դրանց միասնական զարգացման հիման վրա: Բայց ամենից ավելի այն հիմնված է էկոլոգիայի վրա, գիտություն, որի գլխավոր գործնական նպատակն է ստեղծել երկրի ռեսուրսների կոմպլեքսային ու ռացիոնալ օգտագործման գիտական հիմք, միաժամանակ միջավայրը պահպանելով մարդկանց համար ցանկալի վիճակում: Էկոլոգիական տվյալների նախնական կուտակմամբ են զբաղվում բուսաբանությունը, կենդանաբանությունը և միկրոբիոլոգիան:

Էկոլոգիան սերտորեն կապված է նաև ոչ բիոլոգիական գիտությունների՝ քիմիայի, ֆիզիկայի, երկրաբանության, աշխարհագրության հետ: Պատահական չէ, որ այդ գիտությամբ վերջերս զբաղվում են նաև բիոլոգիայից շատ հեռու մասնագիտություններ՝ ճարտարապետությունն ու քաղաքաշինությունը:

Ժամանակակից էկոլոգիան գիտական ուղղությունների մեծ կոմպլեքս է, որն իր ուսումնասիրությունների համար օգտագործում է շատ գիտական մեթոդներ ու տեխնիկական միջոցներ: Անցյալում էկոլոգիան գլխավորապես դաշտային դիտումներ և հավաքումներ էր կատարում. այժմ այն դարձել է ճյուղավորված գիտություն, որը գործնականում խարսխվում է ժամանակակից բնագիտության բոլոր ճյուղերի ու տեխնիկայի նվաճումների վրա: Էկոլոգիան իր տվյալների քննման համար օգտագործում է ժամանակակից մաթեմատիկան և հաշվիչ մեքենաները, հեռուստատեսային կամերաները, ավտոմատ կառուցվածքները, ռադիոհաղորդիչները և այլն:

Էկոլոգիան սովորաբար բաժանում են երկու ճյուղի— 1. աուտէկոլոգիա, որն ուսումնասիրում է պոպուլյացիայի, այսինքն՝ որևէ տեսակի պատկանող անհատի կամ անհատների խմբավորումների փոխհարաբերությունը միջավայրի հետ. 2. սինէկոլոգիա, որն ուսումնասիրում է տարբեր տեսակների համակեցությունների (բիոցենոզ) փոխհարաբերությունները ինչպես միմյանց, նույնպես և իրենց միջավայրի հետ: Քանի որ սինէկոլոգիայի հիմնական առարկան օրգանիզմների համակեցությունների կամ բիոցենոզի ուսումնասիրությունն է, այն հաճախ անվանվում է բիոցենոլոգիա: Միջազգային գրականության մեջ առաջարկված է բիոցենոզն անվանել էկոսիստեմ, իսկ էկոլոգիայի համապատասխան բաժինը կոչվում է ուսմունք էկոսիստեմների մասին:

Պոպուլյացիաների էկոլոգիան էկոլոգիայի շատ կարևոր բաժինն է, քանի որ այդ ուսումնասիրությունների միջոցով է հնարավոր դառնում որոշել բնության մեջ գոյություն ունեցող այս կամ այն տեսակի քանակային վիճակը, հետևաբար և՝ այդ կենդանիների օգտագործման հնարավորությունները: Այս հարցերի հետ սերտորեն կապված է նաև ինքնուրույնություն ստացած մի գիտություն՝ էթոլոգիան, որն զբաղվում է կենդանիների վարվելակերպի ուսումնասիրությամբ:

Էկոլոգիական ուսումնասիրություններն արդյունավետ են լինում, եթե դրանք խարսխվում են բուսաբանության, կենդանաբանության, էթոլոգիայի, ֆիզիոլոգիայի և այլ ճշգրիտ գիտությունների տվյալների վրա: Էկոլոգիական այն աշխատանքները, որոնց նպատակն է տընտեսական էական խնդիրների լուծումը, անհնար են առանց ուսումնասիրվող շրջանի բուսական ու կենդանական աշխարհների և դրանց մեջ մտնող կարևոր տեսակների ապրելակերպի իմացության: Ուստի և էկոլոգիայի զարգացման համար անհրաժեշտ է բարելավել նաև բույսերի և կենդանիների բազմազանության ուսումնասիրությունը, ինչպես հարկն է ճանաչել տարբեր գոտիների և շրջանների բուսական ու կենդանական աշխարհը:

Ելնելով բուսաբանական ու կենդանաբանական ուսումնասիրություններից՝ էկոլոգիան նոր խնդիրներ ու հեռանկարներ է առաջադրում այդ դասական գիտություններին: Կան մի շարք առանցքային պրոբլեմներ, որոնց շուրջն են կենտրոնանում ժամանակակից էկոլոգիայի հիմնական ուղղությունները: Այսպես՝ էկոլոգները զբաղվում են օրգանիզմների աշխարհագրական, տեղային ու սեզոնային փոփոխականության, ներտեսակային խմբավորումների փոփոխականության և այլ հարցերով: Առանձին նշանակություն են ստանում պոպուլյացիաների ծայրահեղ պայմաններին հարմարվելու հետազոտությունները, որովհետև դրանք կապված են նոր տարածքների (հյուսիսային, անապատային, բարձր լեռնային) յուրացման հետ:

Կարևոր խնդիրներից է նաև պոպուլյացիաների քանակային կարգավորումը: Այս ուսումնասիրությունները հիմք են ծառայում հատկապես գյուղատնտեսության և անտառային վնասատուների, ինչպես և ընտանի կենդանիների հիվանդությունների հարուցիչների դեմ պայքարի կազմակերպման, օգտակար կենդանիների բուծման ու բազմացման գործում: Այս խնդիրներն առաջնակարգ դեր են խաղում և ձկնաբուծության բնագավառում:

Էկոլոգիայի կարևորագույն խնդիրներից է նաև բիոլոգիական ռեսուրսների՝ հողի, քաղցրահամ ջրերի և ծովի բերրիության ռացիոնալ օգտագործման հնարավորությունների ապահովումը: Այն ուսումնասիրում է նաև հողի տարբեր տեսակներն ու հողում տեղի ունեցող պրոցեսները: Էկոլոգիական հետազոտությունների միջոցով պարզաբանվում է մարդու դերը ջրի, օդի և հողի աղտոտման գործում: Հատկապես ուսումնասիրվում և կիրառվում են ջրի որակի բիոլոգիական ստուգման մեթոդները:

Բացի վերոհիշյալ էկոլոգիական ընդհանուր պրոբլեմներից, գոյություն ունեն բազմաթիվ կոնկրետ պրակտիկ խնդիրներ, որոնք չեն կարող լուծվել առանց էկոլոգի մասնակցության: Դրանցից առաջնային են այն ուսումնասիրությունները, որոնց նպատակն է մարդկանց պաշտպանել միջավայրի հետ կապված հիվանդություններից: Կարևոր է նաև արոտավայրերի, էրոզիայի ենթարկված հողերի, անտառների վերականգնումը, ինչպես և քաղաքների ու գյուղերի օրգանական մնացորդների ռացիոնալ օգտագործումը: Ժամանակակից ամենահրատապ հարցերից է երկրի առանձին վայրերի պահպանումը՝ հատուկ արգելավայրերի կազմակերպման միջոցով:

«Վայրի բնությունը ո՛չ միայն հանգստյան ամենալավ վայրն է, այլև անփոխարինելի է գիտական ուսումնասիրությունների համար,— գրել են ակադեմիկոս Ա. Լ. Թախտաջյանը և պրոֆեսոր Ա. Ա. Ֆեոդորովը Երևանի ֆլորան գրքում:— Այն դաշտային լաբորատորիա է

միկրոէվոլյուցիայի, էկոսիստեմների, հատկապես այն նուրբ փոխհարաբերությունների ուսումնասիրման համար, որոնք տեղի են ունենում էկոսիստեմների տարբեր բաղադրիչների միջև: Միաժամանակ վայրի բնությունը շատ արժեքավոր ու հետաքրքրական տեսակների գենոֆոնդերի շտեմարան է իր ողջ բազմազանությամբ, որը կարևոր նշանակություն ունի մարդկային կյանքի տարբեր՝ թե՛ գործնական, թե՛ իմացական և թե էսթետիկական ոլորտներում»: Ահա ինչու այնպիսի մեծ նշանակություն ունի կենդանիների տեսակների պահպանությունը:

Կենդանաբանները հատկապես զբաղվում են ողնաշարավոր կենդանիների պահպանության կազմակերպմամբ: Հիշենք, օրինակ, թե ինչպես են ոչնչացումից փրկվել Պրժևալսկու ձին, զուբրը:

Այլ է անողնաշարավոր կենդանիների, դրանց հետ և միջատների պահպանման խնդիրը: Այս կենդանիների պահպանման հարցը դիտվում է երկու տեսանկյունով: Նախ՝ առանձին տեսակներին ոչնչացումից փրկելը և ապա՝ համակեցությունների որոշ տիպերի, առանձին լանդշաֆտների պահպանումը: Մեծ է միջատների դերը էկոսիստեմների մեջ, հատկապես էկոսիստեմների փոփոխությունների ճանաչման առումով, որովհետև միջավայրի փոփոխականությանը համապատասխան առաջին հերթին փոխվում են դրանց վիճակն ու կազմը: Այդ իսկ պատճառով անհրաժեշտ է որքան կարելի է լրիվ պահպանել կենդանիների ու բույսերի բազմազանությունը: Ձևափոխելով բնությունն ըստ մեր կարիքների, պետք է ճանաչենք և հաշվի առնենք բնական օրինաչափությունները բնությանն անուղղելի վնաս չհասցնելու համար:

Միջատների աշխարհը ժամանակակից գիտությունը համարում է մեր մոլորակի մեծագույն բիոլոգիական երևույթներից մեկը: Միջատներն ավելի շատ և ավելի հարուստ են իրենց տեսակային կազմով, քան մյուս բոլոր կենդանիներն ու բույսերը միասին վերցրած: Այժմ աշխարհում հայտնի է համարյա 1.000.000 տեսակ միջատ (այդ թիվը դեռ վերջնական չէ): Մեր երկրի կենդանական աշխարհում հայտնի են ոչ պակաս քան 80—100 հազար տեսակ միջատ:

Այսպիսով, բնական և հասկանալի է միջատների հսկայական դերը բնության մեջ: Ամենից առաջ պետք է հաշվի առնել, թե դրանք որքան կարևոր են ծաղկավոր բույսերի փոշոտման համար, բնավ չանտեսել այն էական հանգամանքը, որ միջատներն ակտիվ մասնակցում են բնության մեջ սերմերի ու պտուղների արտադրությանը, մեծապես ազդում բույսերի բերքատվության վրա:

Օգտակար միջատներից են, օրինակ, շերամի որդը, մեղուն, որդան կարմիրը: Մեծ է պարազիտ տեսակների (էնտոմոֆագների և գիշատիչների) նշանակությունը վնասակար միջատների թիվը չափավորելու գործում: Միջատները սանիտարներ են բնության մեջ: Սնվելով բուսական ու կենդանական մնացորդներով, ազատում են բնությունը աղտոտություններից, մասնակցում հողակազմության, հողաստեղծման, հողի բերրիության բարձրացման պրոցեսներին: Միջատները ևս իրենց հերթին կեր են ծառայում շատ կաթնասունների, թռչունների, ձկների համար, այդպիսով ապահովելով նրանց գոյությունը:

Սակայն ավելի հանրահայտ է միջատների հասցրած վնասը գյուղատնտեսությանը, ինչպես և այն, որ դրանք մարդու և կենդանիների մի շարք ծանր հիվանդությունների հարուցիչներ, նաև փոխանցողներ են: Այդ պատճառով, բնականաբար, անողոք պայքար է կազմակերպվում միջատների դեմ մարդկանց ու կենդանիների առողջությունը, ինչպես և բերքը պահպանելու նպատակով: Հաշվի առնելով բնության պահպանության, միջավայրը չթունավորելու ժամանակակից պահանջը՝ մշակվում են նոր մեթոդներ վնասակար միջատների դեմ պայքարելու համար: Օրվա պահանջն է ոչ ընտրական ձևով ազդող քիմիական նյութերը փոխարինել բույսերի պաշտպանության ինտեգրալ միջոցներով. այս դեպքում քիմիական նյութերը ոչնչացման միջոցներից դառնում են քանակային կարգավորման միջոցներ, որովհետև հայտնի է, որ մեծ տարածությունների մշակումը քիմիական ուժեղ նյութերով վնասում է ո՛չ միայն վնասատու, այլև օգտակար միջատներին, թռչուններին, ձկներին, կաթնասուններին և հենց իրեն՝ մարդուն:

Ինտեգրալ պայքարի անհրաժեշտությունը տեսականորեն հիմնավորված է, բայց գործնականում մեծ դժվարություններ կան դրա ծավալման համար: Նախ՝ պահանջվում է կենդանական տեսակների, ինչպես և միջատների խորազնին ուսումնասիրություն, ինչպես նաև պարազիտ միջատների կամ էնտոմոֆագների կազմի, զարգացման առանձնահատկությունների ու օգտակար դերի պարզաբանման հանգամանալի հետազոտություններ: Դրա հիման վրա պետք է հայտնաբերվեն թույների առավել ռացիոնալ կիրառման ձևեր, սահմանվեն օգտակար տեսակների համար թույների օգտագործման ամենաանվտանգ ժամկետները և այլն: Անհրաժեշտ է որոշել այս կամ այն վնասատուի վնասատվության չափանիշը, որն



անխուսափելի է դարձնում դրա դեմ մղվող քիմիական պայքարը: Էական նշանակություն ունի վնասատու միջատների դեմ հրապուրող նյութերի, նաև միկրոբային պրեպարատների օգտագործումը: Այսպես, շատ վնասատուների դեմ կիրառվում է արուների մասսայական ոչնչացումը, նախապես հրապուրելով նրանց էգերի արտադրած հորմոնալ նյութերով:

Վնասատուների դեմ բիոլոգիական պայքարի մեթոդներից մեկը կուլտուրական բույսերի վնասատուների նկատմամբ կայուն սորտերի ներդրումն է: Բույսերի պաշտպանության այդ մեթոդները նվազեցնում են միջավայրի քիմիական աղտոտման աստիճանը և էական դեր են խաղում միջավայրի պահպանման առումով: Կարևոր է նաև տեղական կենդանական աշխարհի հարստացումը օգտակար տեսակների կլիմայավարժեցման միջոցով:

Կովկասի բարդ երկրաբանական պատմությունը, բուսական հարուստ աշխարհը պայմանավորել են նաև միջատների մեծ բազմազանությունը, դրանց տեսակային կազմի առանձնահատկությունները: Այդ վերաբերում է նաև հայկական լեռնաշխարհի կենդանական, հատկապես միջատների աշխարհին, որի ծագման ու կազմության վրա ազդել է, անշուշտ, և հարևան երկրների կենդանական աշխարհը: Հարավից այստեղ հասնում են ջերմասեր ու չորասեր կենդանիներ, իսկ հյուսիսից ցրտադիմացկուն, խոնավասեր, անտառային ու լեռնային տեսակներ:

Հարուստ և բազմազան է Հայաստանի միջատների աշխարհը: Այսպես՝ երկթևանիներից լավ ուսումնասիրված են տնային ճանճը և արյունածուծ մոծակներն ու մժեղները: Բույսերի հետ են կապված գալլեր առաջացնող փոքրիկ գալամլակները: Հանդիպում են նաև թավամազ բիբիո ճանճերը: Հատկապես լավ է ուսումնասիրված խիրոնոմիդ ընտանիքը Սևանում: Առանձնապես հարուստ են մոզերի, գիշաճանճերի, բզզանների, խայտաճանճերի, հացաճանճերի, մսաճանճերի խմբերը. բոռերն ու շնաճանճերը վնասակար են հատկապես անասնապահության համար:

Բնության մեջ մեծ է թաղանթաթևավորների դերը: Այս խմբին են պատկանում մեղուները և բազմաթիվ պարազիտ տեսակներ, որոնք չափավորում են վնասատուների քանակային կազմը և կարող են մեծ դեր խաղալ վնասատուների դեմ ինտեգրալ պայքարի կազմակերպման գործում: Այս կարգում մեծ խմբեր են կազմում եղջերապոչերը, աղոցողները, ջուլհակ-աղոցողները, մրջյունները: Իրենց բազմազանությամբ ու գեղեցկությամբ բնության մեջ աչքի են ընկնում թիթեռները: Հայաստանում կան թիթեռների հազվագյուտ տեսակներ (մաքաոնին, պոդալիրիուսին, պառնասիուսին), որոնք իրենց գեղեցկությամբ ունեն էսթետիկական նշանակություն և արժանի են ամենահոգածու վերաբերմունքի:

Հայաստանի բնությանը բնորոշ են նաև ցանցաթևավորների դասին պատկանող նեմոպտերա, լեռտա, ասկալաֆուս, պալպարես ցեղերի տեսակները: Իրենց արտաքին տեսքով առանձնապես ուշագրավ են նեմոպտերա տեսակները՝ երկարացած հետին թևերով: Սրանք բոլորը և հատկապես պալպարեսի թրթուրները գիշատիչներ են, սնվում են միջատներով և կարող են որոշակի դեր խաղալ վնասատու միջատների քանակի կարգավորման համար, հետևաբար և ենթակա են պահպանության:

Տեսակներով ամենից հարուստ է կարծրաթևավորների կամ բզեզների կարգը, որի մեջ մտնում են ավելի քան 100 ընտանիք, սակայն Հայաստանի համար բնորոշ են մի քանիսը: Դրանցից է գնայուկների ընտանիքը, որը շատ հարուստ է տեսակներով. այս ընտանիքից են կառաբուս ցեղի տեսակները, որոնք գիշատիչ են և օգտակար, ապրում են գլխավորապես լեռնային ու անտառային շրջաններում: Անհրաժեշտ է պահպանել կալոզոմա ցեղի տեսակները, որոնք անտառներում ոչնչացնում են օղակավոր մետաքսագործ թրթուրներին: Սանիտարների դեր են կատարում կարճաթև բզեզների որոշ տեսակներ, ազատելով բնությունը օրգանական մնացորդներից: Հարուստ է ներկայացված թերթաբեղիկների ընտանիքը, որի կազմում են հացաբզեզները, մարմարյա բզեզները, մայիսյան և հունիսյան բզեզները, ոսկեփայլ բրոնզաբզեզները: Ամենուրեք տարածված են զատիկները. դրանք օգտակար են, որովհետև սնվում են լվիճներով:

Հայաստանում հատկապես աչքի են ընկնում մալոզիա ցեղի տեսակները, որոնք կապված են պրանգոս ցեղի հովանոցավոր բույսերի հետ: Բազմաթիվ են տերևակերները, որոնք հաճախ ազատ զարգանում են բույսերի վրա: Լոբազգիներին զգալի վնաս են հասցնում ընդակերները, որ զարգանում են այդ բույսերի սերմերում: Երկարակնճիթ բզեզներից հայտնի են պտղաբուծության վնասատուներ, վառ մետաղափայլ ռինխիտները, պահեստների վնասատու տեսակները. բազմաթիվ են անտառներում ու լեռներում ապրող անթև օտիորինխուսները: Վերջին ժամանակներս մոլախոտերի դեմ սկսել են պայքարել երկարակնճիթ բզեզներով: Անտառներում զգալի վնաս են տալիս կեղևակերները:

Բնության մեջ նկատելի դեր են խաղում խավարասերները, ականջմտուկները, ուղղաթևները, որոնցից են գյուղատնտեսության վը-

նապատուներ իտալական մորեխը, շալածղրիդը, իշախառանչը, եգիպտական մորեխը:

Բույսերին լրջորեն վնասում են լվիճները, դրանցից հատկապես ֆիլոքսերան, ինչպես և որդանները, վահանակիրները: Սակայն վերջիններիս մեջ անհրաժեշտ է պահպանել որդան կարմիրը, որը Հայաստանում հնուց հայտնի է իր տված բարձրորակ կարմիր ներկով:

Հայաստանում շատ տարածված են նաև մլուկների կամ կիսակարծրաթևերի, ճպուռների, մազաթևավորների, տրիպսնե և այլ կարգերը: Իսկ հարավային շրջաններում՝ տերմիտները և ձողամիջատները...

Ինչպես արդեն ասված է, հարկ է պահպանել միջատների աշխարհը, չպետք է մոռանալ, որ ժամանակակից քիմիական միջոցները կարող են ոչնչացնել ո՛չ միայն վնասակար, այլև օգտակար միջատները, զգալիորեն խախտելով բնության համաչափությունը:

Միջատների պահպանման հարցը մեր օրերում հրատապ է դարձել: Միջազգային լեռնային կոմիտեի կազմում ստեղծված է հատուկ սեկցիա, որին հանձնարարված է միջատների պահպանության խնդիրների քննարկումը: Արդեն երեք խորհրդակցություն է հրավիրվել Երևանում (1973, 1975 և 1976): Զեկուցումների թեզերը հրապարակվել են և հարուստ նյութ են պարունակում միջատների պահպանման անհրաժեշտության վերաբերյալ: Հատկապես կարևոր է առաջին խորհրդակցության բանաձևը, ուր նշված է պահպանման ենթակա հետևյալ խմբավորումների մասին. ա) բոլոր օգտակար, հազվագյուտ, ռելիկտային (հնագույն դարաշրջաններից մնացած) և էնդեմ (միայն տվյալ վայրում ապրող) կենդանիների ու բույսերի տեսակները. բ) այն միջատները, որոնք իրենց գեղեցկության շնորհիվ գեղարվեստական-էսթետիկական նշանակություն ունեն. գ) առանձնահատուկ բնական համալիրների միջատների խմբավորումները, բացառությամբ վնասակար տեսակների:

Հարկ է հոգալ առաջին խմբի պարազիտ և գիշատիչ տեսակների պահպանման համար, ինչպես և բույսերը փոշոտող միջատների, շերամի որդի, ներկ (Հայաստանում որդան կարմիրը) և լաք արտադրող միջատների մասին: Երկրորդ խմբին են պատկանում բոլոր գեղեցիկ միջատները, հատկապես այն տեսակները, որոնք վնասակար չեն կամ քիչ վնաս են հասցնում: Դրանք կարելի է պահպանել հատկապես այն վայրերում, որտեղ չկան պայմաններ դրանց մասսայական զարգացման համար, ինչպես այդ արված է կաղնու մեծ բեղիկավորի կամ սիրամարգակնի նկատմամբ:

Բնության, կենդանական ու բուսական աշխարհների պահպանությունը հույժ կարևոր գործ է, որին պետք է մասնակցեն ՍՍՀՄ բոլոր քաղաքացիները: Հողը, գետերն ու գետակները, լճերն ու լճակները, անտառներն ու արոտավայրերը այն միջավայրն են, որում մենք ապրում ենք, որը մենք ընկալում ենք որպես մեր հարազատ հայրենի բնություն:

Բնության պահպանության անհրաժեշտությունը պետք է խորապես ըմբռնեն հասարակության բոլոր խավերը, որովհետև միայն ընդհանուր հոգածո վերաբերմունքը աղտոտումից և ոչնչացումից կպահպանի մեր միջավայրը, մեր դաշտերը, պուրակները, անտառները և տարբեր տեսակի ջրավազանները: Այս խնդիրների վրա պետք է կենտրոնացնել ուշադրությունը դեռևս դպրոցական հասակից: Այդ ժամանակվանից իսկ պատանին, աղջիկը պետք է իմանան, որ բնությունը, հատկապես կենդանի բնությունը, մարդու համար իմացության, առողջության, երջանկության մշտական աղբյուր է: Ահա թե ինչու պետք է ամեն կերպ, թե՛ ընտանիքում, թե՛ դպրոցում խրախուսվի նրանց սերը, հետաքրքրությունը կենդանական աշխարհի նկատմամբ:

Ծանր, անախորժ լռություն կլիներ մեր դաշտերում, ձորերում ու հովիտներում, եթե չլինեին կենդանիները, դրանց թվում և միջատները: Պահպանենք, ուրեմն, մեր բնության անբաժանելի մասը՝ հարուստ ու հետաքրքրական միջատների աշխարհը:

*Լենինգրադ*



# ԷԴՈՒԱՐԴԱՍ ՄԵԺԵԼԱՅՏԻՍԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ

*«Ժողովուրդների բարեկամությունը մի հրաշալի ուժ է, որը կարող է մեր երկրագունդը վերածել հավերժական հրաշքի»:*

*ԷԴՈՒԱՐԴԱՍ ՄԵԺԵԼԱՅՏԻՍ*

ԼԻՏՎԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ բանաստեղծ, լենինյան մրցանակի դափնեկիր, սոցիալիստական աշխատանքի հերոս Էդուարդաս Մեժելայտիսը բովանդակալից ու բարդ, որոնումներով ու հայտնագործումներով լի ստեղծագործական ուղի է անցել՝ դառնալով սովետական պոեզիայի նշանավոր դեմքերից մեկը: Էդուարդաս Մեժելայտիսի ողջ ստեղծագործությունը տոգորված է ժողովրդական մտածողությամբ: Իր խորիմաստ, քնարական ստեղծագործություններով նա վաղուց արդեն համոզել է աշխարհին, որ Լիտվայում ամեն ինչ բանաստեղծական է:

Էդուարդաս Մեժելայտիսի աշխարհայացքը ձևավորվել է հասարակական բարդ ու հակասական իրադրության պայմաններում: Վաղ հասակից նա շփվել է հեղափոխականորեն տրամադրված բանվորական միջավայրի հետ և բուրժուական Լիտվայի պայմաններում մարդու ազատության ու երջանկության իղձը գտել սովետական կարգերի մեջ:

... 1940 թվականի ամռանը Լիտվայում վերջնականապես տապալվեցին բուրժուական կարգերը: Մտնելով ՍՍՀՄ-ի կազմի մեջ՝ Լիտվան սկսեց ընթանալ սոցիալիզմի ուղիով:

Ակտիվ կոմերիտական Էդուարդաս Մեժելայտիսը շրջում էր հանրապետության տարբեր վայրերում, ելույթ ունենում աշխատավոր երիտասարդության ժողովներում ու հավաքներում, հոդվածներով, ակնարկներով ու ռեպորտաժներով հանդես գալիս հանրապետական մամուլի էջերում: Շուտով նրան ընտրում են Լիտվայի կոմերիտմիության Կենտկոմի անդամ և հանձնարարում խմբագրել «Կոմյաունիմո տիեսա» («Կոմերիտական ճշմարտություն») հանրապետական կոմերիտական լրագիրը: Այստեղ նա բերրի շուրջն է համախմբում երիտասարդ գրականագետների, մտերմական կապեր հաստատում ավագ սերնդի առաջադեմ գրողներ Պ. Ցվիրկայի, Ս. Ներիսի, Վ. Մոնտվիլայի, Ա. Վենցլովայի, Յ. Շիմկուսի, Կ. Կորսակասի, Տ. Տիլվիտիսի հետ:

Սակայն շատ կարճ տևեց Լիտվայի խաղաղ կյանքը: 1941 թվականի հունիսի 22-ին գերմանական ռազմական օդանավերը ռմբակոծեցին Կաունասը: Մեժելայտիսի քնարը չլռեց: Բանաստեղծը գրչի հետ նաև զենք վերցրեց, մարտի ելավ ֆաշիստական հորդաների դեմ:

Այս պայմաններում առավել խոր ու բեղմնավոր դարձավ Մեժելայտիսի պոեզիան: Եվ շուրջ քսան տարի անց նա ընթերցողին հանձնեց *Մարդը* խորագիրը կրող բանաստեղծությունների շարքը, որը դեռևս պատերազմի ահեղ օրերին ծնված մտահղացումների իրականացումն էր: Մարդասիրությունն ու ջերմ հայրենասիրությունը, կուսակցականությունն ու հայրենիքին նվիրվածությունն էին հորդում բանաստեղծությունների ամեն մի տողից: 1943 թվականին Մոսկվայում լիտվերեն հրատարակվեց Էդուարդաս Մեժելայտիսի բանաստեղծությունների անդրանիկ ժողովածուն՝ *Լիրիկա* խորագրով: Իր *Մահ և կյանք*, *Ծաղիկ*, *Գարուն*, *Մեր ուղին*, *Նույնիսկ արևն էր այսօր կրակում* և մի շարք այլ բանաստեղծություններում Էդուարդաս Մեժելայտիսը գովերգում էր սովետական զինվորի սխրանքը, նրա հայրենասիրությունը: Հետպատերազմյան տարիներին բանաստեղծը հրատարակում է *Հայրենի երկրի քամին* (1946 թ.) խորագիրը կրող բանաստեղծությունների ժողովածուն և որոշ ժամանակ զբաղվում միայն թարգմանությամբ: 1951-ին լույս է տեսնում նրա նոր

գիրքը՝ *Բարձրացող հողը*, որտեղ Մեժելայտիսը գրում է հետպատերազմյան ծանր տարիների մասին, երբ Լիտվայում դեռևս սրված էր դասակարգային պայքարը, երբ այնտեղ պետք է վերսկսվեր սոցիալիզմի կառուցումը: Այդ տարիներին ծնվեց նաև բանաստեղծի *Աղատագրված հացը* բանաստեղծությունների շարքը:

Էդուարդաս Մեժելայտիսի պոեզիայում մեծ տեղ է հատկացված ժողովուրդների բարեկամությանը: Ինտերնացիոնալիստ բանաստեղծը 1952 թվականին մեկնեց Դրիսվյատախ, որտեղ երբ եղբայրական հանրապետությունների՝ Լիտվայի, Լատվիայի և Բելոռուսիայի սահմանագլխին ըսկըսվել էր ժողովուրդների բարեկամություն էլեկտրակայանի կառուցումը: Այստեղ բանաստեղծը տեսավ, թե ինչպես ՍՍՀՄ եղբայրական ազգերը, մեկ սիրտ, մեկ հոգի դարձած, համատեղ կառուցում են, աշխատում: Էլեկտրակայանի շինարարությանը նվիրված պոեմը բանաստեղծը կոչեց *Եղբայրական պոեմ*: Այն ջերմորեն ընդունվեց Սովետական Միության բոլոր հանրապետություններում, թարգմանվեց մի շարք լեզուներով: «Պրավդա»-ում, «Դրուժբա նարոդով» և «Օգոնյոկ» հանդեսներում տպագրվեցին սովետական նշանավոր գրողների գրախոսականները պոեմի մասին: Պոեմի համար 1957 թվականին Էդուարդաս Մեժելայտիսին շնորհվեց Լիտվական ՍՍՀ պետական մրցանակ:

Իր *Մարդը* ստեղծագործությամբ Մեժելայտիսը նոր ուղի բացեց ո՛չ միայն լիտվական, այլև սովետական և համաշխարհային պոեզիայում: Գիրքն ընթերցելուց հետո սովետական նշանավոր գրող Կոնստանտին Սիմոնովը գրել է. «Այս անսովոր և անսպասելի գիրքն ինձ նույնպես հրճվանք պատճառեց, ինչպես հավանաբար ուրիշ ընթերցողների»:

Այդ գրքի թեմայով Լենինգրադի Ս. Մ. Կիրովի անվան օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնում բեմադրվեց Վ. Սալմանովի բալետը, իսկ բանաստեղծի *Հաց և բառ* հրապարակախոսական ժողովածուի հիման վրա Վիլնյուսի երիտասարդական դրամատիկական թատրոնի կոլեկտիվը 1966 թվականին բեմադրեց Ռ. Յանկուտեյի և Ս. Ռագաուսկայատեի *Սաճե Թոչուն* գրական կոմպոզիցիան:

Էդուարդաս Մեժելայտիսը լիտվացի ընթերցողի սեփականությունն է դարձրել Գ. Նարեկացու, Ա. Պուշկինի, Մ. Լերմոնտովի, Տ. Շևչենկոյի, Վլ. Մայակովսկու, Պ. Տիչինայի, Հովհ. Թումանյանի, Ա. Միցկևիչի, Մ. Գորկու, Ավ. Իսահակյանի, Օ. Գոնչարի, Ա. Գրաշու, Վ. Դավթյանի, Ս. Մարշակի, Ս.Միխալկովի և այլ հեղինակների ստեղծագործությունները:

Էդուարդաս Մեժելայտիսի խորապես ազգային ու ժողովրդական արվեստի նյութը ո՛չ միայն հայրենի Նեմանն է, այլև Գանգեսը, Վոլգան, Արաքսը...

1969 թվականին բանաստեղծությունների հընդկական շարքի համար Մեժելայտիսին շնորհվեց Ջ. Ներուի անվան, իսկ 1979-ին՝ Վապցարովի անվան մրցանակներ: «Էդուարդաս Մեժելայտիսի բանաստեղծությունները լի են երկրի երեսին նրա անցած բազմահազար կիլոմետրանոց ճանապարհների նշաններով,— գրել է սովետական նշանավոր բանաստեղծ Պավել Անտոկոլսկին,— դրանց մեջ են և՛ պատերազմի հրրկիզված ճանապարհները՝ ռմբակոծություններից առաջացած փոսերով, և՛ այլ աշխարհամասերի ճանապարհներ, և՛ Աթենքը, և՛ Ստամբուլը, և՛ հարավարևելյան Ասիան, և՛ Հռոմի կոլիզեյը, և՛ Փարիզի հաշմանդամների տունը...

Մեժելայտիսը գերծանրաբեռնված չէ, ընկըճված չէ պատմական և անձնական վերապրումների փորձով: Նա դրանցով զարմացած չէ, այլ միայն թևավորված...»:

Բանաստեղծի ստեղծագործություններում և անձնական կյանքում իր ուրույն տեղն ունի Հայաստանը: Լինում են դեպքեր, երբ բանաստեղծըն ընտրում է իր երկրորդ՝ պոետական հայրենիքը: Մեժելայտիսի համար այդպիսին է Հայաստանը: Բանաստեղծը հազարավոր կիլոմետրեր հեռու է ապրում Հայաստանից, բայց ամուր կապված է հայ մշակույթին, արվեստին ու գրականությանը, սիրում է հայ ժողովրդին ջերմ ու անկեղծ սիրով, ապրում նրա կյանքով, առօրյայով:

... Հայ գրականության հետ Մեժելայտիսի առաջին ծանոթությունն սկսվել է Հայրենական մեծ պատերազմի ահեղ օրերին, երբ խրամատներում կարդում ու ոգեշնչվում էր Ավետիք Իսահակյանի հայրենասիրական ու մարդկայնորեն խոր պոեզիայով: Հետո Մոսկվայում, Իսահակյանի ծննդյան 100-ամյակին նվիրված հանդիսություններին, գնահատելով ու արժեքավորելով մեծ Վարպետի համաշխարհային մշակույթին բերած նպաստը, նա ասաց. «Ես՝ լիտվացի բանաստեղծս, հպարտ եմ, որ այստեղ կարող եմ իմ խոսքն ասել ի պատիվ Ավետիք Իսահակյանի: Ամեն մի ժողովուրդ իրավունք ունի հպարտանալու իր բանաստեղծով, որի ստեղծագործություններն օրգանապես միահյուսվում են ուրիշ ժողովուրդների ազգային մշակույթին»:

Լիտվացի բանաստեղծն առաջին անգամ Հայաստան է այցելել 1969 թվականին՝ Թումանյանի ծննդյան 100-ամյակի հանդիսություններին մասնակցելու: Նա եղավ Էջմիածնում, Գառնիում, Սևանում: Եղավ մեծ բանաստեղծի ծննդավայրում՝ Դսեղում: Սիրահարվեց Թումանյանին, նրա քառյակներին, բանաստեղծություններին: «... Թումանյանի բանաստեղծությունը համլետյան փոքրիկ մոնոդրամա է,— գրեց նա,— բայց թևավոր փոխաբերության բրոնզե խորհուրդների հետևում, գրանիտե բառերի հետևում կանգնած են իրական երևույթներ՝ պատճառը, իրավիճակը, պրոբլեմը, բարու և չարի պատճառը...»:

Մեժելայտիսը, լինելով մեր դարի մեծ անհանգստությունների ու մեծ հույսերի կրողներից մեկը, միավորելով քաղաքացու և բանաստեղծի բուռն սերը մարդու նկատմամբ, չէր կարող բեկուզ հեռվից հեռու չզգալ ու չգնահատել այնպիսի մի «արյունակից» արվեստագետի, ինչպիսին Պարույր Սևակն էր:

1975 թվականին Մոսկվայի «Խուդոժեստվեննայա լիտերատուրա» հրատարակչությունը միութենական ընթերցողի սեղանին դրեց սովետահայ տաղանդավոր բանաստեղծի *Հատընտիրը*: Գրքի *Լույսի և բառու երգիչը* խորագիրը կրող առաջաբանում լիտվացի բանաստեղծը ո՛չ միայն արժեքավորում է Պարույր Սևակի՝ լիտվերենից կատարած բարձրորակ թարգմանությունները՝ Մեժելայտիսի լենինյան մրցանակի արժանացած *Մարդը* ժողովածուն, խոսում իրենց առաջին հանդիպման, «գրական մեծ բարեկամության» մասին, այլև հայ ժողովրդի պատմության ու մշակույթի քաջիմացությամբ վերլուծում է նրա ստեղծագործությունները:

«... Երբ ես լսում եմ Սևակի քնարի ոսկյա լարերի ղողանջը, հիշողությանս մեջ հառնում են այդ երկրի անկրկնելի գույները, արբենում է նրա խաղողի այգիների բույրը, և հնչում են նրա հոգեպարար երգերը: Դա երջանիկ ու բանաստեղծական մարդկանց երկիր է: Իսկ Արարատը նրա Օլիմպոսի գագաթն է... Հայաստանն ունի ընդօրինակման արժանի մեծեր:

Ի՞նչն է ամենից ավելի զարմացնում և ի՞նչն է ամենից ավելի հիացնում հայ բանաստեղծի ստեղծագործության մեջ: Ինձ թվում է, ինչ-որ առանձնահատուկ, ես կասեի՝ սևակյան հայացքը մարդու նկատմամբ: Դա հատուկ, նուրբ և շրջահայաց զգայունությունն է, բարեկամական կարեկցանքն է յուրաքանչյուր մարդու նկատմամբ: Դժվարին պահերին վերընթերցում ես Սևակի բանաստեղծությունները, և հոգիդ թեթևանում է: Նա բուժում է... Նա կատարում է այն, ինչ պարտավոր է կատարել յուրաքանչյուր իսկական բանաստեղծ, նա մարդկայնացնում է մարդուն»:

Մեժելայտիսը հաճախ ու մեծ ոգևորությամբ խոսել է հայ արվեստի, նրա ոգու, ազգային բնավորության մասին: Փիլիսոփա-բանաստեղծի համար Հայաստանի մշակույթն ու պատմությունը հետաքրքրական և ուսանելի խորհրդածությունների առիթ են:

Հայաստանյան ուղևորության ընթացքում Մեժելայտիսի համար, թերևս, ամենամեծ անակնկալը Նարեկացու *Մատյան ողբերգության* պոեմի ռուսերեն թարգմանությունն էր. «...Եվ որքան շատ էի կարդում, այնքան ավելի էր բոնվում շունչս»:

Նարեկացու *Մատյան ողբերգության* պոեմը նա համեմատում է Բախի խորալների հետ և անվանում «Կենդանի ձայնակցողը Գեղարդի քարե վեհապանծ խորալի»:

Մեժելայտիսը լիտվացի ընթերցողի սեղանին գիրքն է դարձրել Նարեկացու, Քուչակի, Թումանյանի, Ավետիք Իսահակյանի ստեղծագործությունները, միութենական և համաշխարհային մամուլում բազմիցս հանդես է եկել հայ ժողովրդին, հայկական մշակույթին ու գրականությանը նվիրված բազմաթիվ բարձրարժեք հոդվածներով: Բանաստեղծի 60-ամյակի օրերին լույս տեսավ նրա երկերի 9-րդ հատորը, որտեղ *Հայաստան* խորագիրը կրող ընդարձակ շարքում տեղ են գտել Հայաստանին ու հայ ժողովրդին նվիրված շատ բանաստեղծություններ:

Ինչպես հայտնի է, հայ և լիտվացի ժողովուրդների բարեկամությունն սկիզբ է առել դեռևս միջին դարերում: 1410 թվականի Գրյունվալդի ճակատամարտին լիտվացիների հետ միասին խաչակիրների դեմ պատերազմել են հայկական երկու գունդ, իսկ 1920-ին Վիլնյուսն ազատագրողների գլուխ կանգնած էր հայ ժողովրդի զավակ Գայը: Ազատագրված Վիլնյուսի բանալիները նա հանձնել է լիտվական բանակի գլխավոր շտաբի պետ, գեներալ-լեյտենանտ Կոնստանտին Կալոլիչ Կլեշչինսկասին: Որպես լիտվացի ժողովրդի անհատնում հարգանքի հավաստիք՝ Վիլնյուսի փողոցներից մեկը կոչվում է Գայի անունով:

Երկու ժողովուրդների բարեկամությունը թրծվել է նաև երկրորդ համաշխարհային պատերազմի բոցերում: Սովետական Միության կրկնակի հերոս, Սովետական Միության մարշալ Հովհաննես Բաղրամյանին շնորհվել է Լիտվայի մայրաքաղաքի պատվավոր քաղաքացու կոչում:

Հայրենական մեծ պատերազմի ժամանակ նրա ղեկավարած զորքերը գերմանաֆաշիստական բռնակալներից ազատագրեցին եղբայրական Լիտվան: Լիտվական հողի համար արյուն են թափել հայ ժողովրդի բազմաթիվ քաջարի զավակներ: Շատ շատերի հետ Լիտվայի ազատության համար զոհվել է նաև կոմերիտական Գառնիկ Հակոբյանը՝ դեռևս կյանքի քսաներորդ գարունը չբոլորած: Հայ ռազմիկին է նվիրված Էդուարդաս Մեժելայտիսի *Խնդրանք* բանաստեղծությունը, ուր կարդում ենք.

Նա Վիլնյուսն էր փրկում, մեր այս քարերը սուրբ,
Ինչպես փրկեր պիտի իր հայրենի տունը...

... 1979-ի ապրիլ-մայիս ամիսներին Էդուարդաս Մեժելայտիսը կրկին այցելեց Հայաստան: Բանաստեղծը եղավ Գառնիում, Գեղարդում, Էջմիածնում, Սարդարապատում, Թումանյանի շրջանում, հանդիպումներ ունեցավ բանվոր-ծա-

տայողների, արվեստագետների, գրողների, լրագրողների, ուսանողների հետ: Հեղինակային երեկոներ կազմակերպվեցին Հայաստանի գրողների միությունում, Երևանի պետական համալսարանում, Խնկո-Ապոր անվան հանրապետական մանկական գրադարանում, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի մշակույթի պալատում:

Բանաստեղծի համար ստեղծագործական նպաստավոր պայմաններ ստեղծվեցին հատկապես Լոռիում: Դեբեդի ափին գտնվող անտառամերձ տնակում ծնվեցին Մեժելայտիսի *Քարե գինի* բանաստեղծական ժողովածուի երկու շարքը: Լիտվական «Տեսա» («Ճշմարտություն») օրաթերթում տպագրվեց առաջին շարքը՝ *Հայկական ավիարլոկնոտ* խորագրով:

Իր երկրորդ այցելության մասին բանաստեղծը գրում է... «Այս այցելությունը կրում էր ավելի շատ ստեղծագործական բնույթ: Առաջին անգամ եղա Մատենադարանում... Հայաստանը գրքի ու դպրության պաշտամունքի երկիր է: Ես խոնարհվեցի Մեսրոպ Մաշտոցի գերեզմանի և Մատենադարանի դեմ դրված նրա արձանի առջև»: Այստեղ ծնվեց *Գիրք* բանաստեղծությունը, ուր նա երգում է հայ ժողովրդի գրասիրությունը:

Ես Հայաստանում գտա հոգևոր իմ
հարազատին,
Գիրքը մեզ կապեց, դարձրեց եղբայր,
Այդպես կապված է մեր Նյամունասը ձեր
Արարատին,
Կապված է սիրով ու հավերժաբար:

«Ինձ վրա անջնջելի տպավորություն թողեցին Հաղպատը, Սանահինը, Սարդարապատը,— գրել է նա.— իսկ Գեղարդը... Եթե աշխարհը ժամանակին իմանար, այն ոչ թե ութերորդ, այլ յոթ հրաշալիքներից մեկը կհամարեր: Հաղպատի վանքը ինձ, որպես բանաստեղծի, պարտադրեց կապ որոնել ժողովրդի հոգեբանության և նրա ստեղծած ճարտարապետության միջև: Դա ինձ համար նոր, հետաքրքրական ու ելակետային խնդիր է:

Մեծ բավականություն պատճառեցին հայ ճարտարապետությունը, Թամանյանի, Հայկ Նահապետի, Գայի արձանները և Երիտասարդական պալատը, որ առաջին հեռագրային պես ասես ողեկոչում է հայ ճարտարապետության վաղը: Երևանը գեղեցիկ, իր դեմքն ունեցող քաղաք է, իսկ Հայաստանը՝ բանաստեղծների ու բանաստեղծական երկիր...»:

Միայն Հայաստանում և Լիտվայում չէ, որ տպագրվել են Էդուարդաս Մեժելայտիսի գործերը Հայաստանի, մեր ժողովրդի, մշակույթի և գրականության մասին: Նա գրել է կենտրոնական և աշխարհի մի շարք հանդեսներում, հանդես է եկել մեր ժողովրդին ներկայացնող դասախոսություններով:

Բանաստեղծի յուրօրինակ թանգարանի վերածված առանձնասենյակում, ինչպես նաև Կաունասի լիտվական գրականության թանգարանում, այսօր խնամքով պահվում և ցուցադրվում են հայաստանյան բազմաթիվ մասունքներ, որոնք Մեժելայտիսին են նվիրել իր հայ բարեկամները. երեք հազար տարվա պատմություն ունեցող սափոր և Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի պղինձ, խաչքար և *Հայկական պոեզիայի անթոլոգիա*, հայ վարպետի պատրաստած ծխամորճ և հայկական տարազով տիկնիկ... Ու գրքե՜ր, գրքե՜ր, գրքե՜ր...

Կաունասի գրականության թանգարանի՝ Էդուարդաս Մեժելայտիսին նվիրված բաժնում ցուցադրված են նաև Մեժելայտիսի ու Մարտիրոս Սարյանի լուսանկարը՝ վարպետի արվեստանոցում և բանաստեղծի *Մարդը* գրքի հայերեն օրինակը, թարգմանչի՝ Պարույր Սևակի «Ձոնյոտ ի ձոյոց քեզ մատուցանեմ» մակագրությամբ: Նրա գրադարանը զարդարում են իր սիրած հայ գրողների շատ գործեր:

Էդուարդաս Մեժելայտիսը քնքուշ սիրո, նվիրվածության նուրբ զգացմունքով է կապված Հայաստանին: Բանաստեղծը խորությամբ է ընկալում մեր ժողովրդի պատմությունը, գրականությունը, արվեստն ու մշակույթը:

Իր իսկ խոսքերով ասած, նա Հայաստանն զգում է հոգու անտեսանելի աչքերով: Մեր հանրապետությանը նվիրված նրա գործերը խոր են Նեմանի ու վեհ Արարատի նման:

Մեծատաղանդ լիտվացի բանաստեղծ Էդուարդաս Մեժելայտիսը կենսահաստատ պոեզիայով այսօր հարստացրել է ո՛չ միայն իր, այլև հայ և սովետական մյուս ժողովուրդների հոգևոր գանձարանը:

Ֆ. Բ. ԲԱԽՉԻՆՅԱՆ

---

## Մամուլի էջերից

# Նամակ խմբագրությանը

# ՀԻՇՈՂՈՒԹՅԱՆ ԱՌԵՎԱՆԳՈՂՆԵՐԸ

Պատմության, անցյալի ու ներկայի իրադարձությունների նենգափոխումը միշտ եղել է բուրժուական պրոպագանդայի առաջատար ուղղություններից մեկը: Իսկ այժմ պատմական ճշմարտության դեմ արշավանքի մեջ են ներգրավվել մասսայական ինֆորմացիայի արդի բոլոր միջոցները: Կեղծարարական գրականությունը լույս է ընծայվում, կարելի է ասել, հոսքային մեթոդով:

Իբրև դրա նոր օրինակ կարող է ծառայել վերջերս Թուրքիայում հրատարակված «Թուրքահայերի հաղորդած փաստերը» („Facts from the Turkish Armenians“. Istanbul 1980). ժողովածուն:

Դատելով այն բանից, որ ժողովածուն լույս է տեսել ո՛չ միայն թուրքերեն, այլ նաև անգլերեն ու ֆրանսերեն, կարելի է եզրակացնել, որ ժողովածուի հրատարակիչները հետապնդել են հեռամետ նպատակներ, ակնհայտորեն ձգտելով իրազեկ դարձնել համաշխարհային հասարակայնության լայն շրջաններին:

Գրքում զետեղված են ներկայումս Թուրքիայում ապրող հայերի արած բազմաթիվ հայտարարություններ: Եվ թեպետ այդ հայտարարությունները վերաբերում են տարբեր հարցերի ու թեմաների, դրանք ընտրված են այնպես, որ դրանցով հաստատվեն ժողովածուին նրանց կցած ծավալուն առաջաբանի հիմնական գաղափարները: Իսկ ինչի՞ մասին են դրանք: Ի՞նչ նոր բան են ցանկացել ընթերցողներին հաղորդել ժողովածուն կազմողները:

Հանրահայտ է այն հսկայական հետաքրքրությունը, որ ամբողջ աշխարհում դրսևորվել է Հայաստանի, հայ ժողովրդի հերոսական ու դրամատիկական պատմության, նրա հին ու ինքնատիպ մշակույթի նկատմամբ: Ականավոր գիտնականներ իրենց կյանքի բազում տարիները նվիրել են հայագիտության պրոբլեմների ուսումնասիրությանը: Այդ պրոբլեմների շուրջը ստեղծվել է մեծածավալ գրականություն, որն արժույթավոր ավանդ է ներդնում գիտության մեջ:

Ցավոք, այդ բանը չի կարելի ասել տվյալ ժողովածուի վերաբերյալ, որը շատ հեռու է իսկական գիտական նպատակներից ու խնդիրներից: Այդ երևում է արդեն դրա առաջին իսկ էջերից: «Հայերը...— պնդում են ժողովածուն կազմողները առաջաբանում,— վեց դար շարունակ Օսմանյան կայսրության շրջաններում խաղաղ գոյակցել են թուրքերի հետ, առանց նվազագույն անարդարության և խտրականության ենթարկվելու: Սակայն XIX դարի վերջին մի խումբ հայեր օտարերկրյա սադրանքի ազդեցությամբ ապստամբեցին պետության դեմ: Ապստամբությունը շարունակվեց նաև XX դարի սկզբին: Տարբեր ռազմաճակատներում առաջին համաշխարհային պատերազմում ներքաշված օսմանյան կառավարությունն ընդհուպ մինչև 1915 թվականի ապրիլի 11-ը (24-ը) (այն օրը, երբ սկսվեց հայ բնակչության մասսայական կոտորածն ու ֆիզիկական ոչնչացումը Թուրքիայում:— Հեղ.) ջանում էր սահմանափակ և տեղական միջոցառումների օգնությամբ վերջ տալ ապստամբությանը» (էջ 5):

Իշխանությունների նախազգուշացումները չօգնեցին: Այդ ժամանակ, իբր, «կառավարությունը, հայտնվելով գործող բանակի թիկուն-

քի անվտանգությունն ապահովելու և այնտեղ օրենքն ու կարգը վերականգնելու անհրաժեշտության դեմ հանդիման, 1915 թվականի մայիսի 14-ին հրապարակում է այսպես կոչված «Վերաբնակեցման ակտը», որով կարգադրվում էր հայ բնակչությանը ժամանակավորապես փոխադրել ռազմական գործողությունների թատերաբեմից հեռու գտնվող վայրեր» (էջ 5—6):

Այդ «Ակտը», որը վավերացրել էր անլուր ոճրագործությունը մի ամբողջ ժողովրդի նկատմամբ, ըստ ժողովածուի հեղինակների, պարզվում է, որ «կենսագործվել է մարդասիրության բոլոր պահանջներին համապատասխան» (էջ 6): Այնուհետև հեղինակները շինծու զարմանքով հարցնում են, թե ինչպե՞ս կարող էին «այսօր, ավելի քան կես դար անց, երևան գալ մարդկանց ռազմամոլ խմբեր, որոնք հավակնում են խոսել ամբողջ հայության անունից և պնդում են, որ Արևելյան Անատոլիայի հայերը տեղահանվել են իրենց հայրենիքից ու ենթարկվել ցեղասպանության...» (էջ 6):

Որպես այդ ամենի վկաներ՝ ժողովածուն կազմողները վկայակոչում են իրենց իսկ հայերին՝ Թուրքիայի բնակիչներին: Ժողովածուում նրանք ներկայացված են բավական պատկառազդու թվով: Մի կողմ թողնենք, թե որքանով են հավաստի նրանց հայկական ազգանունները: Գրեթե բոլորն էլ միահամուռ պնդում են. «Ցեղասպանություն չի եղել»: Այսպես՝ բիզնեսմեն Քեշիկյանը պնդում է, որ ոչ մի կոտորած չի եղել: Հայերը պատժվել են երկրի օրենքները խախտելու համար, այնպես, ինչպես նման խախտումներ կատարող յուրաքանչյուր քաղաքացի: Հայերի կողմից ապրիլի 24-ը ազգային սգի օր հայտարարելը բժիշկ Արմանը համարում է «սադրիչների» ձեռքի գործ:

Ծանոթացումն այս և նման կեղծ հայտարարություններին մեզ թելադրում է վերստին անդրադառնալու այն ողբերգական դեպքերին, որոնք այսօր էլ ցավ են հարուցում մեր սրտում:

Չփորփրենք Մերձավոր Արևելքի հին շրջանի բարդ իրադարձությունները: Հիշեցնենք միայն հետևյալը: Առաջին համաշխարհային պատերազմի ընթացքում պարտություն պարտության ետևից կրելով՝ թուրք կառավարիչները ցանկանում էին դրա հիմնական մեղքը բարդել քրիստոնյա բնակչության, և ամենից առաջ հայերի վրա, նրանց բոլորին հայտարարելով «ռուսական գործակալներ», «կայսրության թշնամիներ»: Նրանք մշակել էին հայ բնակչության մասսայական տեղահանության և ֆիզիկական ոչնչացման մանրակրկիտ պլան:

1914 թվականի հունիսին երիտթուրքական կառավարող վերնախավը չեղյալ հայտարարեց դրանից մի քանի ամիս առաջ՝ հունվարին, Ռուսաստանի հետ համատեղ կնքված համաձայնությունը հայկական վիլայեթների բարեփոխումների մասին: Իսկ նույն թվականի հոկտեմբերին այդ վերնախավն իր գաղտնի խորհրդակցություններում սկսել էր քննարկել այն հարցը, որ հայերի ֆիզիկական ոչնչացմամբ ընդհանրապես «վերջ դնեն հայկական հարցին»: Այդ կլիկի անդամներից մեկը՝ Նազըմը, ասում էր. «Եթե 1909-ի Ադանայի և այլ վայրերու մեջ մեր կատարել տվածին նման տեղական ջարդերով պիտի գոհանանք, օգուտի տեղ վնաս կհասնի... Ես քանիցս խոսած եմ և հիմա կկրկնեմ... պետք է, որ հայ ազգը արմատախիլ ըլլա, մեր հողին վրա անհատ մը անգամ չմնա, հայ անունը մոռցվի»: (Mevlan Zade Rifat „Türkiye inkilâbinin ic y üz ü", Halep, 1929. Մեջբերումն արված է ըստ Ջ. Կիրակոսյանի «Западная Армения в годы первой мировой войны» գրքի (Երևան, 1971, էջ 252): Նրան պաշտպանեցին երիտթուրքերի մյուս պարագլուխները: Եվ շուտով նրանք խոսքից գործի անցան: Ընդունվեցին որոշումներ կառավարական մակարդակով, կազմվեցին համապատասխան կարգադրություններ ու հրահանգներ:

Ներքին գործոց մինիստր Թալեաթի ծածկագիր հրամանում ասված էր. «Կառավարությունը Ջեմիեթի (երիտթուրքական կուսակցության կոմիտեի:— Հեղ.) հրամանով որոշել է ամբողջովին ոչնչացնել Թուրքիայում բնակվող հայությանը: Այս հրամանի ու որոշման հակառակորդները պետության պաշտոնական կազմում չեն կարող մնալ: Կին, երեխա, ծերունի նկատի չառնելով, խղճի խայթին ականջ չդնելով, ոչնչացման միջոցները որքան էլ զարհուրելի լինեն, նրանց գոյությանը վերջ պետք է տալ» («Լրաբեր» թերթ, հայերեն, Նյու-Յորք, 1964 թվականի ապրիլի 25: Մեջբերումն ըստ «Западная Армения...» (էջ 259): Ռազմական մինիստր Էնվերը, իր հերթին, հաղորդում էր զորամասերի հրամանատարներին. «Կայսերական կառավարությունը հրաման է արձակել ամբողջ հայ ազգը բնաջնջելու մասին: Նրանց նկատմամբ պետք է իրականացվեն հետևյալ գործողությունները.

1. Երկրի՝ օսմանյան հպատակներ հանդիսացող բոլոր հայերին, հինգ տարեկանից բարձր, դուրս բերել քաղաքներից և ոչնչացնել:

2. Կայսերական բանակում ծառայող բոլոր հայերին, առանց սովորական կարգը խախտելու, անջատել իրենց դիվիզիաներից, տանել ամայի վայրեր, կողմնակի աչքից հեռու և գնդակահարել:

3. Զինվորական ծառայության մեջ գտնվող հայ սպաներին կալանել իրենց գնդերում՝ մինչև հետագա կարգադրություններ ստանալը:

Այդ կարգադրություններն ստանալուց քառասունութ ժամ հետո գնդերի հրամանատարները հրաման կարձակեն դրանք կենսագործելու համար» (The Memories of Naim Bey. Turkish Official Documents Relating of the Deportations and Massacres of Armenians, 1920, Doc. № 1. Մեջբերումն ըստ «Западная Армения...», էջ 258—259):

1915 թվականի ապրիլի 24-ի լուսաբացին երիտթուրքերն սկսեցին մոլեռանդ դաժանությամբ իրականացնել իրենց ոճրագործ ծրագիրը, որը վերածվեց ցեղասպանության: Ոչնչացվեց ավելի քան մեկևկես միլիոն հայազգի մարդ, մյուսները բռնի տեղահանվեցին, հայերի մի փոքրիկ մասին միայն հաջողվեց փրկվել փախուստով: Դրա հետևանքով Թուրքիայում ապրող ավելի քան երկու միլիոն հայերից այնտեղ մնաց ընդամենը մի քանի տասնյակ հազար միայն:

Այդ ոճրագործություններն արտացոլվեցին Թուրքիայի նախկին կառավարողների գործով Ստամբուլի զինվորական տրիբունալի մեղադրական եզրակացության մեջ (1919 թվականի փետրվար—հուլիս): Այնտեղ ուղղակի ասված էր, որ «հայերին արտաքսելու պահից և տարբեր ժամանակաշրջաններում կատարված հանցագործությունները մեկուսացված կամ տեղական գործողություններ չեն: Դրանք նախապես ծրագրված ու իրականացված էին կենտրոնական մարմնի կարգադրությամբ....» (տե՛ս «Геноцид армян в Османской империи. Сборник документов и материалов». Академия наук Армянской ССР. Ереван, 1966, стр. 473): Մատնանշվում էին նաև ցեղասպանության այդ հանցագործությունների գլխավոր կազմակերպիչների անունները— երիտթուրքական տրիումվիրատը, հանձինս Թալեաթի, Էնվերի ու Ջեմալի:

Ահա քաղվածքներ այդ տրիբունալում որպես վկա հանդես եկած, Թուրքիայի հանրապետության ապագա հիմնադիր Մուստաֆա Քեմալի (Աթաթյուրքի) ցուցմունքներից. «Մեր հայրենակիցները գործել են չտեսնված հանցանքներ, դիմել են բռնակալության բոլոր հնարավոր եղանակներին, կազմակերպել են արտաքսում ու կոտորած, վրաները նավթ լցնելով, վառել են ծծկեր երեխաներին, ձեռքերն ու ոտքերը կապած ծնողների աչքի առաջ բռնաբարել կանանց ու դեռատի աղջիկների, աղջիկներին խլել հայրերից ու մայրերից, յուրացրել շարժական ու անշարժ գույքը, Միջագետք են քշել աղետալի վիճակում գտնըվող մարդկանց, ճանապարհին նրանց ենթարկել տմարդի ծաղր ու ծանակի... Հազարավոր անմեղ մարդկանց նրանք նստեցնում էին նավակներն ու խեղդում ծովում... Նրանք հայերին դնում էին այնպիսի անտանելի պայմաններում, որ իր պատմության մեջ նախկինում չի տեսել և ոչ մի ժողովուրդ» (Paul de Véou, „La chute d'Alexandrette", Paris, 1938, p. 121—122).

Անհատնում են վկայությունները երիտթուրքական բարբարոսների հրեշավոր չարագործությունների վերաբերյալ: Նրանց հանցագործությունների կրքոտ դատապարտմամբ հանդես են եկել Մաքսիմ Գորկին և Վալերի Բրյուսովը, Անատոլ Ֆրանսը և Ռոմեն Ռոլանը, Կարլ Լիբկնեխտը և Ֆրիտյոֆ Նանսենը և աշխարհի առաջավոր հասարակայնության ուրիշ շատ ներկայացուցիչներ, այդ թվում և բուն Թուրքիայում: Դահիճները հավիտենապես գամված են պատմության անարգանքի սյունին: Այդ մասին մի անգամ ևս հիշեցրեց խաղաղության համաշխարհային կոնգրեսը Հելսինկիում՝ 1965 թվականին, որն ընդունեց մի բանաձև, ուր զայրույթով է խոսվում Օսմանյան Թուրքիայում հայ բնակչության բնաջնջման մասին:

Սրան հարկ է ավելացնել, որ այն ժամանակվա թուրք կառավարողները, որոնք հետագայում վտարվեցին Աթաթյուրքի կողմից, փորձում էին իրենց ջարդարարական քաղաքականությունը կիրառել նաև Ռուսաստանի կազմի մեջ մտնող Արևելյան Հայաստանում: Ոչ լրիվ տվյալներով, 1918—1920 թվականներին թուրք զավթիչների՝ Անդրկովկաս կատարած ինտերվենցիայի ժամանակաշրջանում, այնտեղ ոչնչացվել է 200 հազարից ավելի հայ: Արևելյան ռազմաճակատի հրամանատար, գեներալ Կարաբեքիրը սպառնում էր Հայաստանը առհասարակ ջնջել աշխարհի քարտեզից (C. Kutay, „Karabekir Ermenistani nasil yok etti". Istanbul, 1956, s. 36. Մեջբերումն ըստ «Страны и народы Ближнего и Среднего Востока» գրքի, հ. X, Երևան, 1979, էջ 72):

Հայ ժողովրդի ճակատագրի պատմական շրջադարձում վճռական դեր խաղաց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը Ռուսաստանում: Սովետական կառավարությունն առաջին իսկ օրերից վճռականորեն հանդես եկավ թուրք ջարդարարների՝ հայ բնակչության նկատմամբ գործած գազանությունների դեմ՝ ի պաշտպանություն նրա ազգային իրավունքների ու ձգտումների: Անդրկովկասում սովետական իշխանության

հաղթանակի հետ հայ ժողովուրդը կրկին ձեռք բերեց պետականություն, իր բազմաչարչար երկիրը դարձրեց ծաղկող սոցիալիստական հանրապետություն, որը ՍՍՀ Միության եղբայրական համագործակցության մեջ վստահորեն ընթանում է հասարակական պրոգրեսի ուղիով: Հիրավի, Սովետական Հայաստանը հայրենիք, գլխավոր հենարան է դարձել օտարության մեջ գտնվող միլիոնավոր հայերի համար:

Կա հայկական մի իմաստուն առած. «Այն, ինչ կեղծ է, նեխած է»: Այդ պետք է հիշեցնել այժմ, 80-ական թվականների սկզբին լույս տեսած ժողովածուի հեղինակներին, որոնք, մեղմ ասած, համերաշխ չեն պատմական փաստերի հետ:

Ցեղասպանության, որպես մարդկության դեմ ուղղված ծանրագույն հանցագործության, պատժելիությունը նախատեսված է այժմ միջազգային զինվորական տրիբունալների կանոնադրություններով, ցեղասպանության հանցագործությունը կանխելու և դրա համար պատժելու մասին ՄԱԿ-ի ընդունած հատուկ Կոնվենցիայով (1948 թվական):

Աշխարհի ժողովուրդները միշտ պետք է հիշեն ցեղասպանության վտանգի մասին: Հիշողությունը նրա զոհերի մասին միաժամանակ զգոնության կոչ է, պայքարի կոչ ընդհանուր խաղաղությունը պաշտպանելու համար, բոլոր ժողովուրդների սուվերեն իրավունքները ու ազատությունը պաշտպանելու կոչ:

**Գ. Ա. ԱՐՈՒԹՅՈՒՆՈՎ**
**Պատմական գիտությունների դոկտոր**

**Գ. Լ. ԵՊԻՍԿՈՊՈՍՈՎ**
**Փիլիսոփայական գիտությունների դոկտոր**
**«Новое время» շաբաթաթերթ, № 49, 1981**

**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ), ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ.**

Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375033, Ереван-33, ул. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ **375033, Երևան—33, Բարեկամության 59 գ:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 11.12.81—25.12.81: Ստորագրված է տպագրության՝ 7.1.82: ՎՖ 05504: Ֆորմատ՝ $70 \times 108^1/_{16}$: Տպագրության՝ բարձր: 3,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15.532: Պատվեր 2621*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.

# Ինչ կարդալ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 37: «Հայաստան» հրատ., 1981:*

*Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ*— Պատասխաններ արևմտագերմանական «Շպիգել» հանդեսի խմբագրության հարցերին: *«Հայաստան» հրատ., 1981:*

*Վ. ՍՈՒՏԻՐԻՆ*— Ալեքսանդր Ուլյանով *(1866—1887): «Ուլյանովների ընտանիքը» մատենաշար: «Հայաստան» հրատ., 1981:*

*Վ. Ի. Լենինի ավագ եղբոր՝ Ալեքսանդր Ուլյանովի կարճատև կյանքի ուրվագիծն է այս գիրքը, ուր ներկայացված է Ալեքսանդր III ցարի դեմ կատարված մահափորձի պատմությունը:*

*Մ. ԶՈՒԲԿՈ*— Շվեդական ուղղաձիգ: *«Հայաստան» հրատ., 1981:*

*Վ. Ի. Լենինը Շվեդիայում եղել է վեց անգամ: Գրքի հեղինակն ընտրել է նրա վերջին ուղևորությունը՝ 1917 թ. ապրիլին, երբ նա ռուս ուրիշ հեղափոխականների հետ Շվեյցարիայից Գերմանիայի և Շվեդիայի վրայով վերադարձել է հեղափոխական Ռուսաստան:*

*Ի. ՎԵՐԽՈՎՑԵՎ, Ե. ՍՈԿՈԼՈՎԱ*— Իր ամբողջ կյանքով: *«Հայաստան» հրատ., 1981:*

*Հեղափոխականների լենինյան կոհորտայի ներկայացուցիչ, ռուսական երեք հեղափոխությունների և սոցիալիստական շինարարության վետերան, տաղանդավոր պրոպագանդիստ, հրապարակախոս Ն. Ն. Կոլեսնիկովային է նվիրված այս գիրքը: Սովետական բազմազգ կուլտուրայի ականավոր գործիչ է նա, հիանալի մարքսիստ մանկավարժ, կոմունիստական երիտասարդության դաստիարակ:*

Ю. ВОЛКОВ, В. РОГОВИН — **Вопросы социальной политики КПСС.** М., Политиздат, 1981.

*Գիրքը նվիրված է կուսակցության և սովետական պետության սոցիալական քաղաքականության հիմնական ուղղությունների, ՍՄԿԿ XXVI համագումարում մշակված սոցիալական ծրագրի բնութագրմանը: Բացահայտված են սովետական հասարակության սոցիալական համունները, լուսաբանված սոցիալական զարգացման հիմնական խնդիրները զարգացած սոցիալիզմի պայմաններում:*

*Ս ԱՄԻՐՅԱՆ*— Հասարակության սոցիալական կառուցվածքի վերափոխումն ու զարգացումը Հայկական ՍՍՀ-ում: *«Հայաստան» հրատ., 1981:*

*Գրքում ներկայացված է Հայկական ՍՍՀ-ում հասարակական կառուցվածքի վերափոխման ընթացքը, լուսաբանված են դրա հետագա զարգացման հարցերը:*

**КПСС и культурное преобразование села.** М., Политиздат, 1981.

*Գրքում լուսաբանված է կոմունիստական կուսակցության պատմական փորձը գյուղի կուլտուրական շինարարության ասպարեզում: Հատուկ ուշադրություն է նվիրված այն վիթխարի վերափոխումներին, որ կատարվել են կուսակցության ղեկավարությամբ զարգացած սոցիալիզմի պայմաններում:*

В. СОКОЛОВ — **Нравственный мир советского человека.** М., Политиздат, 1981.

*Գրքում քննարկված են անհատի գաղափարաբարոյական ձևավորման պրոբլեմները զարգացած սոցիալիզմի պայմաններում: Ինչպե՞ս են սովետական մարդու բարոյական աշխարհի վրա ներգործում ժամանակակից աշխատանքը, պահանջմունքների զարգացումը, կենսաձևի փոփոխումը: Գրքում սոցիոլոգիական հարուստ նյութի հիման վրա քննարկվում են բարոյական իդեալի ձևավորման, բացասական երևույթների դեմ պայքարի, ինքնադաստիարակման և այլ պրոբլեմներ:*

*Գ. ԲԱՇԿԻՐՈՎԱ*— Ընտրության ժամանակը: *Ե., «Սովետական գրող» հրատ., 1981:*

*Գիրքը մեծապես կօգնի ծնողներին՝ կազմակերպելու իրենց փոխհարաբերությունները դեռահասների հետ նրանց կյանքի ամենադժվար ժամանակաշրջանում: Ի՞նչ է նշանակում նպատակային դաստիարակություն: Ինչպե՞ս օգնել դեռահասին՝ կատարելու այն արարք-ընտրությունները, որոնք ձևավորում են նրա անհատականությունը: Ահա այն հարցերը, որոնց անդրադարձել է հեղինակը:*

*ԼԵՈ ՏԱՔՍԻԼ*— Սրբազան ավազակորջը: *«Հայաստան» հրատ., 1981:*

*Ֆրանսիացի նշանավոր հրապարակախոս Տաքսիլը նկարագրել է քրիստոնեության, ավելի ստույգ դրա արևմտյան ճյուղի՝ կաթոլիկ եկեղեցու պատմությունը: Համոզիչ փաստերով գրքում ներկայացված է պապերի, կարդինալների, եպիսկոպոսների կատաղի պայքարը առաջադիմության, ազատախոհության դեմ: Բացահայտված են եկեղեցու հայրերի դավերը, ստոր ու նենգ գործելակերպը ինչպես «հավատացյալ հոտին» կողոպտելու, նույնպես և կաթոլիկ շրջաններում գերիշխանություն ձեռք բերելու նպատակով:*

Գինը՝ 25 կ.
Индекс 77783
ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ՊՈԼԻՄԵՐԱՅԻՆ ՍՈՍՆՁԻ ԱՌԱՎԵԼՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Մետաղական թիթեղապատվածքը կըծառայի առավել երկար, եթե դրա պատրաստման համար օգտագործվեն պոլիմերային սոսինձներ, որոնք հուսալիորեն միացնում են մետաղաթիթեղները, չըխախտելով դրանց մոլեկուլային կառուցվածքը։ Նման հատկություններով սոսնձանյութեր են ստեղծել Կիրովականի պոլիմերային սոսինձների գիտահետազոտական և նախագծային ինստիտուտի մասնագետները։ Այստեղ պատրաստվել է սարք, որը հնարավորություն է ընձեռում ստանալու մոտ 100 տեսակ սոսնձամիացություններ ավտոմոբիլային, կահույքի և արդյունաբերության այլ ճյուղերի համար։*

## ԿՐԵԴԻՏԱՅԻՆ ՔԱՐՏԵՐ ՀԵՌԱԽՈՍԱՅԻՆ ԽՈՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Ավստրիայում նոր հեռախոս-ավտոմատների խոսակցության համար գործածվում է ոչ թե մանր դրամ, այլ կրեդիտային քարտ, որը կվաճառվի փոստային բաժանմունքներում և լրագրային կրպակներում։*

*Քարտը դրվում է ավտոմատի ճեղքի մեջ։ Քարտի վրա մագնիսային եղանակով գրված է դրա ընդհանուր գումարը։ Խոսակցության գումարը ավտոմատորեն հանվում է այդ գումարից, իսկ հեռախոսում հարմարեցված թվային ինդիկատորը ցույց է տալիս, թե որքան դրամ է ծախսվել խոսակցության վրա։ Գումարը պայմանավորված է կապի տևողությամբ և հեռավորությամբ։ Լսափողը կախելուց հետո ավտոմատը վերադարձնում է քարտը, ջնջելով դրա վրայի նախկին գրառումը և գրանցելով նորը՝ պակասեցված գումարով։ Նոր մեթոդի նպատակն է վերացնել մանր դրամի փնտրտուքը, որը հատկապես անհրաժեշտ է միջքաղաքային խոսակցությունների ժամանակ։ Բացի դրանից կդադարի հեռախոս-ավտոմատների կողոպուտը, միաժամանակ կարիք չի զգացվի ինկասատորի, որն այժմ պարբերաբար շրջայց է կատարում և հավաքում ավտոմատներում կուտակված գումարը։*

## ԵՎՍ ՄԻ ՓՈԽԱՐԻՆԻՉ

*Թղթի արդյունաբերության մեջ բուսական հումքի տնտեսումն այսօր հրատապ պրոբլեմ է բոլոր և հատկապես սակավանտառ երկրներում։ Ըստ Կիոդո Ցուսինի գործակալության ինֆորմացիայի, Ճապոնիայում մշակվում է ծովանյութերի թափոններից թղթի ստացման տեխնոլոգիա։ Ծովախեցգետինների և օմարների պատյանները պարունակում են ցելյուլոզայի նման նյութ՝ խիտին։ Կորզելուց հետո մինչև —20 աստիճանի սառեցված խիտինը մրջնաթթվի օգնությամբ հալեցնում են ջրում, իսկ հետո այդ զանգվածից ստանում բարակ մանվածք։ Հենց դրանից էլ մամլելով պատրաստում են թուղթ։*

## ԲՈՒԻ ՍԿԶԲՈՒՆՔՈՎ

*Հայտնի է, որ բուն թռչում է բացարձակապես անաղմուկ։ Այդ բացատրվում է նրանով, որ նրա թևերի ծայրերին կան փետրաելուստներ, որոնք հանդիպակաց օդային հոսքը բաժանում են մի շարք մանր շիթերի։ Սոֆիայի աշխատանքի պաշտպանության և էրգոնոմիկայի ինստիտուտի մի խումբ աշխատակիցներ Վեդին քաղաքի անվադողերի գործարանում ներդրել են նոր հարմարանք, որը խլացնում է բարձր աղմուկը փականներում, նվազեցնում շոգու և խտացված օդի ավելորդ ճնշումը։ Աղմուկակլանիչն ստեղծվել է բուի թևերի սկզբունքով։ Գազահոսքը նախ անցնում է փափուկ կտորից պատրաստված զտիչի միջով, ապա ելքի մոտ ձևավոր անցքերի միջոցով բաժանվում բազում շիթերի։ Ընդհանուր հաշվով, անհաճո աղմուկը նվազում է 35—40 տոկոսով։*